## Մեր հեղինակներին

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ:

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով:

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը: Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը: Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները:

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից:

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը:

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի: Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում:

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում:

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

2

ՓԵՏՐՎԱՐ, 1982
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 Г.
Выходит один раз в месяц
на армянском языке

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении

### Բ Ո Վ Ա Ն Դ Ա Կ Ո Ւ Թ Յ Ո Ւ Ն

1982 թվականի և տասնմեկերորդ հնգամյակի պլանները ժամկետից շուտ կատարելու, արտադրության արդյունավետությունը և աշխատանքի որակը բարձրացնելու ուղղությամբ Հայկական ՍՍՀ աշխատավորների սոցիալիստական պարտավորությունները . . . . . . . 3

ԱՄԲՈՂՋ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԳՈՐԾԸ

Ժամանակի հրամայական պահանջը . . . . . . . 14

ՏԵՍՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԵՐ

ԵԿԱՏԵՐԻՆԱ ՀԱԿՈԲՋԱՆՅԱՆ— Գեղարվեստական կուլտուրայի ինտերնացիոնալացման միտումները . . . . . . . 28
Վ. Դ. ԴԱՐԲԻՆՅԱՆ— Կենսաբանականը և սոցիալականը մարդու մեջ . . . 35

Ա. Ս. ՍԻՄՈՆՅԱՆ— Ժուռնալիստիկայի հրատապ պրոբլեմները . . . 43

ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՊՐԱԿՏԻԿԱ

Ս. Գ. ԳՐԻԳՈՐՅԱՆ— Քննադատության բարերար ազդեցությունը . . . 51
Ս. Մ. ՔԱՌՅԱՆ— Նախաձեռնում են ժողովրդական վերահսկիչները . . . 57

ՄԵՐ ԲԱՐԵԿԱՄՆԵՐԻ ՓՈՐՁԸ

Մ. Վ. ԲԱԼՈՅԱՆ, Մ. Ս. ԲԱԲԱՋԱՆՅԱՆ— Հանրային և տնամերձ տնտեսությունների ինտեգրացումը Հունգարիայում . . . . . . 64

ՄԱՐՔՍԻՍՏԱԿԱՆ ԳՐԱԿԱՆԱԳԻՏՈՒԹՅԱՆ ԱԿՈՒՆՔՆԵՐԻ ՄՈՏ

ՌՈՒԶԱՆ ՆԱՆՈՒՄՅԱՆ— Բոլշևիկ հրապարակախոս-գրականագետը . . 72

ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ԲՈՑԱՇՈՒՆՉ ՄԱՐՏԻԿՆԵՐԸ

Հ. Գ. ԱԶԱՏՅԱՆ— Լենինյան կուսակցության հավատարիմ զինվորը . . 80

ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

Բ. Գ. ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ— Հակագիտական «գործողության տեսության» մարքսիստական քննադատությունը . . . . . . . . 88

Անդրադառնալով տպագրվածին: «Հայրենի հողին հայրական խնամք» . . 91

ԵՐԵՎԱՆ ● ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## С О Д Е Р Ж А Н И Е

Социалистические обязательства трудящихся Армянской ССР по повышению эффективности производства и качества работы, досрочному выполнению планов 1982 года и одиннадцатой пятилетки . . . . . 3

**ДЕЛО ВСЕЙ ПАРТИИ**

Настоятельное веление времени . . . . . . . 14

**ВОПРОСЫ ТЕОРИИ**

Екатерина АКОПДЖАНЯН — Тенденции интернационализации художественной культуры . . . . . . 28

В. Д. ДАРБИНЯН — Биологическое и социальное в человеке 35

А. С. СИМОНЯН — Актуальные проблемы журналистики . 43

**ТЕОРИЯ И ПРАКТИКА ПАРТИЙНОГО СТРОИТЕЛЬСТВА**

С. Г. ГРИГОРЯН — Благотворное влияние критики . . 51

С. М. КАРЯН — По инициативе народных контролеров . 57

**ОПЫТ НАШИХ ДРУЗЕЙ**

М. В. БАЛОЯН, М. С. БАБАДЖАНЯН — Интеграция общественного и подсобного хозяйства в Венгрии . . 64

**У ИСТОКОВ МАРКСИСТСКОГО ЛИТЕРАТУРОВЕДЕНИЯ**

Рузан НАНУМЯН — Большевик—публицист, литератор . 72

**ПЛАМЕННЫЕ БОРЦЫ ЗА КОММУНИЗМ**

Г. Г. АЗАТЯН — Верный солдат ленинской партии . . 80

**КРИТИКА И БИБЛИОГРАФИЯ**

Б. Г. ГАРИБДЖАНЯН — Марксистская критика антинаучной «теории действия» . . . . . . 88

Возвращаясь к напечатанному. «Родной земле—отеческую заботу» . . . . . . . 91







**1982 թվականի և տասնմեկերորդ հնգամյակի պլանները ժամկետից շուտ կատարելու, արտադրության արդյունավետությունը և աշխատանքի որակը բարձրացնելու ուղղությամբ Հայկական ՍՍՀ աշխատավորների**

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

*Հայկական ՍՍՀ աշխատավորները սովետական ամբողջ ժողովրդի հետ միասին, հետևողականորեն կենսագործելով կուսակցության XXVI համագումարի որոշումները, լայնորեն ծավալելով սոցիալիստական մրցությունը, հաջողությամբ ավարտեցին տասնմեկերորդ հնգամյակի առաջին տարվա տնտեսական և սոցիալական զարգացման պետական պլանի և սոցիալիստական պարտավորությունների կատարումը։*

*Հանրապետության արդյունաբերության աշխատողները ժամկետից շուտ՝ դեկտեմբերի 25-ին կատարեցին արտադրանքի իրացման ծավալի, կարևորագույն արտադրատեսակների մեծամասնության արտադրության տարեկան ծրագիրը, ժողովրդական տնտեսությանը տալով 187 միլիոն ռուբլու գերպլանային արտադրանք։ Գերակատարվեցին էլեկտրաէներգիայի, սարքերի, ավտոմատացման միջոցների ու դրանց պահեստամասերի, մետաղահատ հաստոցների, լուսատեխնիկական սարքավորումների, տրիկոտաժե սպիտակեղենի և վերնազգեստի, գուլպեղենի, կարվածքեղենի, կաշվե կոշիկի, կահույքի և այլ արտադրատեսակների արտադրության պլանները։*

*Արդյունաբերական արտադրության ծավալը 1980 թվականի համեմատությամբ ավելացավ 7,5 տոկոսով, աշխատանքի արտադրողականությունը՝ 3,9 տոկոսով, որակի բարձրագույն կատեգորիայի արտադրանքի ծավալը աճեց 29 տոկոսով։*

*Թողարկվող արտադրանքի որակի բարձրացման գործում զգալի հաջողությունների հասավ Երևանի «Մասիս» կոշիկի արտադրական միավորման բազմահազարանոց կոլեկտիվը, որը բարձր գնահատականի արժանացավ ՍՄԿԿ Կենտկոմի 1981 թվականի նոյեմբերյան պլենումում ընկեր Լ. Ի. Բրեժնևի արտասանած ճառում։*

*Շարունակվում էին գործող ձեռնարկությունների և արտադրամասերի տեխնիկական վերազինման ու վերակառուցման աշխատանքները։ Ներդրվեց նոր տեխնիկայի 950 միջոցառում, յուրացվեց մեքենաների, սարքերի և նյութերի 65 կարևորագույն տեսակների թողարկումը։*

*Հիանալի հաջողությունների հասան հանրապետության գյուղատնտեսու-*

թյան աշխատավորները։ Հավաքվեց բարձր բերք՝ 335 հազար տոննա խաղող, 317 հազար տոննա բանջարեղեն։ Պլանից զգալիորեն ավելի գնվեց հացահատիկ, շաքարի ճակնդեղ, կարտոֆիլ։ Հաջողությամբ կատարվեցին հողագործական և անասնապահական մթերքների տեսակների մեծամասնության արտադրության և պետությանը վաճառքի պլաններն ու սոցիալիստական պարտավորությունները։ Կուտակվեց անասնակերի ռեկորդային պաշար։ Հողագործների ոգեշունչ ու հայրենասիրական աշխատանքը բարձր գնահատվեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի ողջույնում։

Տասնմեկերորդ հնգամյակի առաջին տարում գործարկվեցին Արփա—Սևան 48 կիլոմետրանոց թունելը, Մասիս—Նուռնուս երկաթուղագիծը, Երևանի մետրոպոլիտենի առաջին հերթի կոմպլեքսը, «Արևմտյան» օդանավակայանի համալիրը, Ստ. Շահումյանի անվան քաղլուսատունը և այլն։

Երկաթուղային, ավտոմոբիլային և ավիացիոն տրանսպորտը պլանից ավելի փոխադրեց ավելի քան 5 միլիոն տոննա ժողովրդատնտեսական բեռ և 11 միլիոն ուղևոր։ Ամրապնդվեց առևտրի և կենցաղային սպասարկման նյութատեխնիկական բազան։

Հանրապետության աշխատավորական կոլեկտիվները որոշակի աշխատանք են կատարել հումքային, վառելիքաէներգետիկ և մյուս նյութական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման ուղղությամբ։ Տնտեսվել են մոտավորապես 160 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, 10 հազար տոննա մետաղ և ուրիշ շատ նյութեր։

Սոցիալիստական մրցության ընթացքում հանրապետության ձեռնարկություններում և կազմակերպություններում ծնունդ առան ու տարածվեցին հայրենասիրական նոր նախաձեռնություններ և համագործակցության բեղմնավոր ձևեր, լայն պաշտպանություն ու կիրառում գտավ երկրի նորարարների և առաջավոր կոլեկտիվների փորձը։

Բարելավվեց աշխատավորների կոմունիստական դաստիարակության հարցերի կոմպլեքսային լուծման, կուսակցության սոցիալ-տնտեսական ծրագրի գաղափարախոսական ապահովման աշխատանքը։

Առաջնորդվելով «Տասնմեկերորդ հնգամյակի առաջադրանքների հաջող կատարման ու գերակատարման համար համամիութենական սոցիալիստական մրցություն ծավալելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշմամբ և ձգտելով արժանի ավանդ մուծել երկրի էկոնոմիկայի զարգացման մեջ, Սովետական Հայաստանի աշխատավորներն իրենց բոլոր ջանքերը նպատակամղում են ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում բարձր ցուցանիշների ձեռքբերմանը, տարեկան պլանների և ամբողջությամբ վերցրած տասնմեկերորդ հնգամյակի հաջող կատարմանը։

Արդյունաբերության աշխատողները պարտավորվում են կարևորագույն արտադրատեսակների արտադրության ու թողարկման ծավալի հնգամյա առաջադրանքը կատարել ժամկետից շուտ և լրացուցիչ արտադրել 300 միլիոն ռուբլու արդյունաբերական արտադրանք, 1,8 անգամ մեծացնել բարձրագույն կատեգորիայի արտադրանքի թողարկման ծավալը։ Ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունն ավելացնել 32 տոկոսով, ներդնել նոր տեխնիկայի ավելի քան 3.400 միջոցառում, յուրացնել արտադրանքի ավելի քան 800 նոր տեսակների արտադրությունը։

Գյուղատնտեսության աշխատողները պարտավորվում են հնգամյակի տարիներին համախառն արտադրանքի տարեկան միջին ծավալը մեծացնել 11 տոկոսով, այդ թվում կարտոֆիլի արտադրության ծավալը՝ 22,8 տոկոսով, պտուղներինը՝ 20,09, խաղողինը՝ 12,5, ձվինը՝ 25,1, անասուններինն ու թռչուններինը՝ 12,1 տոկոսով։ Այդ նպատակով շարունակել գյուղատնտեսական արտադրության հետագա ինտենսիվացման, այն ինդուստրիալ հիմքի վրա փոխադրելու, գյուղատնտեսական շրջանառության մեջ նոր հողեր ներգրավելու աշխատանքները։

Շինարարական կազմակերպությունների կոլեկտիվները պարտավորու-



թյուն են ստանձնել կապալային աշխատանքների հնգամյա ծրագիրը կատարել 1985 թվականի դեկտեմբերի 20-ին, գերակատարել բնակարանները, հանրակրթական դպրոցները, մանկական նախադպրոցական հիմնարկները և սոցիալական մյուս օբյեկտները շահագործման հանձնելու պետական պլանները։

Հանրապետության տրանսպորտի և կապի աշխատողները պարտավորվում են ավելի լրիվ բավարարել ժողովրդական տնտեսության հարաճուն պահանջմունքները, բարձրացնել բնակչության սպասարկման կուլտուրան, ապահովել բեռնաշրջանառության և ուղևորափոխադրումների հնգամյա պլանների կատարումը մինչև 1985 թվականի դեկտեմբերի 25-ը։ Ավարտել համամիութենական կոմերիտական հարվածային կառույցի՝ Իջևան—Հրազդան երկաթուղագծի շինարարությունը։

Հայկական ՍՍՀ աշխատավորները, ղեկավարվելով կուսակցության Կենտրոնական կոմիտեի 1981 թվականի նոյեմբերյան պլենումի որոշումներով, պլենումում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի ցուցումներով, պաշտպանելով ՍՍՀՄ կազմավորման 60-ամյակը արժանավայել դիմավորելու մասին Մոսկվա քաղաքի առաջավոր ձեռնարկությունների կոլեկտիվների նախաձեռնությունը և զարգացնելով Վրացական ՍՍՀ-ի, Ադրբեջանական ՍՍՀ-ի և Ռոստովի մարզի աշխատավորների հետ ավանդական մրցությունը, ի պատիվ պանծալի հոբելյանի 1982 թվականի համար ստանձնում են հետևյալ սոցիալիստական պարտավորությունները.

## ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

Հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները պարտավորվում են արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի հետագա բարձրացման հաշվին ժամկետից շուտ՝ դեկտեմբերի 29-ին կատարել արդյունաբերական արտադրության ընդհանուր ծավալի և կարևորագույն արտադրատեսակների թողարկման տարեկան պլանը։

Աշխատանքի արտադրողականության աճի առաջադրանքները գերակատարել 10 տոկոսով։ Արդյունաբերական արտադրանքի աճը հիմնականում ստանալ գործող ձեռնարկությունների ընդլայնման, վերակառուցման ու տեխնիկական վերազինման, ինչպես նաև նոր կարողությունների ռացիոնալ օգտագործման հաշվին։

Պլանից ավելի արտադրել 100 տոննա ռաֆինացված պղինձ, 1.000 տոննա ծծմբաթթու, 1.000 տոննա պղնձարջասպ, 100 տոննա կաուստիկ սոդա, 100 տոննա քացախաթթու, 1.250 տոննա հանքային պարարտանյութ, 9.000 ավտոդող, 110 միավոր մետաղահատ հաստոց, 200 հազար ռուբլու մետաղահատ գործիքներ և տեխնոլոգիական սարքավորումներ, հաշվողական տեխնիկայի 2,5 միլիոն ռուբլու միջոցներ, 2 հազար նատրիումային լամպ և այլ արտադրանք։

Իրականացնելով սովետական մարդկանց կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի անշեղ բարձրացման մասին ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումները, հասնել ժողովրդական սպառման ապրանքներով բնակչության պահանջմունքների ավելի լրիվ բավարարման՝ դրանց տեսականին ընդլայնելու, որակը բարձրացնելու և արտադրությունն ավելացնելու միջոցով։ Պլանից ավելի արտադրել 25 միլիոն ռուբլու այդպիսի ապրանքներ, այդ թվում՝ 40 հազար քառակուսի մետր բրդե գործվածք, 1 միլիոն զույգ գուլպեղեն, 10 միլիոն ռուբլու կարվածքեղեն, 1 միլիոն ռուբլու տրիկոտաժեղեն, 200 հազար զույգ կոշիկ, 200 հազար դեկալիտր գինի, 200 հազար հատ լուսավորման էլեկտրալամպ, 250 տոննա սինթետիկ լվացամիջոցներ, 100 տոննա փայլեցման միջոցներ, 0,4 միլիոն ռուբլու կահույք, 1,5 միլիոն ռուբլու բյուրեղապակե իրեր, ժողովրդական արհեստագործության 0,8 միլիոն ռուբլու գեղարվեստական իրեր ու հուշանվերներ և այլ արտադրանք։ Ավելացնել կուլտուր-կենցաղային և տնտեսական ապրանքների արտադրությունը միութենական ենթակայության ձեռնարկություններում։ Յուրացնել և ընդլայնել տեխնիկապես բարդ արտադրատեսակների, այդ թվում էլեկտրանվագարկիչների, ռադիոզարթուցիչների, ավտո-

մոբիլային ռադիոընդունիչների, էլեկտրաֆենների և այլ առարկաների արտադրությունը։

Իրականացնել թողարկվող արտադրանքի տեխնիկական մակարդակի բարձրացման, արտադրության տեխնոլոգիայի կատարելագործման միջոցառումների կոմպլեքս, որակի բարձրագույն կատեգորիայի արտադրանքի ծավալն ավելացնել 8—10 տոկոսով, հիմնականում ավարտել արտադրանքի որակի կառավարման հանրապետական սիստեմի ներդրումը։

Մինիստրությունների և գերատեսչությունների, ձեռնարկությունների և միավորումների կոլեկտիվները կիրականացնեն միջոցառումներ՝ ուղղված էկոնոմիկայի կառավարման հետևողական բարելավմանը, տնտեսական մեխանիզմի կատարելագործմանը, հանրային արտադրության արդյունավետության աճի և դրա ինտենսիվացումն արագացնելու վրա այդ մեխանիզմի ներգործության ուժեղացմանը։

Շարունակել աշխատանքի կազմակերպման ու վարձատրության բրիգադային ձևի մասսայական ներդրման աշխատանքները, այդ ձևի մեջ ընդգրկել բանվորների մինչև 52 տոկոսը։ Ավելի լայնորեն կիրառել ուղղակի տնտեսական կապերը, ըստ ամենայնի ամրապնդել կնքված պայմանագրերի հիման վրա մատակարարումների կարգապահությունը։

Շարունակել արտադրության ռեզերվների որոնման, խնայողության ռեժիմի ուժեղացման աշխատանքը։ Թողարկվող արտադրանքի կոնստրուկցիան կատարելագործելու, առաջադիմական տեխնոլոգիան արմատավորելու, արտադրության մեջ երկրորդային ռեսուրսներն ակտիվորեն ներգրավելու միջոցով խնայել 15 հազար տոննա սև մետաղի գլանվածք, 240 տոննա բամբակե թել, 5,5 միլիոն քառակուսի դեցիմետր կաշի, 100 հազար քառակուսի մետր գործվածք, 10 հազար դեկալիտր գինենյութ և այլն։

Առաջադիմական նորմաների, նոր տեխնիկայի միջոցառումների, սարքավորումների աշխատանքի արդյունավետ ռեժիմների արմատավորման միջոցով ապահովել 160 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիայի, 27 հազար տոննա բենզինի և դիզելային վառելիքի խնայողություն, նվազեցնել վառելիքաէներգետիկ մյուս ռեսուրսների ծախսումը։

Թողարկվող արտադրանքի ինքնարժեքի իջեցման հաշվին ստանալ 2 միլիոն ռուբլի գումարի գերպլանային շահույթ։

Շարունակել արտադրության տեխնիկական մակարդակի հետագա կատարելագործման աշխատանքները, յուրաքանչյուր ճյուղում, բոլոր ձեռնարկություններում ավելի լայնորեն զարգացնել մասնագետների ու բանվորների մըրցությունը գիտատեխնիկական առաջընթացի արագացման համար։ Արմատավորել նոր տեխնիկայի 730 կարևորագույն միջոցառում, այդ թվում՝ 170 հոսքային մեքենայացված և ավտոմատացված գիծ, արտադրությունների 27 կոմպլեքսային-մեքենայացված ավտոմատացված աշխատամաս ու արտադրամաս, 146 առաջադիմական տեխնոլոգիական պրոցես։ Ավելի լայնորեն արմատավորել կառավարման ավտոմատացված սիստեմները ժողովրդական տնտեսության մեջ։ Մշակել և յուրացնել մեքենաների, սարքերի ու նյութերի 61 նոր կարևորագույն տեսակների, այդ թվում թվային ծրագրման կառավարմամբ նոր խառատապտուտակային հաստոցի, բարձր ճշգրտության ունիվերսալ ֆրեզերային հաստոցների չորս տիպերի, էլեկտրական երկրորդային ժամացույցների, ձեռքի կվարցե ժամացույցների էլեկտրոնային բլոկների և այլ արտադրատեսակների թողարկումը։

Մշտապես բարելավել աշխատանքը ռացիոնալիզատորների և գյուտարարների հետ, նրանց ջանքերն ուղղել տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման, արտադրության արդյունավետության և թողարկվող արտադրանքի որակի բարձրացման նպատակին։ Ռացիոնալիզատորական առաջարկությունների և գյուտերի ներդրումից ստանալ 60 միլիոն ռուբլի գումարի պայմանական տնտեսական արդյունք։

Հետևողական աշխատանք կատարել հիմնական արտադրական ֆոնդերի էական բարելավման և արդյունավետ օգտագործման, պարապուրդների կըր-



ճատման նպատակով, հասնել հիմնական տեխնոլոգիական սարքավորումների աշխատանքի հերթափոխայնության գործակցի 5 տոկոս բարձրացման։

Կատարելով գյուղատնտեսական արտադրության հետագա վերելքի մասին կուսակցության որոշումները, հանրապետության արդյունաբերական կոլեկտիվները կապահովեն գյուղատնտեսության համար մեքենաների, մեխանիզմների, պահեստամասերի, հանքային պարարտանյութերի և արդյունաբերական մյուս արտադրանքի ժամկետից շուտ մատակարարումը, կընդլայնեն և կուժեղացնեն շեֆական կապերը կոլտնտեսությունների և սովխոզների հետ, կօգնեն գյուղատնտեսական օբյեկտների տեխնիկական զինման ու կառուցման գործում, ժամկետից շուտ կավարտեն կոշտ և հյութալի կերի համար պահեստների կառուցման շեֆական աշխատանքները։

Ձեռնարկությունների կոլեկտիվները կոմպլեքսային միջոցառումներ կիրականացնեն բանվորների ու ծառայողների աշխատանքի, կենցաղի ու հանգըստի, արդյունաբերական սանիտարիայի և անվտանգության տեխնիկայի պայմանները բարելավելու համար։ Կամրապնդեն աշխատանքային և արտադրական կարգապահությունը, կապահովեն աշխատաժամանակի կորուստների կրճատումը և կադրերի հոսունության նվազեցումը։

Նյութատեխնիկական մատակարարման կազմակերպությունները պարտավորվում են բարելավել պլանային առաջադրանքներն ու սոցիալիստական պարտավորությունները կատարելու համար ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի ձեռնարկություններին ու կազմակերպություններին ժամանակին և որակյալ կերպով նյութական ռեսուրսներ մատակարարելու աշխատանքը։

## ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

Հանրապետության գյուղատնտեսության աշխատողները, ոգեշնչված ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի ողջույնով, լայն աշխատանք ծավալելով կուսակցության XXVI համագումարի պատմական որոշումների կենսագործման ուղղությամբ, պարտավորվում են ուժեղացնել գյուղատնտեսական արտադրության հետագա ինտենսիվացման աշխատանքները, հասնել հողագործության և անասնապահության արդյունավետության ըստ ամենայնի բարձրացման։

Գյուղատնտեսության համախառն արտադրանքի ծավալը 1981 թվականի համեմատությամբ ավելացնել 3,7 տոկոսով, պետությանը վաճառել 57 հազար տոննա հացահատիկ, 305 հազար տոննա բանջարեղեն, 227 հազար տոննա խաղող, 106 հազար տոննա պտուղ, 127 հազար տոննա շաքարի ճակնդեղ, 91 հազար տոննա կարտոֆիլ, 108 հազար տոննա միս, 295 հազար տոննա կաթ, 301 միլիոն ձու, 4,62 հազար տոննա բուրդ։

Զգալիորեն արագացնել խաղողագործության ու պտղաբուծության զարգացման տեմպերը, հետևողական աշխատանք կատարել այդ ճյուղերի հետագա ինտենսիվացման նախատեսված կոմպլեքսային ծրագիրն անվերապահորեն կատարելու, դրանք արդյունաբերական ռելսերի վրա փոխադրելու նպատակով։ Էապես ուժեղացնել նոր տնկարկների հիմնման և հների վերակառուցման, նոսրության վերացման, առաջավոր ագրոտեխնիկայի և մեքենայացման միջոցների ներդրման աշխատանքը։

Շարունակել հետևողական աշխատանքը կերարտադրության հետագա ինտենսիվացման, անասնապահության կերի բազայի համակողմանի ամրապնդման ասպարեզում, ավելացնել խոտի, սենաժի, սիլոսի, սեփական արտադրության մյուս կերերի կուտակման ծավալները։

Ուժեղացնել արտադրության մեջ կերի գրանուլացումը, բրիկետավորումը, ֆերմենտավորումը, քիմիական պահածոյացումը ներդնելու, մյուս առաջադիմական մեթոդներն արմատավորելու աշխատանքը, ապահովել կերի արտադրամասերի անխափան աշխատանքը։ Բարձրացնել թողարկվող համակցված կերի որակը։

Կոլեկտիվ և պետական տնտեսությունների, միջտնտեսային ձեռնարկու-

թյունների ու կազմակերպությունների աշխատավորները պարտավորվում են կազմակերպված անցկացնել անասունների ձմեռումը, ռացիոնալ և արդյունավետ կերակրման, անասնաբուժական-անասնաբուժական սպասարկումը, խնամքն ու կերակրումը բարելավելու միջոցով ապահովել կենդանիների գլխաքանակի ավելացումը, նրանց մթերատվության բարձրացումը։ Անընդհատ բարձրացնել ֆերմաների աշխատատար պրոցեսների մեքենայացման աստիճանը։ Յուրաքանչյուր կովից կթել առնվազն 1.945 կիլոգրամ կաթ, մեկ ոչխարի բրդատվությունը հասցնել 2,35 կիլոգրամի, հավերի ձվատվությունը՝ 157 ձվի։ Ապահովել խոշոր եղջերավոր անասունների վաճառքը պետությանը առնվազն 305 կիլոգրամ, խոզերինը՝ 100, ոչխարներինը՝ 38 կիլոգրամ միջին քաշով։ Խոշոր եղջերավոր անասունների մսացու գլխաքանակի 95 տոկոսն իրացնել միայն միջին գիրությունից բարձր վիճակում, կաթի առնվազն 84 տոկոսը հանձնել առաջին տեսակի։

Շահագործման հանձնել 6 հազար հեկտար նոր ոռոգելի հողեր, ջրարբիացնել 10,2 հազար հեկտար արոտավայր, իրականացնել ոռոգիչ սիստեմների վերակառուցումը և բարձրացնել դրանց ջրապահովվածությունը 15,9 հազար հեկտար տարածության վրա, բարելավել գոյություն ունեցող ոռոգելի հողերի մելիորատիվ վիճակը 3,5 հազար հեկտար տարածության վրա։

## ԿԱՊԻՏԱԼ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

Հայկական ՍՍՀ շինարարական ու մոնտաժային կազմակերպությունների կոլեկտիվները պարտավորվում են կապալային աշխատանքների տասնմեկերորդ հնգամյակի երկրորդ տարվա պլանը կատարել մինչև 1982 թվականի դեկտեմբերի 27-ը։

Շինարարական արտադրության կազմակերպումը բարելավելու, աշխատանքային և նյութատեխնիկական ռեսուրսները համակենտրոնացնելու հաշվին ժամկետից շուտ գործարկել կարողություններ Քանաքեռի ալյումինի գործարանում, «Հրազդանի մեքենաշինարար» արտադրական միավորումում, Չարենցավանի ավտոբեռնիչների գործարանում, Լենինականի կահույքի ֆաբրիկայում, Կիրովականի տրիկոտաժի արտադրական միավորումում, Երևանի մահուդի և ծխախոտի ֆաբրիկաներում ու «Հիդրոհաղորդակ» գործարանում։

Ժամկետից շուտ կատարել բնակարանների, մանկական նախադպրոցական հիմնարկությունների, հիվանդանոցների և պոլիկլինիկաների գործարկման տարեկան պլանները։ Մինչև սեպտեմբերի 1-ը շահագործման հանձնել հանրակրթական դպրոցները։

Մինչև նոյեմբերի 29-ը շահագործման հանձնել ընդհանուր օգտագործման 50 կիլոմետր ավտոմոբիլային ճանապարհներ և մինչև դեկտեմբերի 20-ը կատարել ավտոմոբիլային ճանապարհների հիմնական ու միջին նորոգման տարեկան պլանը։ Իջևան—Հրազդան երկաթուղագծի շինարարության տարեկան պլանը կատարել դեկտեմբերի 20-ին և աշխատանքային երթևեկություն բացել Իջևան—Դիլիջան ուղեմասում։

Մշակել և իրագործել աշխատանքի արտադրողականության հետագա բարձրացման միջոցառումներ և շինարարության մեջ ապահովել մեկ աշխատողին ընկնող արտադրողականության աճի պլանի գերակատարում 5 տոկոսով։ Բնակարանային շինարարության մեջ բրիգադային կապալի մեթոդով աշխատող բանվորների թիվը հասցնել առնվազն 50 տոկոսի։

Մշակել և իրականացնել շինարարական ու մոնտաժային աշխատանքների որակի զգալի բարելավում ապահովող միջոցառումներ։ Հասնել այն բանին, որ բնակելի տները, դպրոցները, մանկական նախադպրոցական հիմնարկները, հիվանդանոցներն ու պոլիկլինիկաները գերազանցապես ընդունվեն «լավ» և «գերազանց» գնահատականներով։

Նախագծային և գիտահետազոտական ինստիտուտի կոլեկտիվները պարտավորվում են շինարարության նախագծերը և նախահաշիվները մշակելիս լայնորեն կիրառել գիտության, տեխնիկայի և արտադրության առաջավոր փորձի



նվաճումները, բարձրացնել նախագծվող արդյունաբերական, գյուղատնտեսական և մյուս օբյեկտների նախագծերի որակը և տեխնիկատնտեսական ցուցանիշները։ Նախագծերում հետևողականորեն արմատավորել առավել արդյունավետ շինարարական կոնստրուկցիաներ և աշխատանքի արտադրողականության ու շինարարության որակի բարձրացմանը նպաստող առավել արդյունավետ շինարարական կոնստրուկցիաներ և իրեր։

Շինանյութերի արդյունաբերության և շինարարական ինդուստրիայի ձեռնարկությունների կոլեկտիվները պարտավորվում են արտադրանքի թողարկման և իրացման տարեկան պլանը կատարել մինչև դեկտեմբերի 28-ը և պլանից ավելի տալ 1,8 միլիոն ռուբլու շինանյութեր, շինարարական կոնստրուկցիաներ ու իրեր, այդ թվում 10 հազար խորանարդ մետր երկաթբետոնե կոնստրուկցիաներ, 2 պայմանական կիլոմետր ասբոցեմենտե խողովակներ, 30 հազար խորանարդ մետր ոչ-հանքային շինանյութեր, 20 հազար քառակուսի մետր հատակի կերամիկական սալիկներ։

## ՏՐԱՆՍՊՈՐՏԻ ԵՎ ԿԱՊԻ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

Հանրապետության տրանսպորտի և կապի աշխատողների կոլեկտիվները պարտավորվում են ապահովել բեռների, ուղևորների փոխադրումների և կապի ծառայությունների բնագավառում ժողովրդական տնտեսության ու բնակչության հարաճուն պահանջմունքները։

Հանրապետության երկաթուղայինները փոխադրումների կազմակերպումը կատարելագործելու, շարժակազմի բեռնամբարձության և տարողության օգտագործումը բարելավելու, ներքին ռեզերվներ գտնելու և օգտագործելու հաշվին պարտավորվում են պլանից ավելի փոխադրել 150 հազար տոննա ժողովրդատնտեսական բեռ, արագացնել վագոնների շրջապտույտը, լոկոմոտիվների օրական միջին արտադրողականությունը բարձրացնել 0,3 տոկոսով, աշխատանքի արտադրողականության աճի առաջադրանքը գերակատարել 0,1 տոկոսով, փոխադրումների ինքնարժեքը պլանի դիմաց իջեցնել 0,1 տոկոսով, հասնել 100 հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիայի խնայողության։

Ապահովել ուղևորային փոխադրումների կազմակերպման հետագա կատարելագործումը և ընդլայնել ցույց տրվող սպասարկումների շրջանակները, բարձրացնել ուղևորների սպասարկման որակն ու կուլտուրան։

Ավտոմոբիլային տրանսպորտի ձեռնարկությունների կոլեկտիվները պարտավորվում են բեռնափոխադրումների պլանը կատարել մինչև դեկտեմբերի 23-ը և պլանից ավելի փոխադրել 2 միլիոն տոննա ժողովրդատնտեսական բեռ, բեռնատար ավտոմոբիլների արտադրողականությունը պլանի դիմաց բարձրացնել 2,3 տոկոսով։ Ավտոկցաքթափքերով բեռնափոխադրումների տեսակարար կշիռը ընդհանուր ծավալի մեջ հասցնել 5,5 տոկոսի։

Բարելավել քաղաքային ուղևորատար տրանսպորտի աշխատանքը և պլանից ավելի փոխադրել 1,8 միլիոն ուղևոր։

Ներդնել նոր տեխնիկայի և աշխատանքի գիտական կազմակերպման միջոցառումներ տարեկան առնվազն 800 հազար ռուբլու տնտեսական արդյունքով։

Երևանի մետրոպոլիտենի կոլեկտիվը պարտավորվում է լրացուցիչ կերպով փոխադրել 50 հազար ուղևոր, աշխատանքի արտադրողականության պլանը գերակատարել 0,2 տոկոսով, շահագործական ծախսերը նվազեցնել 1 տոկոսով, տնտեսել 350 հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։

Օդային տրանսպորտի աշխատողները պարտավորվում են պլանը կատարել հիմնական տեխնիկատնտեսական և ֆինանսական ցուցանիշների գծով ժամկետից շուտ՝ մինչև դեկտեմբերի 25-ը, պլանից ավելի փոխադրել 18 հազար ուղևոր, մշակել 15 հազար հեկտար գյուղատնտեսական տարածություն, տալ 0,5 միլիոն ռուբլու լրացուցիչ շահույթ։

Կապի ձեռնարկությունների և կազմակերպությունների կոլեկտիվները պարտավորվում են ըստ ամենայնի բարձրացնել կապի ծառայությունների բոլոր տեսակների գծով հանրապետության ժողովրդական տնտեսության և բնակչության սպասարկման կուլտուրան։ Կապի արտադրանքի ծավալի պլանը գե-

րակատարել 400 հազար ռուբլով, շահույթինը՝ 200 հազար ռուբլով, քաղաքային հեռախոսացանցի կարողությունների գործարկմանը՝ 1.000 համարով, գյուղական հեռախոսացանցինը՝ 0,5 հազար համարով, աշխատանքի արտադրողականության պլանը՝ 0,5 տոկոսով, հիմնական ֆոնդերի հատույցը բարձրացնել 0,5 տոկոսով, խնայել 150 հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։

Իրականացնել միջոցառումներ հեռուստատեսության ծրագրերով հանրապետության բնակչության ընդգրկման գոտու հետագա ընդլայնման նպատակով։

## ԳԻՏՈՒԹՅԱՆ, ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ, ԿՐԹՈՒԹՅԱՆ ԵՎ ԱՌՈՂՋԱՊԱՀՈՒԹՅԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

Հանրապետության գիտահետազոտական կազմակերպությունների կոլեկտիվները պարտավորվում են ստեղծագործական ուժերը նպատակամղել գիտահետազոտական մշակումների արդյունավետության և որակի հետագա բարելավմանը, հետազոտությունները կատարել առավել կարևոր նպատակային կոմպլեքսային գիտատեխնիկական ծրագրերի ասպարեզում, ապահովել արտադրության հետ գիտության ստեղծագործական կապերի հետագա զարգացումն ու ամրապնդումը, ժողովրդական տնտեսության մեջ գիտական ավարտուն հետազոտությունների շուտափույթ ներդրումը։

Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի գիտական հիմնարկների կոլեկտիվները պարտավորվում են աշխատանքներ կատարել կիսաթանկարժեք տարախառնուրդ նռնաքարերի հիմքի վրա քարերի աճեցման նպատակով, ստեղծել ցինկի պիրազոլային պոլիխելատի փորձնական քանակությունների մշակման էլեկտրաքիմիական ռեակտոր՝ նպատակ ունենալով էլեկտրատեխնիկական արդյունաբերության մեջ համեմատական փորձարկում կատարելու, որպես էպօքսիդային խեժերի լատենտային ամրացուցիչ։

Հանրապետության համապատասխան արտադրական կազմակերպությունների հետ համատեղ կատարել երկրաբանական-հետախուզական աշխատանքներ. ստեղծել կոմպլեքսային գեոֆիզիկական դիտակետ հանրապետության հյուսիս-արևելքում և ժամանակավոր սեյսմիկ կայան Անիի շրջանում։

Ղուկասյանի շրջանի տերիտորիայի անտառամելիորացման նպատակով ավարտել դաշտային հետազոտությունները։ Առաջարկություններ նախապատրաստել և անհրաժեշտ օգնություն ցույց տալ կերի պրեպարատների արտադրության մեջ հոլոֆիլյան ջրիմուռի արմատակալի ներդրման գործում, բարելավել դժվար բազմացող ծառատեսակների սերմնաբույսերի և տնկիների արտադրությունը Դիլիջանի արգելանտառի տնկարաններում։

Կուլտուրայի հիմնարկների աշխատողները, գրականության և արվեստի գործիչները պարտավորվում են իրենց ջանքերը կենտրոնացնել ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումների կենսագործման վրա, ակտիվացնել սովետական գրականության և արվեստի լավագույն ստեղծագործությունների պրոպագանդումը, բարձրացնել դրանց դերը աշխատավորների կոմունիստական աշխարհայացքի և էսթետիկական մակարդակի բարձրացման գործում։ Ստեղծել գաղափարագեղարվեստական նոր բարձրարժեք գրական երկեր, ներկայացումներ, կինոնկարներ, երաժշտական արվեստի և կերպարվեստի ստեղծագործություններ, որոնք արտացոլեն սովետական ժողովրդի հերոսական պայքարն ու աշխատանքային մեծագործությունները կոմունիստական հասարակության կառուցման ասպարեզում։

Հանրապետության ստեղծագործական աշխատողները այսուհետ ևս կամրապնդեն մտավորականության համագործակցությունը հանրապետության աշխատավորական կոլեկտիվների, սովխոզների ու կոլտնտեսությունների աշխատավորների, սովետական բանակի ռազմիկների և սովորող երիտասարդության հետ։

Հայկական ՍՍՀ Հրատպետկոմի սիստեմի ձեռնարկություններն ու հիմնարկները հատուկ ուշադրություն կհատկացնեն ՍՄԿԿ XXVI համագումարի, Հայաստանի կոմկուսի XXVII համագումարի որոշումների պրոպագանդմանը, ՍՍՀՄ կազմավորման 60-ամյակին նվիրված գրականության հրատարակմանը,



ինչպես նաև գրքային արտադրանքի ընդհանուր ծավալի մեջ գեղարվեստական և մանկական գրականության բաժնի մեծացմանը։

Հանրապետության հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի աշխատողները պարտավորվում են ժամկետից շուտ կատարել 1982 թվականի առաջադրանքները, լրացուցիչ կերպով թողարկել 1,2 միլիոն մամուլ գրքային արտադրանք, տարեկան պլանից ավելի բնակչությանը վաճառել 165 հազար ռուբլու գրականություն։ Կիրականացվեն թղթի խնայողության միջոցառումներ։

Բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունների կոլեկտիվները ջանքերը կնպատակամղեն հանրապետության ժողովրդական տնտեսության տնտեսական ու սոցիալական զարգացման պահանջմունքներին համապատասխան բարձր որակավորման կադրերի պատրաստման խնդիրների կատարմանը։

Շարունակել ՍՄԿԿ XXVI համագումարի և Հայաստանի կոմկուսի XXVII համագումարի որոշումների պահանջների ոգով մասնագետների պրոֆեսիոնալ պատրաստության և հանրապետական ժողովրդական տնտեսության մեջ նրանց ռացիոնալ օգտագործման բնագավառում հանրապետության բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրության և բուհերի կողմից մշակված միջոցառումների իրականացումը։

Միջոցառումներ իրականացնել բուհերի գիտական պոտենցիալի օգտագործման արդյունավետության հետագա բարձրացման նպատակով, մշակել առաջարկություններ ընդհանուր միութենական և հանրապետական նպատակային ծրագրերի մշակման գործում հանրապետության բուհերի գիտնականների մասնակցության, ակադեմիական և ճյուղային գիտական հիմնարկների, արտադրության հետ բուհերի կապերի ամրապնդման վերաբերյալ։ Արագացնել բուհական ավարտուն մշակումների արդյունքների ներդրումը արտադրության մեջ։

Լուսավորության սիստեմի աշխատողները պարտավորվում են իրականացնել միջոցառումներ հանրապետության հանրակրթական դպրոցներում ուսումնադաստիարակչական պրոցեսը կատարելագործելու նպատակով։ Բարելավել երեկոյան (հեռակա) դպրոցների աշխատանքի պայմանները, ընդլայնել երկարօրյա դպրոցների ցանցը։

Պրոֆտեխնիկական կրթության սիստեմի աշխատողները պարտավորվում են ուսումնարանների կոմպլեկտավորման պլանը կատարել ժամկետից շուտ։ Պատրաստել և ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղեր մշտական աշխատանքի ուղարկել 32.820 որակյալ բանվոր, որոնցից 22.700-ը՝ միջնակարգ կրթությամբ։ Շահագործման հանձնել պրոֆտեխնիկական ուսումնարանների հանրակացարաններ Թալինի, Աշտարակի և Ամասիայի շրջաններում։

Բարձրացնել սովորողների տեսական պատրաստության և աշխատանքային դաստիարակության մակարդակը։ Ամրապնդել ուսումնարանների նյութատեխնիկական բազան։ Բարելավել ֆիզիկական կուլտուրայի և սպորտի դրվածքը սովորողների շրջանում։

Առողջապահության մարմինների և հիմնարկների աշխատողները պարտավորվում են ջանքերը նպատակամղել բնակչությանը ցույց տրվող ամբուլատոր-պոլիկլինիկական և ստացիոնար օգնության հետագա կատարելագործմանը, բժշկական սպասարկման որակի և կուլտուրայի բարձրացմանը, գյուղական առողջապահության զարգացմանը, առողջապահության պրակտիկայում գիտության նվաճումների, սպասարկման և բուժման նոր մեթոդների արմատավորմանը։ Գործադրել 470 հիվանդանոցային մահճակալ։

## ԱՌԵՎՏՐԻ ԵՎ ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ԿԵՆՑԱՂԱՅԻՆ ՍՊԱՍԱՐԿՄԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

Պետական առևտրի աշխատողները պարտավորվում են մանրածախ ապրանքաշրջանառության պլանը կատարել ժամկետից շուտ՝ դեկտեմբերի 25-ին,

և պլանից ավելի բնակչությանը վաճառել 30 միլիոն ռուբլու արդյունաբերական ու պարենային ապրանքներ։

Մանրածախ ցանցում մեկ աշխատողին ընկնող ապրանքաշրջանառության աճը ապահովել 3 տոկոսով, հասարակական սննդում՝ 2 տոկոսով։

Կապիտալ ներդրումների պետական պլանը կատարել 102 տոկոսով, շահագործման հանձնել մանրածախ առևտրի ձեռնարկություններ 8 հազար քառակուսի մետր մակերեսով, հասարակական սննդի ձեռնարկություններ՝ 1.000 նստելատեղով։

Մանրածախ առևտրի և հասարակական սննդի ձեռնարկություններում, մեծածախ առևտրի բազաներում տեղադրել 4,5 հազար միավոր առևտրատեխնոլոգիական և սառնարանային սարքավորումներ, պարենային 10 և հացի 8 խանութներում ներդնել ապրանքամատակարարման առաջավոր մեթոդներ՝ կիրառելով տարա-սարքավորումներ։

Արդյունաբերական ձեռնարկությունների հասարակական սննդի օբյեկտներում ներդնել կոմպլեքսային ճաշերի կոմպլեկտավորման և բացթողման 8 գիծ, բացել կիսաֆաբրիկատների և խոհարարական արտադրանքի 5 խանութ։

Բնակչության պահանջարկը ավելի լրիվ բավարարելու նպատակով ամրապնդել ու կատարելագործել գործարար կապերը հանրապետության այն մինիստրությունների ու ձեռնարկությունների հետ, որոնք արտադրում են ժողովրդական սպառման ապրանքներ։ Տեղական աղբյուրների հաշվին ապրանքաշրջանառության մեջ լրացուցիչ ներգրավել 20 միլիոն ռուբլու ապրանքային ռեսուրսներ, կազմակերպել ժողովրդական սպառման ապրանքների 350 ցուցահանդես-վաճառք։

Կատարել 4,7 միլիոն ռուբլու պարենային, 7,6 միլիոն ռուբլու ոչ պարենային ապրանքների գնում։

Բարձրացնել սպասարկման կուլտուրան, ներդնել բնակչության համար հարմար առևտրի ձևեր։ Ինքնասպասարկման խանութների ապրանքաշրջանառության տեսակարար կշիռը ընդհանուր ապրանքաշրջանառության մեջ հասցնել 57,5 տոկոսի, լրացուցիչ միջոցառումներ իրականացնել ապահովելու մանրփաթեթավորված և փաթեթավորված ապրանքների թողարկման առաջադրանքների կատարումը ինչպես արդյունաբերության, այնպես էլ առևտրական ձեռնարկությունների կողմից։

Սպառողական կոոպերացիայի աշխատողները պարտավորվում են ապրանքաշրջանառության պլանը կատարել ժամկետից շուտ և պլանից ավելի գյուղական բնակչությանը վաճառել 3,3 միլիոն ռուբլու ապրանք։ Բնակչությունից գնել 8 միլիոն ռուբլով ավելի գյուղատնտեսական մթերքներ և հումք։

Կապիտալ շինարարության պլանը կատարել դեկտեմբերի 24-ին, շահագործման հանձնել 61 նոր օբյեկտ, այդ թվում՝ մանրածախ առևտրի 21 օբյեկտ 5,5 հազար քառակուսի մետր առևտրական մակերեսով, հասարակական սննդի 3 օբյեկտ, գյուղատնտեսական մթերքների ընդունման 20 կետ, հացի 7 փուռ, կարտոֆիլի 2 պահեստ՝ 1.000 տոննա տարողությամբ և այլ օբյեկտներ։

Յոթ շրջկոոպներին առընթեր կազմակերպել անասնապահական մթերքների արտադրության օժանդակ տնտեսություններ։

Բնակչության կենցաղային սպասարկման մինիստրության ձեռնարկությունների կոլեկտիվները պարտավորվում են կենցաղային սպասարկումների իրացման տարեկան պլանը կատարել դեկտեմբերի 28-ին, պլանից ավելի բնակչությանը մատուցել 0,7 միլիոն ռուբլու ծառայություններ։ Միստեմում կոոպերացման ծավալը հասցնել 8,4 միլիոն ռուբլու։ Արտադրության մեջ ներդնել կոշիկի, կահույքի և տրիկոտաժեղենի 380 նոր մոդելներ։

Կապիտալ շինարարության պլանը շինմոնտաժային աշխատանքների գծով կատարել դեկտեմբերի 12-ին, 3 շրջկենտրոններում կառուցել կենցաղի տներ՝ 100 աշխատատեղով, կառուցել 80 կենցաղի տներ և կոմպլեքսային ընդունման կետեր, այդ թվում 60-ը՝ գյուղական վայրերում։



***

Սովետական Հայաստանի աշխատավորները հավաստիացնում են ՍՄԿԿ լենինյան Կենտրոնական կոմիտեին, Կենտկոմի քաղբյուրոյին, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր Լ. Ի. Բրեժնևին, որ, կենսագործելով ՍՄԿԿ Կենտկոմի 1981 թ. նոյեմբերյան պլենումի որոշումները, արժանավայել կդիմավորեն Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 65-ամյա հոբելյանը, ՍՍՀՄ-ի 60-ամյա հոբելյանը, է՛լ ավելի ակտիվորեն կպայքարեն աշխատանքի արդյունավետության և որակի բարձրացման համար, հաջողությամբ կկատարեն 1982 թվականի ժողովրդատնտեսական պլանը և իրենց արժանի ավանդը կմուծեն ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումների և տասնմեկերորդ հնգամյակի հոյակապ խնդիրների իրականացման գործում։

**Սոցիալիստական պարտավորությունները ընդունվել են արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի, գյուղատնտեսության, քաղաքային տնտեսության, գիտության ու կուլտուրայի ձեռնարկությունների ու կազմակերպությունների կոլեկտիվներում, ժողովրդական տնտեսության ճյուղերի, քաղաքների ու շրջանների ակտիվի ժողովներում և հանրապետության աշխատավորական կոլեկտիվների ներկայացուցիչների հետ համատեղ անցկացված կուսակցական, սովետական, տնտեսական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունների հանրապետական ակտիվի ժողովում։**

# ԺԱՄԱՆԱԿԻ ՀՐԱՄԱՅԱԿԱՆ ՊԱՀԱՆՋԸ

ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ, սովետական ժողովուրդը խանդավառությամբ աշխատում են ՍՄԿԿ XXVI համագումարի պատմական որոշումները կենսագործելու համար։ Բարոյաքաղաքական մեծ վերելքի իրադրության մեջ ծավալվում է սոցիալիստական մրցությունը տասնմեկերորդ հնգամյակի առաջադրանքների հաջող կատարման նպատակով։ Հետևողական աշխատանք է կատարվում կենսագործելու համագումարի առաջադրած խաղաղության ծրագիրը 80-ական թվականների համար, ծրագիր, որը ջերմ պաշտպանություն է գտել միջազգային պրոգրեսիվ հասարակայնության կողմից։ Ժամանակը հաստատում է ՍՄԿԿ XXVI համագումարի գնահատականներն ու հետևությունները արդի համաշխարհային զարգացման օրինաչափությունների ու միտումների վերաբերյալ, կոմունիստական և բուրժուական գաղափարախոսությունների սրված պայքարի առանձնահատկությունների վերաբերյալ։ Ամբողջ աշխարհում լայն արձագանք առաջացրին եղբայրական կուսակցությունների ու երկրների ղեկավարների հետ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի Ղրիմում ունեցած հանդիպումների, վերջերս ԳՖՀ կատարած այցի արդյունքները, ՍՄԿԿ-ի և սովետական պետության արտաքին քաղաքական նոր նախաձեռնությունները։

Սովետական ժողովրդի առջև ծառացած մեծ ու բարդ խնդիրների լուծման գործում նշանակալի ավանդ են ներդնում կուսակցության գաղափարախոսական կադրերը, մասսայական ինֆորմացիայի միջոցները, կոմունիստների ու անկուսակցականների վիթխարի բանակը, որոնք պրոպագանդում, պարզաբանում են ՍՄԿԿ քաղաքականությունը, ակտիվ մասնակցում աշխատավորների մոբիլիզացմանը համագումարի որոշումների կատարման համար։

Քաղաքական-դաստիարակչական աշխատանքի բոլոր անվիճելի նվաճումներով հանդերձ, այդ աշխատանքը կարիք ունի մշտական կատարելագործման, որն ուղղված է նրա արդյունավետության նշանակալի բարձրացմանը։ Այս է ժամանակի հրամայական պահանջը։ Այս բնագավառի հիմնական խնդիրները սահմանվել են «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» կուսակցության Կենտրոնական կոմիտեի հայտնի որոշման մեջ, ապա և՝ XXVI համագումարի նյութերում։ Համագումարում ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ ընկեր Լ. Ի. Բրեժնևը շեշտեց. «Ըստ էության խոսքը վերաբերում է գաղափարախոսական աշխատանքի շատ տեղամասերի ու ոլորտների վերակառուցմանը։ Այո՛, ես չսխալվեցի, հենց վերակառուցմանը։ Հարկավոր է հասնել այն բանին, որ այդ աշխատանքի բովանդակությունը դառնա ավելի հրատապ, իսկ ձևերը համապատասխանեն սովետական մարդկանց արդի պահանջմունքներին ու ձգտումներին»։

Գործի էությունը ձևակերպված է ծայրահեղ հստակորեն, և հարկավոր է ստեղծագործաբար ու եռանդով կատարել կուսակցության պահանջը։ Մինչդեռ դրական տեղաշարժերն այս ուղղությամբ, չնայած դրանք, անկասկած, կան, կատարվում են դեռևս ոչ բավականաչափ արագ, հատկապես պրոպագանդայի ու ագիտացիայի բովանդակության մեջ, ինչպես նաև դրանց կազմակերպական



ապահովման գործում։ Առայժմ մնում է ցանկալ, որ պրոպագանդան ու ագիտացիան ավելի սևեռուն ուշադրություն նվիրեն քաղաքականության ու էկոնոմիկայի հրատապ պրոբլեմներին, բնակչության բոլոր խավերին հուզող կոնկրետ հարցերին։ Եվ սովետական իրականության մեջ ու միջազգային ասպարեզում ծագում են ոչ քիչ նոր իրողություններ, որոնք հարկավոր է ժամանակին ու համոզիչ կերպով պարզաբանել, գնահատել, ցույց տալով դրանց աղբյուրները, էությունը, զարգացման միտումները։ Մամուլի, հեռուստատեսության, ռադիոյի ելույթներում հաճախ պակասում են մեր կյանքի փաստերի խոր վերլուծությունը, լուրջ ընդհանրացումները։ Դժվարությամբ են վերացվում ֆորմալիզմի դրսևորումները, բառային ճարճատյունը գաղափարախոսական աշխատանքում։ Իսկ չէ՞ որ այդ աշխատանքի ներգործությունը մեծապես որոշվում է այն բանով, թե գործով, պրակտիկ կերպով ինչպե՞ս է ապահովվում գաղափարատեսական, քաղաքական-դաստիարակչական, կազմակերպչական և տնտեսական գործունեության օրգանական միաձուլությունը։

«Շատ կարևոր է,— ասում է ընկեր Լ. Ի. Բրեժնևը, զարգացնելով վերակառուցման մասին միտքը,— որ պրոպագանդան շրջանցի սուր թեմաները, չերկնչի շոշափել այսպես կոչված դժվարին հարցերը։ Մեր կուսակցության քաղաքականությունը պարզ է։ Եվ մենք պատրաստ ենք պատասխանելու ամեն մի հարցի, որ ծագում է սովետական մարդկանց շրջանում։ Հարկավոր է համարձակորեն անել այդ բանը, հիշելով, որ եթե մենք դրանց չենք պատասխանում, ապա մեր երկրի թշնամիները ջանում են դրանից օգտվել սոցիալիզմը զրպարտելու համար։ Մի բան ևս։ Գաղափարադաստիարակչական ամբողջ աշխատանքը պետք է տարվի աշխույժ ու հետաքրքրական, առանց շաբլոն ֆրազների և պատրաստի ֆորմուլաների ստանդարտ հավաքածուի։ Սովետական մարդը կիրթ, կուլտուրական մարդ է։ Եվ երբ նրա հետ սկսում են խոսել ոչ խելացի, ձևական-պաշտոնական լեզվով, կյանքի հետ, ռեալ փաստերի հետ կոնկրետ կապի փոխարեն բավարարվում են ընդհանուր ֆրազներով, ապա նա պարզապես անջատում է հեռուստացույցը կամ ռադիոն, մի կողմ է դնում թերթը»։

Ընկեր Լ. Ի. Բրեժնևի այս ցուցումները և «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման դրույթները ելակետային են կոմունիստական դաստիարակության ողջ գործը, մասնավորապես պրոպագանդան ու ագիտացիան նոր, ավելի բարձր աստիճանի հասցնելու կոնկրետ մեթոդների ու միջոցների մշակման ու պրակտիկայում արմատավորման համար։ Ընդ որում այստեղ հարկավոր է տոգորվել այն գիտակցությամբ, որ գաղափարախոսական գործունեության վերակառուցումը կարճատև կամպանիա չէ, այլ շատ տարիների համար նախատեսված բազմակողմանի ու քրտնաջան աշխատանք, որն օբյեկտիվորեն պայմանավորված է ինչպես սովետական հասարակարգի առաջընթացով, այնպես էլ ամբողջ համաշխարհային հեղափոխական պրոցեսի զարգացմամբ։ Ուստի այդ վերակառուցումը հարկավոր է իրականացնել հույժ հիմնավորապես, հեռանկարով։

Գաղափարախոսական աշխատանքի թերություններն առանձնապես անհանդուրժելի են այժմ, երբ կուսակցությունն ու ժողովուրդը լուծում են պատմական նշանակություն ունեցող այնպիսի խնդիրներ, ինչպիսիք են էկոնոմիկայի փոխադրումը զարգացման գերազանցապես ինտենսիվ ուղու վրա, կոմպլեքսային, խոշոր մասշտաբային ժողովրդատնտեսական ծրագրերի իրագործումը, որոնցով պայմանավորված է ժողովրդի բարեկեցության աճը, հայրենիքի տնտեսական ու պաշտպանական հզորության հետագա ամրապնդումը։ Հարկավոր է հիշել նաև այն, որ 80-ական թվականներին առկա են մի շարք օբյեկտիվ գործոններ, որոնք բարդացնում են մեր տնտեսական զարգացումը։

Կոմունիստական շինարարության խնդիրները, որ առաջադրել է ՍՄԿԿ XXVI համագումարը, մենք ստիպված ենք լուծել սրված միջազգային իրադրության պայմաններում։ ԱՄՆ-ի ներկայիս վարչակազմի հռչակած արտաքին քաղաքական կուրսը և նրա պրակտիկ գործերը վկայում են այն մասին,

որ Միացյալ Նահանգներն ընթանում են լարվածության թուլացման քաղաքականությունից հրաժարվելու ուղիով: Նրանց գործողությունները Սովետական Միության նկատմամբ կրում են բացահայտ թշնամական բնույթ: Փորձելով իր համար ապահովել ռազմական գերակշռություն, ԱՄՆ-ը ձգտում է Արևմտյան Եվրոպայում տեղավորել միջին հեռավորության հրթիռամիջուկային համակարգեր, ծավալում է նեյտրոնային զենքի արտադրությունը: «Սովետական ռազմական սպառնալիքին», «միջազգային տեռորիզմին» (պիտակ, որ փակցնում են ազգային-ազատագրական շարժումներին), դիմադրություն ցույց տալու կեղծ պատրվակներով ԱՄՆ-ի իմպերիալիստական շրջանները կատաղի պայքար են մղում ՍՍՀՄ-ի, սոցիալիզմի ու խաղաղության բոլոր ուժերի դեմ, այդ գործում բլոկ կազմելով պեկինյան ղեկավարության հետ: Իր քայքայիչ գործողությունները կենտրոնացնելով առաջին հերթին Լեհաստանի, Կուբայի, Վիետնամի, Կամպուչիայի, Լաոսի դեմ, իմպերիալիզմը փորձում է խարխլել սոցիալիստական ընկերակցությունը, որը նա դիտում է որպես գլխավոր խոչընդոտը՝ իր կորցրած միջազգային դիրքերը վերականգնելու ճանապարհին: Դրա հետևանքով համաշխարհային ասպարեզում սաստկացել է սպառնալիքը ընդհանուր խաղաղությանը:

Ագրեսիվ իմպերիալիստական կուրսն ուղեկցվում է գաղափարախոսական պայքարի սրմամբ՝ հակասովետական և հակակոմունիստական հիստերիայի բորբոքմամբ, մեր ներքին ու արտաքին քաղաքականության կանխամտածված խեղաթյուրմամբ: Իմպերիալիստական պրոպագանդան ջանքեր է գործադրում ռեալ սոցիալիզմը վարկաբեկելու, նրա նվաճումները սևացնելու համար, սոցիալիստական երկրների աշխատավորների դասակարգային գիտակցությունը ողողահարելու համար:

Ժամանակակից իրադրությունը, ինչպես տեսնում ենք, պահանջում է ձեռնարկել լրացուցիչ միջոցներ, որոնք հնարավորություն են ընձեռում ավելի արագ իրականացնել արմատական շրջադարձը դեպի ՍՄԿԿ XXVI համագումարի պատմական որոշումների կենսագործման ուղղությամբ գաղափարախոսական և կուսակցական-կազմակերպական աշխատանքի նոր հրատապ խնդիրների լուծումը:

Տնտեսական և կուլտուրական շինարարության բոլոր տեղամասերում անհրաժեշտ են սովետական մարդկանց քաղաքական բարձր գիտակցականություն և աշխատանքային ակտիվություն, արդյունավետորեն ու որակով, ուժերի լրիվ նվիրումով աշխատելու ունակություն: Այնպիսի պայմաններում, երբ իմպերիալիստական ագրեսիվ շրջանները սրում են միջազգային լարվածությունը, սիստեմատիկաբար գաղափարախոսական կամպանիաներ կազմակերպում Սովետական Միության, սոցիալիզմի եղբայրական երկրների դեմ, հարաճուն նշանակություն է ստանում մեր հասարակության սոցիալ-քաղաքական և գաղափարական միասնության հետագա ամրապնդումը, աշխատավորների դաստիարակությունը ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական բարեկամության, սովետական հայրենասիրության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով, սոցիալիստական նվաճումները պաշտպանելու պատրաստակամության ոգով: Կարևոր է, որ յուրաքանչյուր մարդ օժտվի հպարտությամբ իր հայրենիքի համար, լինի լավատես, համոզված սոցիալիզմի ճշմարտացիության ու անհաղթելիության նկատմամբ:

Գաղափարախոսական գործունեության լենինյան կարևորագույն սկզբունքներից մեկը խոսքի ու գործի միասնությունն է: Աշխատավորների կոմունիստական դաստիարակության հաջողությունն զգալի, և այն էլ վճռական չափով պայմանավորված է նրանով, թե այն որքա՛ն լավ է զուգակցվում կազմակերպական-կուսակցական աշխատանքի հետ՝ հատկապես ձեռնարկությունների, կառույցների, կոլտնտեսությունների և սովխոզների, հիմնարկների սկզբնական կուսկազմակերպությունների և կուսակցական կոմիտեների մակարդակով: Չէ՞ որ հենց այստեղ է նյութականանում ՍՄԿԿ քաղաքականությունը, այստեղ է դրսևորվում կոմունիստների ավանգարդային դերը մեր հասարակության կյանքում: Կարելի է ցանկացած չափով բանիմացորեն մարդկանց



սովորեցնել մարքսիզմ-լենինիզմ, քարոզել սովետական ապրելակերպի բարոյական վեհ սկզբունքներ ու նորմեր, կոմունիստական բարոյականություն, պարզաբանել ՍՄԿԿ քաղաքականության խոր ժողովրդական բնույթը, նրա ծրագրային փաստաթղթերի ու Կենտրոնական կոմիտեի որոշումների բովանդակությունը, դրանց բովանդակած դաստիարակչական պոտենցիալը լրիվ իրացվում է միայն այն ժամանակ, երբ խզում չկա կուսակցական կազմակերպությունների, առանձին կոմունիստների ասածի ու կատարածի միջև: Կուսակցական կրքոտ խոսքը ուժեղ զենք է, եթե միշտ հաստատվում է դրական արդյունքներ բերող կոնկրետ, այսինքն՝ իրոք գործի կուսակցական դրվածքով: Վերջին հաշվով միայն դրանով է որոշվում, թե տվյալ կուսակցական կազմակերպությունն իրո՛ք այն է, ինչ նա պետք է լինի, այսինքն՝ աշխատավորական կոլեկտիվի քաղաքական ու կազմակերպական կորիզը, նրա սոցիալական փորձի կենտրոնակետը, նրա հոգին ու խիղճը:

Մարդկանց մասին, ինչպես հայտնի է, դատում են ըստ աշխատանքի և ըստ արարքների, դրանցով իսկ մարդիկ դատում են կուսակցության մասին, պետության մասին, ամբողջ հասարակական կարգի մասին: Մարդն ապրում է որոշակի արտադրական, տերիտորիալ միկրոսոցիալական միջավայրում: Բայց նա սովորաբար հակված է օրեցօր իր ստացած անձնական փորձն ընդհանրացնել, իր գնահատականներին ու հետևություններին տալ առավելագույն չափով լայն բնույթ: Մեր կյանքի որոշ թերություններ, որոնց հետ բախվում են մարդիկ առօրյա պրակտիկայում, ոմանց բնորոշ են թվում սոցիալիստական ապրելակերպին՝ որպես այդպիսինի, իսկ անպատիժ մնացած անբարոյական արարքը, և հատկապես եթե այդ մեղքը գործել է կուսակցության անդամը, շատերի աչքում թուլացնում է կոմունիստական բարոյականության ձգողական ուժը:

Ավելորդ չի լինի, եթե այդ բանը հիշեն ո՛չ միայն գաղափարախոսական աշխատողները, այլև բոլոր կոմունիստները: Հիշեն, որ շարունակ իրենց են սևեռված շրջապատի մարդկանց լարված հայացքները, որոնք սրատեսորեն նկատում են վարքի յուրաքանչյուր շեղում, ամեն մի վրիպում: Հիշեն, որ կոմունիստը՝ դա ո՛չ միայն պատվավոր կոչում է, այլև շատ բան պարտավորեցնող կոչում, որը հարկավոր է հաստատել անվերապահորեն՝ միշտ և ամենուրեք: Իր կուսակցական կազմակերպության հանդեպ, ողջ կուսակցության, ժողովրդի հանդեպ կոմունիստի խորապես գիտակցված պատասխանատվությունը այն փորձաքարն է, որով ստուգվում է նրա ներգործուն, այլ ոչ թե ձևական հեղինակությունը:

Լենինի կուսակցության անդամներին, կուսակցություն, որը պատմական սխրագործություն կատարեց հանուն ժողովրդի երջանկության և ամբողջ աշխարհին ցույց է տալիս բանվոր դասակարգի, աշխատավոր մասսաների շահերին անձնվիրաբար ծառայելու օրինակ, հատուկ է առջևում լինել կոմունիստական շինարարության բոլոր տեղամասերում, հանրորեն նշանակալից բոլոր նախաձեռնություններում, ամենից առաջ իրենց պրոֆեսիոնալ գործունեության մեջ: Այդ մասին վերջերս հիշեցրեց Կենտկոմի նոյեմբերյան (1981 թվական) պլենումը: «Կենտրոնական կոմիտեն հսկայական նշանակություն է տալիս սկզբնական կուսակցական կազմակերպությունների մարտականությանը,— ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը:— Այն բանով, թե ինչպես են աշխատում կոմունիստները, մեծապես պայմանավորված են աշխատավորական կոլեկտիվներում տիրող մթնոլորտը, տրամադրությունը, հետևաբար նաև՝ արտադրացուցանիշները: Հարկավոր է, որ յուրաքանչյուր կոմունիստ, իսկ մենք գրեթե 18 միլիոն ենք, իր տեղամասում բոլոր ուժերը, փորձն ու գիտելիքները ի սպաս դնի ռեզերվների որոնմանը, աշխատանքի արդյունավետության բարձրացմանը, աշխատանքային անձնվիրության արժանի օրինակ ծառայի»:

Ցավոք, ոչ բոլոր կուսակցական տոմս կրողներն են լիովին արդարացնում կոմունիստի բարձր կոչումը: Կուսակցությունն ազատվում է այն մարդկանցից, ովքեր բացահայտորեն չեն համապատասխանում առաջադրվող պահանջներին, իսկ ովքեր ՍՄԿԿ կանոնադրությունը, սոցիալիստական օրինականությունը







խախտում են ու չարամտաբար, նրանց պատժում է, դաստիարակում։ Բայց կան նաև կուսակցության այնպիսի անդամներ, որոնք ձևականորեն ոչինչ չեն խախտում և կարծես ձգտում են աչքի ընկնել լավ աշխատանքով և օրինակելի վարքով, բայց այդ իմաստով նրանց մոտ ամեն ինչ չէ, որ ստացվում է. նրանք մերթ մեղկանում և պասիվություն ու անբավարար շահագրգռություն են ցուցաբերում կարևոր հարցի լուծման գործում, մերթ անփութորեն, առանց ավյունի են կատարում կուսակցական հանձնարարությունը, մերթ բոլորովին անկիրք են վերաբերվում ուրիշների սխալներին ու աշխատանքի թերություններին։ Այդպիսի կոմունիստները, բնականաբար, նվազեցնում են իրենց կուսկոլեկտիվների մարտունակությունը, գաղափարադաստիարակչական աշխատանքի արդյունավետությունը։

Կուսակցական կազմակերպությունները կոչված են զարգացնելու կոմունիստների նախաձեռնությունն ու պատասխանատվությունը կուսակցության քաղաքականության կենսագործման համար մղվող պայքարում, ավելի հետևողականորեն հանդես գալու արտադրության մեջ և մարդկանց դաստիարակության գործում եղած թերությունների, անկարգապահության, անտնտեսվարության և չարաշահումների փաստերի դեմ, բարձրացնելու պահանջկոտությունը կադրերի նկատմամբ, ձգտելու այն բանին, որ սովետական, տնտեսական մարմինների, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունների ողջ աշխատանքը տոգորված լինի զգայուն, ուշադիր վերաբերմունքով մարդկանց նկատմամբ, նրանց կարիքների ու պահանջմունքների բավարարման հոգածությամբ։ Բյուրոկրատիզմը, անհոգությունը, սնապարծությունը չեն կարող և չպետք է տեղ ունենան սովետական ապրելակերպում։ Գաղափարադաստիարակչական ու կազմակերպական-կուսակցական ճիշտ աշխատանքը հնարավորություն է ընձեռում մոտենալու յուրաքանչյուր մարդու, լավ իմանալու մարդկանց խոհերն ու տրամադրությունները, ամրապնդելու կապը մասսաների հետ, հնարավոր է դարձնում կշռադատված, ճշգրիտ որոշումների ընդունումը։

Իհարկե, կուսկազմակերպությունները, կուսակցական կոմիտեները համառորեն աշխատում են կատարել ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումները։ Սակայն, ինչպես ցույց է տալիս պրակտիկան, այստեղ կան նաև էական վրիպումներ։ Խոսքն այն մասին է, որ ներկուսակցական հարաբերությունների կատարելագործումը, կոմունիստների ավանգարդային դերի բարձրացումը դեռ թույլ են կապակցվում տնտեսական-քաղաքական կոնկրետ խնդիրների լուծման հետ, աշխատավորական կոլեկտիվներում կարգապահության ու կազմակերպվածության ամրապնդման, աշխատավորների ստեղծագործական նախաձեռնության զարգացման հետ։

Առանձին սկզբնական կուսկազմակերպություններ անբավարար հաստատակամությամբ են կենսագործում կուսակցական գիծը, լրիվ չափով չեն օգտագործում կազմակերպական-քաղաքական միջոցները աշխատանքի արդյունավետությունն ու որակը բարձրացնելու, մարդկանց դաստիարակությունը բարելավելու նպատակով։ Ոչ բոլոր կուսակցական կոմիտեներն են գործնական հետևություններ արել եռանդուն, գործիմաց կուսակցական ղեկավարություն իրագործելու, վերահսկողությունն ու կատարման ստուգումն ուժեղացնելու, աշխատանքի ոճն ու մեթոդները կատարելագործելու, ներկուսակցական ինֆորմացիան ավելի բարելավելու, կուսակցական աշխատանքում հրապարակայնությունը՝ որպես մասսաների հետ կուսակցության կապերի ամրապնդման ներգործուն միջոց, ընդլայնելու անհրաժեշտության մասին ՍՄԿԿ XXVI համագումարի ցուցումներից։

Կուսակցական կազմակերպություններն ու կոմիտեները միշտ չէ, որ անհրաժեշտ սկզբունքայնությամբ են վերաբերվում իրենց անդամների— պետական, պլանային ու ֆինանսական կարգապահությունը խախտող տնտեսական ղեկավարների նկատմամբ, որոնք արտադրական և սոցիալ-կենցաղային հարցերի լուծման գործում ղեկավարվում են ոչ թե համապետական, այլ տեղայնական շահերով, հանդես են բերում վարչարարություն։ Ավելին, պատահում է, որ նրանք փաստորեն պաշտպանում են ադմինիստրատորների ոչ ճիշտ գործողությունները, ենթարկվում են նրանց, նույնիսկ պատսպարում մեղավորներին։



Ում հայտնի չէ, որ կուսակցությունը վաղուց դատապարտել է օրենքի ուժ ունեցող տարեկան արտադրապլանները պակասեցնելու միտումի արատավոր պրակտիկան, որն ըստ էության այդ պլանների ձախողումը օրինականացնելու մի ձև է։ Իսկ գործարանի կամ արտադրամիավորման կուսկոմիտեի քարտուղարը երբեմն դիրեկտորի հետ միասին գնում է մինիստրություն՝ օգնելու, որպեսզի համոզեն այն բանին, ինչի դեմ նա պարտավոր է ակտիվորեն պայքարել որպես կուսակցական ղեկավար։ Այդ մասին իմացող կոլեկտիվի անդամներին հետագայում դժվար է ապացուցել, որ հասարակության պլանաչափ սոցիալ-տնտեսական զարգացումը սոցիալիզմի անվերապահ առավելությունն է. նրանց հոգում հիմնավոր կասկածներ են ծագում առնվազն այդ առավելության օգտագործման ռեալ հնարավորությունների վերաբերյալ։ Դաստիարակչական արդյունքն ստացվում է մինուս նշանով։ ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան (1981 թվական) պլենումը վերստին ամենայն լրջությամբ արծարծեց պլանները սրբագրելու հարցը, և կուսկազմակերպությունները պարտավոր են առավելագույն ջանքեր գործադրել՝ վերացնելու վերջին տարիներին տարածված այդ երևույթը, ավելի եռանդուն, ձեռներեցորեն կիրառելու կուսակցական ղեկավարությունը՝ օգտագործելով իրենց ազդեցությունը, իհարկե, առանց փոխարինելու տնտեսական ղեկավարներին։

Սկզբնական կուսակցական կազմակերպություններն ունակ են այդ բանը ճիշտ, սկզբունքորեն անելու, եթե ինչպես հարկն է, լրիվ ծավալով իրականացնում են ադմինիստրացիայի գործունեության վերահսկողության իրենց իրավունքը, որը վավերագրված է ՍՄԿԿ կանոնադրությամբ։ Անհրաժեշտ է վերահսկողություն մարդկանց աշխատանքի, հասարակական կյանքի ու կենցաղի բոլոր հարցերի լուծման նկատմամբ, վերահսկողություն, որը կրում է ոչ թե պատահական բնույթ, իրականացվում է ոչ թե ընտրված անձանց մի նեղ խմբի կողմից, այլ լայնորեն ներգրավելով արհմիությունը, կոմերիտմիությունը, հաշվի առնելով աշխատավորական կոլեկտիվի հասարակական կարծիքը, իրոք խստապահանջ ու արդարացի վերահսկողություն։ Ստուգումների արդյունքները հարկավոր է հրապարակել, քննարկել աշխատավորների ընդհանուր ժողովներում, իսկ արված հետևությունները չպետք է մնան լոկ որպես բարի ցանկություններ։ Կոլեկտիվի անդամներն ակտիվորեն, ձեռներեցորեն, կամովին են մասնակցում բացահայտված սխալներն ու թերությունները ուղղելու գործին այն ժամանակ, երբ տեսնում են կուսակցական վերահսկողության ներգործունությունը, գիտեն դրա արդյունքների հիման վրա ձեռնարկվող միջոցների մասին։ Վերահսկողության ներգործունության բարձրացման ու դրա արդյունքների լայն հրապարակայնության գործում պրոպագանդան ու ագիտացիան կարող են և պետք է խաղան ավելի մեծ դեր, քան այժմ։

Հաճախ ղեկավարների սխալները, եթե անգամ քննադատվում են, ապա ծածկաբար, ետ նայելով, վախվխելով, որ հանկարծ չգցեն, չխախտեն նրանց հեղինակությունը. կոմունիստները կարծես չեն անցել դրանց կողքով, ընդհանուր առմամբ ուշադրություն դարձրել են, բայց օգուտը դրանից քիչ է։ Մեղավորը աստիճանաբար համոզվում է, որ իր հետ չեն կարող այնպես վարվել, ինչպես ուրիշների հետ, որ ինքը առանձնահատուկ անձնավորություն է, և աստիճանաբար վարժվում է վերահսկողությունից զերծ վարքագծի, արդեն հաշվի չի առնում հասարակական կարծիքը։ Այդպես է լինում, երբ անբարեխղճությունը, անտնտեսվարությունը, պլանային ու ֆինանսական կարգապահության խախտումները, աշխատավորների շահերի արհամարհումը փաստորեն մնում են անպատիժ։ Հետագայում նման աշխատողը դադարում է ունկնդրելու նաև կուսկազմակերպության կարծիքին, ոչ մի քննադատության արդեն չի արձագանքում, իսկ շրջապատի մարդիկ զարմանում են, թե այդ ինչպես եղավ, առաջ նա այդպիսին չէր։ Լինում է նաև այնպես, որ սկզբնական կուսկազմակերպությունն անգամ չի իմանում այն «հանդիմանության» մասին, որ կոմունիստը՝ իր կազմակերպության անդամը, ստացել է ավելի բարձր կուսակցական մարմ-

նում․ նրան կանչել են այնտեղ, հայրաբար մի թեթև հանդիմանել ու, ինչպես ասում են, ազատ արձակել։ Բնավ չի կարելի հանդուրժել, երբ կուսակցական կազմակերպությունն աչք է փակում առանձին կոմունիստների՝ իրենց ծառայողական դիրքը շահադիտական նպատակներով օգտագործելու վրա, կենցաղում նրանց ունեցած անվայել վարքի վրա։

Աշխատավորական կոլեկտիվում, ընկեր Լ. Ի. Բրեժնևի պատկերավոր արտահայտությամբ, քաղաքականության ու էկոնոմիկայի մեծ հասկացությունները փոխադրվում են պրակտիկայի լեզվի։ Պարզ չէ՞ արդյոք, որ այդ փոխադրությունը պետք է լինի համարժեք։ Չէ՞ որ ինչ չափով որ պրակտիկան երբեմն լինում է պակասավոր, նույն չափով անհատական գիտակցության մեջ աղքատանում կամ նույնիսկ խեղաթյուրվում են հենց այդ հասկացությունները։ Տվյալ հանգամանքը ուժեղ բացասական ներգործություն է ունենում գաղափարաքաղաքական դաստիարակության ողջ պրոցեսի վրա, զգալիորեն իջեցնում է դրա արդյունավետությունը։

Սովետական մարդկանց բացարձակ մեծամասնությունը իսկական կոլեկտիվիստներ են, հայրենասերներ ու ինտերնացիոնալիստներ։ Նրանք իրենց էության գաղափարական համոզվածությունը միացնում են կենսական վիթխարի եռանդի հետ, կոմունիստական գաղափարախոսությունը, կոմունիստական բարոյականությունն ընկալում են որպես հոգևոր-բարոյական կյանքի, առօրյա վարքագծի միակ ճիշտ ու միակ արժանի հիմունքներ։ Նրանք իրենց գործերով ցույց են տալիս, թե ինչ է նշանակում լինել սոցիալիստականորեն բարեխիղճ քաղաքացիներ, լավ աշխատողներ, Հոկտեմբերի մեծ իդեալների ակտիվ պրոպագանդիստներ։ Ամրապնդել, խորացնել սովետական մարդու այդ հիանալի հատկությունները, մշտապես հոգ տանել նրա համակողմանի զարգացման համար՝ գաղափարատեսական, քաղաքական, գիտական, կուլտուրական մտահորիզոնի ընդլայնման համար, օգնել՝ ավելի ճիշտ գտնելու իր տեղը կյանքում, նպաստել նրա՝ որպես իրոք ստեղծագործական, սոցիալականորեն ակտիվ սոցիալիստական անհատի աճին, ձևավորել նրանում խելացի պահանջմունքներ՝ հենց դա էլ նշանակում է ցանկալի արդյունքի հասնել քաղաքական-դաստիարակչական աշխատանքում։

Օրինական հպարտությամբ նշելով նոր մարդու կերպավորման գործում եղած հաջողությունները, որոնք ձեռք են բերվել մեր երկրում սովետական իշխանության տարիներին, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման պրոցեսում, կուսակցությունը անսքող մտահոգությամբ կոմունիստների, հասարակության բոլոր գիտակից անդամների ուշադրությունը հրավիրում է այն բանի վրա, որ շատ մարդկանց գիտակցության ու վարքագծի մեջ դեռևս ուժեղ կերպով զգացվում են սոցիալիստական հասարակական գիտակցությամբ վաղուց մերժված, իրենց դասակարգային էությամբ բուրժուական անհատապաշտական հոգեբանությունն ու բարոյականությունը։ Մերթ այստեղ, մերթ այնտեղ ամենևին ոչ միշտ հյութազուրկ ու թոշնած ծիլեր արձակելով, դրանք խախտում են կոլեկտիվիստական հասարակական հարաբերությունները, հսկայական վնաս հասցնում մեր տնտեսական ու կուլտուրական շինարարությանը, սոցիալիստական դեմոկրատիայի զարգացմանը։ Ժողովրդական ունեցվածքի հափշտակիչների անհագ ոտնձգությունները, կաշառակերների լկտի շահամոլությունը, այլևայլ բյուրոկրատների ճղճիմ իշխանատենչությունը, քաղքենիների անխոհ անտարբերությունը հանրային շահերի նկատմամբ, սպառողական վերաբերմունքը կյանքի հանդեպ, նորահայտ քաղքենիների «իրամոլությամբ» տառապելը և դրանց նման բացասական երևույթները աղաղակող հակասության մեջ են սովետական հասարակության ողջ կացութաձևի հետ։

Գիտակցության մեջ և վարքագծում հիշյալ բացասական երևույթների բուրժուական էության, այսինքն՝ հակասոցիալիստական բնույթի վրա ստիպված ենք ուշադրությունը սրել այն պատճառով, որ հաճախ մեզ մոտ դրանք համարում են գրեթե մանր չարաճճիություններ։ Բայց չէ՞ որ կուսակցական փաստաթղթերում դրանց վաղուց տրված է աներկմիտ բնորոշում՝ կոմունիստական բարոյականության հակոտնյաներ։ Ուրեմն ինչո՞ւ է երբեմն բարեհոգի վերաբերմունք ցուցաբերվում դրանց նկատմամբ։ Ո՞չ այն խախուտ հիմքի վրա արդյոք, որ ամեն մարդ էլ մի մեղք ունի, և որ եթե դրանք վերապրուկներ են, ապա մեզ համար սարսափելի չեն։



Կոմունիստական բարոյականության հակոտնյաներն իրենց պատմական ծագումով իրոք անցյալի վերապրուկներ են։ Իսկ մեզ համար դրանք ռեալ չարիք են և, բնականաբար, ունեն ոչ պակաս ռեալ պատճառներ։ Չե՞նք վախենում արդյոք մենք խորամուխ լինել այդ պատճառների մեջ այն շինծու պատրվակով, որ դրանով կարող ենք, մեկ էլ տեսար, վարկաբեկել սոցիալիզմը։ Բայց այստեղ վախենալու բան չկա. հիշյալ հակոտնյաների համար սոցիալական պատճառներ՝ այս բառի խոր, հիմնավոր, մասսայական իմաստով, մեզ մոտ իրոք չկան. այդ մասին գիտե ամեն մի քիչ թե շատ գրագետ մարդ։ Սովետական հասարակության կյանքում չկան այնպիսի հիմքեր, որոնք ուղղակի կամ անուղղակի, բայց օբյեկտիվ անխուսափելիությամբ պայմանավորեին կոմունիստական տեսակետից անբարոյական, հակահասարակական վարքագիծը։ Եվ այստեղ վիճելի ոչինչ չկա։ Բայց կան հանգամանքներ, որոնք նպաստում են հին բարքերի աշխուժացմանը, մարդկանց մղում հակահասարակական արարքների։ Այդ հանգամանքները մեր սխալների, կիսատ թողած գործերի, տնտեսական գործունեության մեջ, դաստիարակչական աշխատանքում մեր ունեցած թերությունների արդյունք են։ Հենց դրանք են սնուցիչ հող ստեղծում, որն օբյեկտիվորեն և սուբյեկտիվորեն վերարտադրում է մանրբուրժուականության ռեցիդիվներ։ Հարկավոր է որոնել ու գտնել հենց դրանք, ակտիվորեն պայքարել դրանց դեմ, հասարակական կարծիքն ուղղելով նյութական և կուլտուրական բարիքների արտադրության ու բաշխման, աշխատանքի չափի ու սպառման չափի նկատմամբ վերահսկողության, հասարակական կարգի կազմակերպման սոցիալիստական սկզբունքներից կատարվող ամեն տեսակ նահանջների նկատմամբ անհանդուրժողության մթնոլորտի ստեղծմանը։ Այդ դեպքում իսկ պրոպագանդայում, ողջ քաղաքական-դաստիարակչական աշխատանքում կլինի իրոք սերտ կապ կյանքի հետ, քանի որ պարզություն կստեղծվի ո՛չ միայն այն բանի վերաբերյալ, թե ինչի՛ց է հարկավոր ձերբազատվել, այլև այն առնչությամբ, թե ինչպե՛ս այդ անել յուրաքանչյուր տվյալ դեպքում։

Գաղափարախոսական աշխատողները պարտադիր կերպով պետք է շարունակ նկատի ունենան ամեն մի կենսական երևույթի դասակարգային, կուսակցական գնահատական տալու անհրաժեշտությունը, լինի դա դրական թե բացասական երևույթ, հարկավոր է միայն այդ բանն անել բանիմացորեն, ոչ պարտադրաբար ու համոզիչ կերպով, քանի որ դեռ ամենևին ոչ բոլորն են կարողանում ամեն ինչ անձամբ ճիշտ գնահատել։ Երբեմն նոր, անակնկալ կենսական իրավիճակները, գիտության հասումները, մոդայիկ հովերը արվեստի մեջ կատարյալ կրթված մարդկանց անգամ դնում են անելանելի դրության մեջ, եթե նրանց գաղափարական կոփվածքը բավարար չափով ամուր չէ։ Մի՞թե չի լինում, երբ որևէ մարդ, տեսնելով անբարոյական արարքի անպատժությունը, սկսում է կասկածել սոցիալիստական ապրելակերպի արժույթներին ընդհանրապես, կամ կարդալով ինչ-որ գիտականակերպ երկ (դրանք, ցավոք, ժամանակ առ ժամանակ թափանցում են մամուլ) չի կարող իր համար պարզել դրա ոչ մարքսիստական էությունը և դիալեկտիկամատերիալիստական հայացքի փոխարեն յուրացնում է ոչ գիտական, իդեալիստական հայացք։ Նման շեղումներ առանձնապես հեշտությամբ տեղի են ունենում գրականության և արվեստի ստեղծագործությունները գնահատելիս, եթե դրանց հեղինակները հեռանում են մարքսլենինյան աշխարհհայացքային, դասակարգային դիրքերից, սոցիալիստական ռեալիզմի սկզբունքներից։

Ընկեր Լ. Ի. Բրեժնևի «Հուշերում» կան այսպիսի ուսանելի տողեր. «Վտանգավոր է անգամ առժամանակ, անգամ առանձին տեղամասերում պետական ու հասարակական կյանքում գաղափարական սկզբունքը մոռանալը, գաղափարական սխալների հետ հաշտվելը։ Առաջին հայացքից դրանք այնքան էլ նկատելի չեն լինում, ինչպես, ասենք, տեխնիկական սխալները։ Եթե մի ինչ-որ ագրեգատ սխալ է նախագծված, ապա դա սպասվող հզորությունը չի տա, կամ էլ

ընավ չի աշխատի. դա երևում է միանգամից, կրած վնասը հեշտ է հաշվել։ Իսկ գաղափարախոսության մեջ սխալը որպես կանոն թաքնված է, քողարկված գեղեցիկ խոսքերի զգեստներով, բայց առավել ևս հղի է հետևանքներով, քանի որ այն անպայման կարտահայտվի և հսկայական վնաս կբերի, եթե ժամանակին չշտկվի։ Ժամանակակից աշխարհում դատարկություն չկա. այնտեղ, որտեղ մենք բարեհոգություն ենք անում, այնտեղ գործում են մեր գաղափարախոսական հակառակորդները»։

Կոմունիստական դաստիարակության հիմքը մարքս-լենինյան տեսության ամուր, խոր տիրապետումն է, յուրաքանչյուր սովետական մարդու գիտական, դիալեկտիկամատերիալիստական աշխարհայացքի ձևավորումը։ Միայն այդ աշխարհայացքն է հնարավորություն ընձեռում ճիշտ ու լայնորեն մտածելու, գիտակցելու իրականությունը իր ողջ հակասական զարգացման մեջ, արդյունավետ ուղիներ գտնելու կենսական հակասությունների լուծման համար, ստեղծագործաբար մոտենալու ամեն մի գործի, դրան վերաբերվելու կոմունիստական իդեալների իրականացման տեսակետից, ճիշտ կողմնորոշվելու գիտելիքների ու գործունեության՝ մարդու համար նոր ամեն մի բնագավառում, հասկանալու հասարակական կյանքի երևույթների էությունը, տեսնելու դրանց փոխադարձ կապն ու փոխադարձ կախումը, զարգացման միտումները։ Գիտակցված մարքս-լենինյան մոտեցումը իրերին ու երևույթներին՝ գրավականն է աշխատավորների քաղաքական կուլտուրան հաջողությամբ բարձրացնելու, տնտեսական, իրավական գիտելիքների հուսալի յուրացման, բարոյագիտական ու գեղագիտական խստապահանջության աճի, որոնք նպաստում են քաղաքական, աշխատանքային ու բարոյական դաստիարակության խնդիրների կոմպլեքսային լուծմանը, յուրաքանչյուրի մեջ կոմունիզմ կառուցողի ակտիվ կենսադիրքավորման մշակմանը։

Կոմունիստական դաստիարակության գործի համար գիտնականների բարձր պատասխանատվության մասին ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար ընկեր Մ. Ա. Սուսլովը հասարակական գիտությունների ամբիոնների վարիչների՝ անցյալ տարվա հոկտեմբերին կայացած համամիութենական խորհրդակցությունում ասաց. «Մեր հասարակագիտության կարևորագույն խնդիրն է՝ խորապես մշակել նոր մարդու կերպավորման գիտական հիմունքները։ Այստեղ առաջին պլան են մղվում սովետական մարդկանց գաղափարաքաղաքական, աշխատանքային ու բարոյական դաստիարակության արդյունավետության, նրանց մարքս-լենինյան գիտակցության մակարդակի հետագա բարձրացման հարցերը։ Հարկավոր է ավելի խոր ուսումնասիրել անհատի պահանջմունքների նպատակամղված զարգացման, զարգացած սոցիալիզմի հասարակության սոցիալիստական գիտակցության և հոգևոր կյանքի ձևավորման օրինաչափությունների պրոբլեմները։ Շոշափելիորեն աճում է աշխատավորների, հատկապես սովորող երիտասարդության հետաքրքրությունը կուլտուրական և բարոյական առաջընթացի հարցերի նկատմամբ։ Այս ամենը լայն ասպարեզ է բացում փիլիսոփաների ու հոգեբանների, պատմաբանների ու սոցիոլոգների, իրավաբանների ու մանկավարժների, բարոյագիտության, գեղագիտության, գրականության ու արվեստի բնագավառի մասնագետների ստեղծագործական աշխատանքի ու գործարար համագործակցության համար»։

Մեծ նշանակություն ունի նաև մարքս-լենինյան գիտության դասավանդման գաղափարատեսական մակարդակի բարձրացումը։ Այդ դասավանդումը դեռ հաճախ տարվում է աշակերտական, տիրացուական ձևով, երբ սիստեմատիկ, համակողմանի ստեղծագործական ուսումնասիրումը փոխարինվում է առանձին ցիտատներ քաղելով ու դրանց մակերեսային մեկնաբանմամբ և կամ կառուցվում են քաղաքական ու սոցիալ-տնտեսական կոնկրետ կենսաթրթիռ պրոբլեմներից կտրված։ Դրա հետևանքով մարքսիզմ-լենինիզմը երբեմն ընկալվում է ոչ թե որպես չթուլացող կենդանի հետաքրքրություն առաջացնող, պրակտիկ գործողության անփոխարինելի ուղեցույց, այլ որպես մի առարկա, որ հարկավոր է իմանալ պարտականության բերումով։

Սովետական մարդիկ մարքսիզմ-լենինիզմն ուսումնասիրում են դպրոց-



ներում, բուհերում, կուսակցական և կոմերիտական ուսուցման ցանցում, ժողովրդական համալսարաններում և այլուր։ Եվ բոլոր դեպքերում էլ ուսուցիչների, դասախոսների, պրոպագանդիստների, ուսումնական ձեռնարկների և գիտահանրամատչելի բրոշյուրների հեղինակների կամ «Միլիոնների լենինյան համալսարանի» տիպի հեռուստատեսային հաղորդումներում ելույթ ունեցողների առջև ըստ էության դրված է մի նպատակ — տալ սիստեմատիկ գիտելիքներ, որոնք բացահայտում են հասարակական մտքի այդ գագաթի, աշխարհի իմացության, հասարակության հեղափոխական վերակերտման անխափան զենքի վեհությունը։ Մարքս-լենինյան մտքի ստեղծագործական լաբորատորիան ավելի ու ավելի խոր թափանցելու ճաշակ կարելի է պատվաստել միայն առարկայնորեն, շոշափելի կերպով ու կրքոտությամբ պարզաբանելով Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի, Վ. Ի. Լենինի աշխատությունների, կոմունիստական կուսակցության փաստաթղթերի կենսական բովանդակության ողջ հարստությունը, անառարկելի տրամաբանությունը։

Խորհրդածելով գաղափարաքաղաքական աշխատանքի վերակառուցման, բարելավման պրոբլեմների մասին, հարկ է լինում նորից ու նորից վերադառնալ այն հանրահայտ ճշմարտությանը, որ մարդկանց դաստիարակում են նախ և առաջ առօրյա կյանքը, սոցիալական այն պայմանները, որոնցում անցնում է այդ կյանքը։ Եվ յուրաքանչյուր մարդու համար շատ կարևոր է ճիշտ ու հնարավորին չափ ավելի լրիվ իմաստավորել, հասկանալ, զգալ այդ պայմանները՝ հայրենիքի, ժողովրդի բախտի հետ նրանց ունեցած պատմական կապի մեջ, սոցիալական արդարության համար ամբողջ աշխարհի կոմունիստների մղած պայքարի կոնտեքստում։

Այդ ամբողջ աշխատանքի կենտրոնում պետք է գտնվի սոցիալիզմի պատմական առավելությունների ու նվաճումների փաստարկված պրոպագանդումը սոցիալ-քաղաքական, տնտեսական և ազգային ամենաբարդ պրոբլեմների լուծման, գիտության և կուլտուրայի զարգացման, բարոյական բարձր արժույթների հաստատման գործում։ Չի կարելի հաշտվել այն բանի հետ, որ այդ կարևոր գործը դեռ միշտ չէ, որ տարվում է բանիմացորեն, մատչելիորեն, մարդկանց ուշադրությունը կենտրոնացնելով կուսակցության և ժողովրդի խոշոր, տպավորիչ նվաճումների վրա, այն բոլոր բարիքների վրա, որ մեզ մոտ մարդուն տալիս է սոցիալիստական կարգը։ Հարկավոր է վառ ու համոզիչ կերպով բացահայտել մեր օրերի հերոսականությունը, աշխատանքի մարդու՝ կոմունիզմ կառուցողի, գեղեցկությունն ու իսկական վեհությունը։

Սովետական մարդկանց անծանոթ են գործազրկությունը, աղքատությունն ու սովը, անօթևան կյանքը, կրթության անմատչելիությունը, որակյալ բժշկական օգնություն ստանալու անհնարինությունը, ծերության կամ աշխատունակությունը կորցնելու դեպքում առանց գոյության միջոցների մնալու վախը։ Մենք ստիպված չենք լինում մեր հանապազօրյա հացը վաստակել՝ մեր աշխատանքով հարստացնելով սեփականատեր-շահագործողին, մեր կենսական իրավունքները պաշտպանել ամեն տեսակ կեղեքիչների դեմ մղած դժվարին պայքարում։ Մեզ ծանոթ չէ այն մարդկանց դժնդակ աշխարհզգացողությունը, որոնք հակամարտ հասարակության մեջ կանգնած են դասային-հիերարխիկ սանդուղքի ամենացածր աստիճաններին, և որոնք իրենց իշխանությունից վեր հանգամանքների կամքով նետվել են «տնտեսական հատակը»։ Շնչել առողջ, հանգիստ սոցիալական մթնոլորտի մաքուր օդը, հնարավորություն (և նույնիսկ պարտականությո՜ւն) ունենալ վստահորեն, ոգեշունչ կերպով աշխատելու իր սեփական ու հասարակական բարօրության համար, մի խոսքով, լրիվ իմաստով ապրել մարդկայնորեն, չէ՞ որ սա վիթխարի երջանկություն է։ Իսկ բոլո՞րն են արդյոք հաշիվ տալիս իրենց այդ մասին։ Հասարակության հոգածությունը աշխատանքի մարդու, նրա ընտանիքի մասին, յուրաքանչյուր անհատի զարգացման, ժողովրդի կենսամակարդակի մշտական աճի մասին սովետական երկրում դարձել է այնքան սովորական, բնական գործ, որ շատերը, հատկապես երիտասարդները, հակված են մոռանալու, երբեմն էլ պարզապես չխորհելու դրա ակունքների ու սոցիալական պայմանների մասին։

Պրոպագանդայում և ագիտացիայում սոցիալիզմի պատմական նվաճումների թեման, իհարկե, ուշադրությունից դուրս չի մնում: Բայց հաճախ այդ մասին ասվում կամ գրվում է կարծես կողքից, անհոգի, բավական տարտամ և այդ պատճառով սակավ համոզիչ: Որպես կանոն, հիմնական շեշտը դրվում է ժողովրդի կենսամակարդակի աճի, նրա սոցիալական ապահովության բարելավման, բնակարանային շինարարության, երեխաների մասին հոգատարության վրա: Դա լավ է, ճիշտ է: Բայց ահա այնպիսի արմատական բաների մասին, ինչպիսին է շահագործման, հասարակական անհավասարության, քաղաքական, ռասսայական ու ազգային ճնշման վերացումը, կոլեկտիվիստական հասարակական հարաբերությունների հաղթանակի մասին հիշատակվում է հարևանցիորեն, անցողիկ արտահայտություններով, որոնք գրեթե չեն հասնում ընթերցողների, ունկնդիրների, հանդիսատեսների ո՛չ մտքին, ո՛չ սրտին: Բայց չէ՞ որ այն, ինչ երբեմն մեզ թվում է միանգամայն պարզ և մեկնաբանում չպահանջող, իրականում հենց պահանջում է այդ: Այլապես ընդհանուր արտահայտություններն ի վերջո սկսում են աննկատելիորեն անցնել գիտակցության կողքով, իսկ դրանց վառ ու համոզիչ կերպով չբացահայտված, դասախոսի, պրոպագանդիստի, ժուռնալիստի կողմից «չշարադրված» խոր իմաստը խամրում է մարդկանց աչքում, հետաքրքրություն չի հարուցում: Այո՛, դրանք կյանքի տարրական հասկացություններ են զարգացած սոցիալիստական հասարակարգում, բայց այդ տարրական հասկացությունների նկատմամբ էլ հենց չպետք է վերաբերվել թեթևամտորեն, քանի որ, առանց յուրացնելու դրանց թվացյալ պարզության ետևում թաքնված բովանդակության ողջ հարստությունը, դժվար է կողմնորոշվել դրանցից բխող և դրանց վրա խարսխվող մնացած ամեն բանում:

Կապիտալիզմի նկատմամբ սոցիալիզմի առավելությունների մասին, այն հասարակության մարդասիրական էության մասին, որը չի բզկտվում դասակարգային հակամարտություններից, բաժանված չէ դասային անջրպետներով, չգիտե սոցիալական բախումներ, ազգային թշնամանք, որոնք անհամար դժբախտություններ են բերում աշխատավոր ժողովրդին, տնտեսական ու քաղաքական ճգնաժամերի ցնցումներից զերծ հասարակության մասին պետք է գրել ու խոսել այնպես, որ սոցիալիզմի վիթխարի նվաճումների պատմական իմաստը ամրակայվի մարդկանց գիտակցության մեջ, հետևաբար՝ ոչ սերտած ֆրազներով, ոչ առանց կրքի: Չպետք է կարծել, օրինակ, թե իբր «տնտեսական շահագործում» հասկացության սոսկ հիշատակմամբ այն իր ամբողջությամբ բացահայտվում է երբեք այդ երևույթին չբախված մարդու առջև: Հարկավոր է ավելի հաճախ ու ավելի հասկանալի ձևով մարդկանց պարզաբանել ասես թե հայտնի այնպիսի բաներ, ինչպիսիք են անհատի ու հասարակության շահերի հակադրության վերացումը, դրանց օրգանական զուգակցումը սոցիալիզմի օրոք, և շատ այլ բաներ:

Նույնչափ բավական չէ պրոպագանդայում և ագիտացիայում պարզապես հիշատակել արտադրության միջոցների հանրային սեփականության մասին՝ որպես սոցիալիստական հասարակության տնտեսական հիմքի: Մարդիկ պետք է գիտակցեն, զգան, որ առանց այդ սեփականության նորմալ գործառնության ու բազմապատկման անհնարին են և՛ ժողովրդական բարեկեցության աճը, և՛ աշխատանքի ռացիոնալ, առավելագույն արդյունաբեր կազմակերպումը, և՛ իսկական կոլեկտիվիստական հասարակական հարաբերությունների կատարելագործումը, և՛ հասարակության անդամների բարոյական կատարելագործումը: Սոցիալիստական սեփականությունը ոմանք ընկալում են որպես «ոչ ոքի» կամ իրենց հետ ոչ մի առնչություն չունեցող «պետական» սեփականություն, որը կարելի է չխնայել, անխոհեմ կերպով վատնել, իսկ երբեմն էլ դրանից որքան կարելի է մեծ պատառ կորզել իր համար: Մեզ մոտ այնքան շատ չեն այնպիսի մարդիկ, որոնք ձեռք են բարձրացնում ժողովրդական ունեցվածքի վրա, դրա փոխարեն քիչ չեն նաև նրանք, ովքեր չեն կանգնեցնում նրանց, դա համարելով ոչ իրենց գործը: Ըստ երևույթին, անտարբեր մարդիկ չեն գիտակցում, որ իրենց բարեկեցությունը, ավելին՝ անհատի իսկական ազատությունը, որ վայելում են նրանք զարգացած սոցիալիստական հասարակարգում, վերջին հաշվով, հանրային սեփականության արդյունք են:



Սոցիալիստական հանրային սեփականությունը աշխատավորներին դարձնում է արտադրության, ամբողջ սոցիալական կյանքի տերը, օբյեկտիվորեն ապահովում նրանց արմատական շահերի իրականացումը: Դաստիարակել տիրոջ այդ զգացումը, ավելի հաճախ հիշեցնել այն մասին, որ ժողովրդական սեփականությունն ստեղծվում է աշխատանքով և միայն աշխատանքով, և որ այն բազմապատկելը, խնայելը բոլորի ու յուրաքանչյուրի օգտին է՝ ահա գաղափարախոսական աշխատանքի կարևորագույն խնդիրը:

Պրոպագանդայում ակնհայտորեն անբավարար ուշադրություն է նվիրվում ազատության, սովետական դեմոկրատիայի թեմաներին: Չի կարելի ասել, թե այդ թեմաները թերագնահատվել են: Որքան ուզեք կարելի է գտնել լավ հեռուստատեսային հաղորդումներ, ակնարկներ մամուլում սովետների աշխատանքի մասին, դեպուտատների, ակտիվիստների մասին, որոնք կամովին մասնակցում են իշխանության մարմինների գործունեությանը, ժողովրդական վերահսկիչների մասին... Բայց ահա միշտ չէ, որ հաջողվում է վառ կերպով, տեսանելիորեն, պատկերավոր կերպով ցույց տալ սոցիալիստական դեմոկրատիան՝ բուրժուական դեմոկրատիայի համեմատությամբ, հմտորեն ընդգծել սովետական քաղաքացիների լիիրավությունը՝ ի հակադրություն կապիտալի աշխարհի մարդկանց ձևական իրավահավասարության: Մենք մարդկանց քիչ ենք սովորեցնում ճիշտ օգտվել սովետական սահմանադրության, մեր ամբողջ քաղաքական սիստեմի ընձեռած ամենալայն իրավունքներից ու ազատություններից, դրանք հմտորեն զուգակցել պետական, հասարակական գործերի համար իրենց ունեցած անձնական պատասխանատվության հետ: Հարկավոր է ավելի լայնորեն պրոպագանդել աշխատավորների վճռական մասնակցության հնարավորությունները արտադրության պլանավորմանն ու կառավարմանը, էներգիայի, հումքի և նյութերի խնայողության համար, արտադրանքի որակի համար մղվող պայքարին, խոշոր ժողովրդատնտեսական ծրագրերի իրականացմանը:

Մարդկանց գիտակցության մեջ ամուր հաստատել սոցիալիզմի սոցիալական նվաճումների պատմական իմաստը՝ նշանակում է հետևողականորեն ու նպատակասլաց կերպով, ակնառու փաստերով ու խոր ընդհանրացումներով, կապիտալիզմի ռեալությունների հետ համադրության մեջ, փաստարկված, համոզիչ կերպով բացահայտել մեր կարգի մարդասիրական էությունը, մարդկային հարաբերությունների ներդաշնակումը: Մասսայական ինֆորմացիայի միջոցները, դասախոսները, պրոպագանդիստները, քաղինֆորմատորներն ու ագիտատորները պետք է սովորեն ավելի լրիվ օգտագործել տնտեսական և սոցիալական վիճակագրությունը, կենդանի կերպարների հուզական լեզվի փոխադրեն արտաքուստ չոր, բայց վիթխարի սոցիալական բովանդակությամբ լեցուն շատ տվյալներ, որոնք բնութագրում են ՍՍՀՄ-ի, եղբայրական սոցիալիստական երկրների զարգացումը:

Հետևողականորեն ու առարկայորեն ցույց տալով սոցիալիզմի առավելությունները, բացահայտելով մարդկանց պրոբլեմներն ու իրական կարիքները, անհրաժեշտ է հասնել կուսակցական պրոպագանդայի խորության, ռեալիստության և կշռադատվածության: Մինչդեռ ներքին կյանքի հարցերի լուսաբանման ժամանակ երբեմն թույլ է տրվում շեշտադրումների ոչ ճիշտ բաշխում մեր զարգացման բարդ պրոցեսների վերլուծման գործում: Քննադատությունը և ինքնաքննադատությունը, անկասկած, պետք է լինեն լուրջ, գործարար, լենինյան սկզբունքայնությամբ ու սրությամբ. կոմունիստներին, ինչպես շեշտում է կուսակցությունը, վայել չէ վախենալ այդ բանից այն պատճառով, որ դրանից կարող է օգտվել հակառակորդը: Մեր գլխավոր զենքը և՛ քաղաքականության մեջ, և՛ պրոպագանդայում ճշմարտությունն է: Ե՛վ հաջողությունների, և՛ թերությունների մասին կուսակցությունը միշտ ազնվորեն ասում է ժողովրդին: Մարդիկ միշտ էլ կհասկանան անկեղծ խոսակցությունը: Սոցիալիզմի ուժը մասսաների գիտակցականությունն է: ՍՄԿԿ-ն միշտ ելել և ելնելու է լենինյան այդ պատգամից: Բայց չի կարելի իբրև քննադատություն ընդունել այն, ինչ

քննադատություն չէ՝ մերկ քննադատականությունը, որը, ըստ էության, տանում է դեպի սովետական իրականության սևացում։ Այդպիսի, թող թույլ տրվի ասել՝ «քննադատությանը» անհրաժեշտ է տալ վճռական հակահարված։

Վերջին տարիներին թուլացել է ՍՄԿԿ ծրագրում ձևակերպված կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսի պրոպագանդումը։ Դա, թերևս, տարօրինակ է հնչում, քանի որ հենց այդ շրջանում է, որ լայնորեն ծավալվել են սովետական ապրելակերպի հետազոտությունները։ Բարոյական կոդեքսի այնպիսի նորմը, ինչպիսին է անհանդուրժողությունը հանրային շահերի խախտումների նկատմամբ, պորտաբուծության, գռփողականության, կարիերիզմի, անազնվության, հասարակական և անձնական կյանքում անհամեստության նկատմամբ, մեծ մասամբ շրջանցվում է։ Լինում են, իհարկե, նաև քննադատական խիստ ելույթներ մամուլում, հեռուստատեսությամբ, երբեմն երևան են գալիս այդ արատները խարազանող ֆիլմ կամ ներկայացում, բայց անընդմեջ մասսայական հարձակում ակնհայտորեն չի զգացվում։ Ասենք կոլեկտիվիզմի զգացումին էլ քիչ է ուշադրություն նվիրվում, քան այն արժանի է։ Իսկ այս ամենը նշանակում է, որ բարոյական դաստիարակության բնագավառում դեռ հարկավոր է աշխատել և՛ ավելի շատ, և՛ ավելի արդյունավետ։

Գաղափարախոսական պայքարում երբեմն որոշակի հաջողության է հասնում ոչ թե նա, ով իրավացի է, այլ նա, ով առաջինն է մամուլին կամ եթերին հանձնում տեղի ունեցածի իր մեկնակերպը։ Օպերատիվությունն այդպիսի դեպքերում կարծես փոխարինում է ապացուցելիությանը։ Իմպերիալիզմի, ամենից առաջ ամերիկյան իմպերիալիզմի աճած ագրեսիվության պայմաններում անհրաժեշտ է ավելի խոր ու հարձակողականորեն մղել գաղափարախոսական պայքարը մեր դասակարգային հակառակորդների դեմ։ Կարևոր է սիստեմատիկաբար, փաստարկված ու համոզիչ կերպով մերկացնել իմպերիալիզմի, նրա ներքին ու արտաքին քաղաքականության ռեակցիոն, հակաժողովրդական էությունը։ Իրադրությունը պահանջում է հաստատակամություն և սկզբունքայնություն ցուցաբերել Սովետական Միության, համաշխարհային սոցիալիզմի դիրքերի պաշտպանության գործում, մարքսիզմ-լենինիզմի գաղափարների իսկական հարձակողական պրոպագանդման գործում, վճռականորեն ազատվել պացիֆիզմի այն երանգից, որ երբեմն զգացվում է ինֆորմացիոն-պրոպագանդիստական որոշ նյութերում։ Դա կօգնի սովետական մարդկանց հեղափոխական զգոնության, նրանց դասակարգային ինքնագիտակցության զարգացմանն ու ամրապնդմանը։

Հարկավոր է աճած ռազմական սպառնալիքի վրա ուշադրություն հրավիրել՝ առանց թույլ տալու սոցիալիզմին հակադիր ուժերի հզորության չափազանցում, առանց ստեղծելու համաշխարհային ջերմամիջուկային պատերազմի ճակատագրական անխուսափելիության տպավորություն։ Համաշխարհային սոցիալիզմի դիրքերն ամուր են ու անսասան. այն ունակ է պաշտպանելու նվաճվածը։ Սովետական Միության խաղաղասիրական քաղաքականությունը դրա հետ մեկտեղ իմպերիալիզմի ագրեսիվ նկրտումներին, մեր անվտանգության դեմ ամեն մի ոտնձգությանը վճռական հարված հասցնելու քաղաքականություն է։ ՍՍՀՄ-ը ու նրա դաշնակիցներն ունեն բավականաչափ ռեսուրսներ ու հնարավորություններ, այդ թվում և ռազմական, ետ մղելու համար իմպերիալիզմի հարձակումը։ Փոփոխությունները հետպատերազմյան աշխարհում անդառնալի են։ Երկրագնդի վրա չկան այնպիսի ուժեր, որոնք ունակ լինեին կասեցնելու հասարակության հեղափոխական վերափոխման օրինաչափ պրոցեսը։ Իմպերիալիզմը ի վիճակի չէ դիմակայելու այդ օբյեկտիվ իրողություններին, աշխարհը վերափոխելու ըստ իր պատկերի ու նմանության։

Մասսայական ինֆորմացիայի բոլոր միջոցների և պրոպագանդայի խնդիրն է՝ մշտապես ուշադրության կենտրոնում պահել ՍՄԿԿ խորապես սկզբունքային և հետևողական արտաքին քաղաքական գործունեությունը, խաղաղության ստրատեգիան պարզաբանելու աշխատանքը, ստրատեգիա, որն ահա արդեն երեսունյոթերորդ տարին է պատերազմից խուսափելու հնարավորություն է ընձեռում։



«Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշմամբ խնդիր է դրված ավելի արդյունավետորեն հակազդել բուրժուական պրոպագանդային։ Այս ուղղությամբ ձեռնարկված միջոցները տալիս են դրական արդյունքներ։ Դրա հետ մեկտեղ իրադրությունը պահանջում է զգալիորեն ավելի մեծ ուշադրություն նվիրել հակապրոպագանդայի հարցերին ինչպես արտասահմանում, այնպես էլ երկրի ներսում, ըստ ամենայնի բարելավել այդ աշխատանքը, ավելի ակտիվորեն մերկացնել իմպերիալիզմի գաղափարախոսական դիվերսիաները։ Դասակարգային հակառակորդը, օգտագործելով բոլոր միջոցները, փորձում է մեր բնակչության մի որոշ մասին պարտադրել իր գնահատականները ներքին և միջազգային կյանքի ամենահրատապ պրոբլեմների վերաբերյալ։ Այդ իրավիճակում կուսակցական կոմիտեները պետք է հակապրոպագանդան դիտեն որպես իրենց գործունեության կարևորագույն ոլորտներից մեկը, այն մղեն սիստեմատիկաբար, գործիմացորեն, հետևողականորեն, մասնակից դարձնելով փորձված կուսակցական ու պետական աշխատողներին, գիտնականներին, մասնագետներին։ Այս ոլորտում արդեն կա լավ փորձ. օգտակար է ուսումնասիրել այն և ամենուրեք արմատավորել պրակտիկայում։ Դա կօգնի՝ հակապրոպագանդային հաղորդելու այնպիսի անհրաժեշտ որակ, երբ այն մղում են՝ հաշվի առնելով երկրի յուրաքանչյուր տվյալ շրջանում, բնակչության այս կամ այն խմբի վրա բուրժուական պրոպագանդայի ունեցած ազդեցության աստիճանը։

Յուրաքանչյուր գիտակից քաղաքացի, իսկ կոմունիստը՝ առավել ևս, չի կարող անձնական պատասխանատվություն չզգալ դրսից եկող գաղափարախոսական ազդեցությանը դիմադրություն ցույց տալու համար։ Իսկ չէ՞ որ հաճախ լինում է և այնպես, որ իր լռելյայն թողտվությամբ որոշ «լավատեղյակ» մարդիկ տարածում են թշնամական «ռադիոձայների» հաղորդումներից քաղած սուտ լուրեր, քննարկում են իրադարձությունների ու փաստերի ակնհայտորեն միտումնավոր գնահատականներ, որոնք պարտադրվել են արտասահմանից։ Նման գործողությունները հարկավոր է վճռականորեն կասեցնել։

Ժամանակին Լենինը մատնանշել է. «Հին տիպի պրոպագանդան պատմում է, օրինակներ է տալիս, թե ինչ բան է կոմունիզմը։ Բայց այդ հին պրոպագանդան ոչ մի բանի պետք չէ, որովհետև հարկավոր է գործնականորեն ցույց տալ, թե ինչպես պետք է կառուցել սոցիալիզմ։ Ամբողջ պրոպագանդան պետք է կառուցվի տնտեսական շինարարության քաղաքական փորձի վրա» (Երկեր, հ. 31, էջ 465)։ Ապա նաև. «Հարկավոր է, որ ավելի քիչ ֆրազներ լինեն, որովհետև ֆրազներով դուք չեք բավարարի աշխատավորներին» (Նույն տեղը, էջ 466)։ Հետևելով լենինյան այս պատգամներին, հարկավոր է սովորել դրանք կատարել մինչև վերջ, մշտապես հաշվի առնելով ներքին և միջազգային կյանքի արդի պայմանները։

«Коммунист», № 1, 1982

# ԳԵՂԱՐՎԵՍՏԱԿԱՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԱՑՄԱՆ ՄԻՏՈՒՄՆԵՐԸ

**ԵԿԱՏԵՐԻՆԱ ՀԱԿՈԲՋԱՆՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

*ՀՈԲԵԼՅԱՆԱԿԱՆ ԱՅՍ ՏԱՐՈՒՄ, երբ լրանում է Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման 60 տարին, նոր ուժով է դրսևորվում ինտերնացիոնալացման միտումը հասարակական կյանքում, մասնավորապես գեղարվեստական կուլտուրայի ոլորտում։*

*Կարլ Մարքսն ու Ֆրիդրիխ Էնգելսը* Կոմունիստական կուսակցության մանիֆեստում *գրել են, որ «...տեղական և ազգային կղզիացածության ...փոխարինելու են գալիս ազգերի փոխադարձ համակողմանի կապն ու համակողմանի կախվածությունը։ Սա հավասարապես վերաբերում է ինչպես նյութական, այնպես էլ հոգևոր արտադրությանը։ Առանձին ազգերի հոգևոր գործունեության արգասիքը դառնում է ընդհանուր սեփականություն։ Ազգային միակողմանիությունն ու սահմանափակությունն ավելի ու ավելի անհնար են դառնում, և բազմաթիվ ազգային ու տեղական գրականություններից գոյանում է մի համաշխարհային գրականություն» (*Կոմունիստական կուսակցության մանիֆեստ, *«Հայաստան» հրատ., 1973 թ., էջ 58)։*

*Ինտերնացիոնալիզմը պատմական հասկացություն է. ծագումով այն համընկնում է ազգերի կազմավորման և ազգային ինքնագիտակցության առաջացման ընթացքին։ Այս հասկացության պատմականությունը դրսևորվում է միաժամանակ նրանում, որ հասարակության զարգացման տարբեր փուլերում այն հարստանում է պատմական կոնկրետ բովանդակությամբ. ամեն մի ազգային արվեստի սկզբնական շրջանում նկատվող տարերային-ինտերնացիոնալ մոտիվները պրոգրեսին համապատասխան վերաճում են ողջ ռեալիստական արվեստի համադեմոկրատական ինտերնացիոնալիզմի միտումին, որն, իր հերթին, սոցիալիստական արվեստում փոխարինվում է պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներով։ Այժմյան փուլում, սոցիալիստական կուլտուրաների ծաղկման և ընդհանուր մերձեցման պայմաններում, պրոլետարական ինտերնացիոնալիզմը սոցիալիստական ինտերնացիոնալիզմի արվեստում ձեռք է բերում առավել բարձր մակարդակ։ Ասվածից չի հետևում, անշուշտ, թե պրոլետարական ինտերնացիոնալիզմն այժմ վերանում է պատմական ասպարեզից, իր տեղը զիջելով որակապես «նոր» երևույթի՝ սոցիալիստական ինտերնացիոնալիզմին։ Հարկ է շեշտել, որ հարցի՝ այսօր ևս երբեմն դրսևորվող նման չափազանցված ըմբռնումը արժանի հակահարված է ստանում սովետական և արտասահմանյան մարքսիստ փիլիսոփաների և արվեստի տեսաբանների կողմից։ Թերևս սոցիալիստական ռեալիզմի արվեստն է հենց կոչված այս առիթով ասելու իր խոսքը և, կատարելով մեր ժամանակների համար կարևոր իր դերը, հաստատելու արվեստում պրոլետարական և սոցիալիստա-*



*կան ինտերնացիոնալիզմի հաջորդականությունը, քանի որ դրա հիմնարար սկզբունքներն առաջադրվել են պրոլետարական արվեստագետների կողմից, որոնց ավանդույթներն այսօր ևս շարունակում են զարգանալ բնականաբար նոր մակարդակով, գեղարվեստական մի շարք պրոցեսներին համապատասխան։*

*Ինտերնացիոնալիզմը որպես արդիականության պրոգրեսիվ մտայնություն իրողություն է դարձել գեղարվեստական կուլտուրայի ոլորտում ևս, ժողովուրդների գեղարվեստական ինքնագիտակցության տևական զարգացման շնորհիվ։ Ուստի, բնականաբար, այն պետք է ունենա իր պատմական նախադրյալները։ Հայտնի է, օրինակ, որ «ինտերնացիոնալիստական արվեստը» իբրև էսթետիկական և արվեստաբանական հասկացություն ծագել է XIX դարի վերջում, երբ ֆրանսիական գիտնական Լուի Կուրաժոն, ուսումնասիրելով արվեստի պատմության մեջ հայտնի «ինտերնացիոնալիստական գոթիկա» երևույթը, սկսեց օգտագործել այն, դրանով իսկ գիտական շրջանառության մեջ դնելով այդ հասկացությունը։ Արվեստի պատմությանը հայտնի են և շատ այլ դեպքեր, երբ տեղական ինչ-ինչ պատճառների ազդեցությամբ ծագել են «ինտերնացիոնալիստական արվեստի» նմանակներ, որոնք համապատասխանում էին Կուրաժոյի այդ ըմբռնմանը։ Դրանցից են, օրինակ, եվրոպական տարբեր երկրներում ծագած «արևելյան ոճի» դրսևորումները։*

*Հարցի սոցիալիստական դասակարգային ըմբռնման դիրքերից լիովին ակնհայտ է արևմտաեվրոպական մի շարք երկրների կրոններից ծնված միջնադարյան գոթիկայի կեղծ ինտերնացիոնալիստական բնույթը։ Դրանք համարելով սոսկ որպես ապացույց այն բանի, որ գեղարվեստական մտածողությունը դարեր ի վեր ուժեղ է եղել և՛ կրոնական նախապաշարումներից, և՛ տերիտորիալ ընդհանրությունից, չի կարելի պատահականորեն ծագած այդ բոլոր ֆանտոմները համարել արվեստում իրական ինտերնացիոնալիզմի արտահայտություն։ Արդի գեղարվեստական կուլտուրայի ինտերնացիոնալացման բուն գործոնների ուժն ու ներգործությունն այնպիսին են, որ դրանք պայմանավորում են դրանց զարգացման ուղղության ոչ թե պատահական, այլ օրինաչափ բնույթը։ Այս իմաստով «ինտերնացիոնալ արվեստի»՝ անցյալի ոչ մի նմանակ չի կարող համեմատվել հասուն սոցիալիզմի դարաշրջանի ժողովուրդների արվեստի և կուլտուրայի բնագավառում տեղի ունեցող սոցիալ-գեղարվեստական խոր պրոցեսի հետ, որն արդի սոցիալական զարգացման արդյունք է։*

*Հասուն սոցիալիզմի դարաշրջանի գեղարվեստական կուլտուրայի ինտերնացիոնալացումը կարելի է պատկերացնել իբրև փոխկանչ այն գագաթների, որոնցում տվյալ ժողովրդի ազգային ոգին գտնում է իր լավագույն, առավել ակնբախ գաղափարագեղարվեստական արտահայտությունը։ Այդ փոխկանչը շարունակվում է մշտապես, սովետների երկրի գոյության բոլոր տարիներին։*

*Այսօր, ազգերի ծաղկման պայմաններում, բնականաբար, շատանում, ավելի նշանակալից են դառնում այդպիսի գագաթները, որոնք, միաժամանակ, ազգերի համակողմանի մերձեցման պայմաններում և գիտատեխնիկական առաջընթացի շնորհիվ շատ շուտ դառնում են համընդհանուր սեփականություն։ Ուստի և արվեստի մեջ ազգայինի և ինտերնացիոնալիստականի դիալեկտիկան պետք է հասկանալ իբրև ազգային կուլտուրաների առաջընթաց դեպի միասնություն՝ դրանց ծաղկման միջոցով և դեպի նոր ծաղկում՝ միասնության միջոցով։*

*Մեր երկրի բոլոր հանրապետությունների ամենօրյա կյանքը հարուստ է ժողովուրդների ինտերնացիոնալ եղբայրության օրինակներով։ ՍՄԿԿ XXVI համագումարում Լ. Ի. Բրեժնևն ասաց. «...մեր հանրապետություններից յուրաքանչյուրի տնտեսական ու սոցիալական ինտենսիվ զարգացումն արագացնում է դրանց բազմակողմանի մերձեցման պրոցեսը։ Տեղի են ունենում ազգային կուլտուրաների ծաղկում ու փոխհարստացում, սոցիալական և ինտերնացիոնալ նոր ընդհանրության, միասնական սովետական ժողովրդի կուլտուրայի ձևավորում։ Այդ պրոցեսը մեզանում ընթանում է այնպես, ինչպես որ այն պետք է ընթանա սոցիալիզմի օրոք՝ հավասարության, եղբայրական համագործակցության ու կամավորության հիման վրա» (*ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, *էջ 92)։*

լիտիզմի՝ իբրև սուբյեկտիվ իդեալիստական ուսմունքի, իմացաբանական արմատները թաքնված են համընդհանրության ըմբռնման միակողմանի բացարձակացման մեջ։ Իբրև մեթոդաբանական սկզբունք, կոսմոպոլիտացումը ծընում է բուրժուական ֆորմալիստական գեղարվեստական մի շարք ըմբռնումներ, որոնք զրկում են արվեստը ամեն մի ազգային յուրահատկությունից։ Միաժամանակ լինելով իրականության արտացոլման հակառեալիստական միջոց, այն ոչ լիարժեք է և գեղարվեստական ներգործման առումով՝ վնասակար։ Մինչդեռ ինտերնացիոնալացումը, իբրև ռեալիստական արվեստի զարգացման առաջատար միտում, արգասիք է արվեստագետի ազգային հողի հետ ունեցած անխզելի կապի։

Այլ ազգերի կուլտուրաների ամեն մի կապ չէ, որ կարող է պրոգրեսիվ գործոն լինել այս կամ այն արվեստի համար, այլ ազգերի կուլտուրաների ամեն մի տարր չէ, որ կարող է բնականորեն ներծծվել տվյալ կուլտուրայի ձևի ու բովանդակության մեջ։ Ինտերնացիոնալիզմը ներդաշնակում է գեղարվեստական առաջընթացին միայն նրա համար, որ նպաստում է ազգային գեղարվեստական կուլտուրայի զարգացմանն ու հարստացմանը, չխեղելով դրա յուրօրինակությունն ու անկրկնելիությունը։ Ուստի և պարզ է, որ կուլտուրաների փոխներգործության ժամանակ կարևոր է ո՛չ միայն ինքը՝ պրոցեսը, այլ հիմնականում՝ ինտերնացիոնալացման արդյունքը։ Դրա շնորհիվ սոցիալիստական ազգի այս կամ այն արվեստը, որ կրում է իր մեջ այլ ազգային կուլտուրաների պատմական փոխներգործությունը, կարող է օրինակ ծառայել իբրև ինտերնացիոնալիստական գեղարվեստական պրոցեսների ուսումնասիրման օբյեկտ։

Ազգայինի և ինտերնացիոնալիստականի պրոբլեմը երկար ժամանակ ուսումնասիրվել է ամենից առաջ արվեստում ազգային յուրահատկությունների արժեքավորման տեսանկյունից։ Այդպիսի մոտեցումը պայմանավորված էր անցյալում ետ մնացող ժողովուրդների կուլտուրական զարգացման պահանջով և դրա զարգացումն արագացնելու անհրաժեշտությամբ։

Սակայն հասուն սոցիալիզմի արվեստի զարգացման արդի փուլում, ազգային կուլտուրաների համընդհանուր ծաղկման և դրանց մերձեցման պայմաններում ընձեռվել է առավել լայն ինտերնացիոնալիստական կապերի ուսումնասիրման հնարավորություն և անհրաժեշտություն։ Մեր երկրում ազգային կուլտուրաների ծաղկումն ու մերձեցումը հնարավորություն են ընձեռել ազգային դպրոցների գեղարվեստական նվաճումները դիտելու դրանց ինտերնացիոնալացման պրիզմայով։ Այդ, անշուշտ, էական առաջընթաց է ազգայինի և ինտերնացիոնալիստականի պրոբլեմի արդի ուսումնասիրությունների ոլորտում և վկայում է, որ բոլոր ժողովուրդների կուլտուրական զարգացման համար հավասար պայմանների ստեղծման միտումը, որ հատուկ է եղել սովետական պետությանը նրա կազմավորման առաջին իսկ օրից, իրեն լիովին արդարացրել է։

ՍՄԿԿ XXVI համագումարում մի անգամ ևս շեշտվեց, որ կուսակցությունը դեմ է ազգային յուրահատկությունների բռնի վերացման, նույնչափ անընդունելի է և դրանց արհեստական ուռճացումը։ Կուսակցության վսեմ առաքելությունն է՝ աշխատավորներին դաստիարակել սովետական հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով, սովետական մեծ, միասնական հայրենիքի քաղաքացին լինելու հպարտության զգացումով։

---

# ԿԵՆՍԱԲԱՆԱԿԱՆԸ ԵՎ ՍՈՑԻԱԼԱԿԱՆԸ ՄԱՐԴՈՒ ՄԵՋ

**Վ. Դ. ԴԱՐԲԻՆՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների
թեկնածու, դոցենտ

ՄԱՐԴՈՒ ՊՐՈԲԼԵՄԸ, ԱՌԱՆՁՆԱՊԵՍ նրա իրավունքների ու ազատությունների, գաղափարաքաղաքական համոզմունքների համար մղվող պայքարը եղել ու շարունակում է մնալ բուրժուական և կոմունիստական աշխարհայացքների հակամարտության, գաղափարախոսական պայքարի հիմնական բնագավառներից մեկը։ Եվ դա օրինաչափ է։ Քանի որ պատմությունը կերտում են մարդիկ, հանուն մարդու մղվող պայքարը ըստ էության պայքար է հասարակական պրոգրեսի համար, որի չափանիշը և նպատակը վերջին հաշվով դարձյալ մարդն է, նրա համակողմանի զարգացումն ու կատարելությունը։

Ինչպես շեշտվեց ՍՄԿԿ XXV և XXVI համագումարներում, կոմունիզմն անհնարին է ո՛չ միայն առանց զարգացած նյութատեխնիկական բազայի ստեղծման, այլև առանց կոմունիստական համոզմունքներ և գործելակերպ ունեցող նոր մարդու դաստիարակման։ Ուստի ներդաշնակորեն զարգացած, կոմունիզմի գործին խորապես նվիրված նոր մարդու կերպավորման պրոբլեմները կոմունիստական հասարակության կառուցման բազմաբնույթ և բարդ խնդիրների համակարգում ուրույն տեղ և նշանակություն ունեն։ Այդ պրոբլեմները գործնականում կարող են լուծվել միայն այն օրինաչափությունների գիտական իմացության հիման վրա, որոնք պայմանավորում են մարդու՝ որպես կենսաբանական-սոցիալական էակի, փոփոխությունն ու զարգացումը։

Ամենաընդհանուր ձևով մարդու իմացության սկզբնավորումը համընկնում է մարդկային հասարակության ձևավորման հետ։ Դեռևս հնագույն ժամանակներում մարդուն հետաքրքրել է ո՛չ միայն արտաքին աշխարհը, այլև մարդն ինքը, իր տեղը այդ աշխարհում։ Արդեն դասակարգային հասարակության ձևավորման շրջանում դրվել են մարդու գիտական իմացության հիմքերը։ Պատահական չէ, որ անտիկ աշխարհում տվյալ պրոբլեմն ուսումնասիրելիս ամբողջական մոտեցում ցուցաբերելու փորձեր են արվել։

Արդի գիտական իմացության զարգացման կարևոր առանձնահատկություններից է կոմպլեքսային պրոբլեմների առաջադրումն ու լուծումը, որը պայմանավորված է գիտության ինտեգրատիվ միտումի խորացմամբ։ Այդ առնչությամբ գիտական գիտելիքների ընդհանուր համակարգում անընդհատ աճում է փիլիսոփայական գիտելիքի դերը։ Գիտական իմացության հետագա առաջընթացի համար առանձնահատուկ կարևորություն են ստանում փիլիսոփայության մեթոդաբանական և ինտեգրատիվ ֆունկցիաները, ճանաչողական պրոցեսի ընդհանուր ուղղությունները որոշող դրույթները, որոնք ձևակերպվում են փիլիսոփայական գիտելիքի շրջանակներում։

Այստեղ բացառություն չէ նաև մարդու մեջ կենսաբանականի և սոցիալականի փոխազդեցության պրոբլեմը, որը ծագում է կենսաբանության, մարդու ֆիզիոլոգիայի, բժշկագիտության, հոգեբանության և հասարակական

մյուս գիտությունների տրամախաչման սահմանագծում: Ուստի, դրա իմացությունը չի կարող լինել բացառապես որևէ մասնավոր գիտության մենաշնորհը: Մյուս կողմից, պրոբլեմի լուծումը փիլիսոփայության մեջ հնարավոր է միայն մասնավոր գիտությունների հասումների ընդհանրացման հիման վրա: Մարդու մեջ կենսաբանականի և սոցիալականի փոխազդեցության մասին փիլիսոփայական սկզբունքի մեթոդաբանական ֆունկցիան պակաս կամ առավել չափով դրսևորվում է բոլոր այն գիտություններում, որոնց ուսումնասիրության օբյեկտը մարդու ամբողջական, կոմպլեքս պրոբլեմի տարբեր կողմերն են:

Արդի գիտության հասումների մեկնակետից մարդու մեջ կենսաբանականի և սոցիալականի հարաբերությունը դարձել է հույժ հրատապ պրոբլեմ: Վերջինիս կարևորությունն առնչվում է այն գործնական խնդիրների հետ, որոնք հարուցում են հասարակական առաջընթացը, արդի գիտատեխնիկական հեղափոխությունը:

Մարդու մեջ կենսաբանականի և սոցիալականի փոխազդեցության պրոբլեմում կարելի է առանձնացնել առնվազն երեք հիմնական ասպեկտ: Նախ, պրոբլեմի պատմական առումը՝ կենսաբանականը և սոցիալականը մարդու լինելիության պրոցեսում, Երկրորդ, կենսաբանականի և սոցիալականի փոխազդեցությունը ժամանակակից մարդուն բնութագրող այն ընդհանուր առանձնահատկությունների դետերմինացիայում, որոնց շնորհիվ նա տարբերվում է մյուս կենդանի էակներից. Երրորդ, կենսաբանական և սոցիալական գործոնների դերը կոնկրետ մարդու՝ անձնավորության, կերպավորման գործում: Վերջին երկու ասպեկտներն ըստ էության նաև պրոբլեմի հետազոտման հիմնական (մարդու ընդհանուր պոպուլյացիոն և անհատական կյանքի) մակարդակներն են: Հասկանալի է, որ հետազոտման այդ ասպեկտների և մակարդակների ինքնուրույնությունը հարաբերական է, դրանք փոխներթափանցվում են: Ուստի նյութի շարադրման պրոցեսում անցումը պրոբլեմի մեկ ասպեկտից մյուսին, մեկ մակարդակից մյուսին և հակառակը՝ օրինաչափ է, արտացոլում է հետազոտման պատմական և տրամաբանական մեթոդների դիալեկտիկան:

Մարդու պրոբլեմը քննարկելիս մարքսիստական մեթոդաբանական դիրքորոշում չունեցող արտասահմանյան հետազոտողների շրջանում դրսևորվում է երկու հիմնական մոտեցում: Եթե վերացարկվենք առանձին նրբերանգներից, դրանցից առաջինը կարող է բնութագրվել որպես կենսաբանական կոնցեպցիա, որն անտեսում է մարդու մեջ սոցիալականը, իսկ երկրորդը՝ գռեհիկ սոցիոլոգիզմ: Սակայն գիտական իմացության և, մասնավորապես, մարդու գենետիկայի հաջողությունների հետ կապված մեր ժամանակներում լայնորեն տարածվել է սոցիալ-բիոլոգիզմը, որը դուալիզմի և, ըստ էության, մեխանիստական մատերիալիզմի դիրքերից փորձում է համատեղել հիշյալ երկու մոտեցումները:

Գենետիկների 13-րդ միջազգային կոնգրեսում (1973 թ., ԱՄՆ) Ռ. Հերստայնը, Ու. Շոկլին, Խ. Այզենկան, անտեսելով մարդու՝ որպես կենսաբանական տեսակի, առանձնահատկությունը, պնդում էին, որ ռասայական և սոցիալական խմբերի միջև գոյություն ունեցող ինտելեկտուալ զարգացման տարբերությունները պայմանավորված են գենետիկորեն: Այդ տեսակետը հիմնավորելու նպատակով նրանք վկայակոչում էին վիճակագրական համեմատության մեթոդով կատարված հետազոտության արդյունքները: Այդպիսի մոտեցումը բնորոշ է նաև ամերիկացի կենսաբան-էվոլյուցիոնիստ Է. Մայերին: Մարդու նկատմամբ կիրառելով հետազոտման պոպուլյացիոն մեթոդը, նա հանգում է այն եզրակացության, որ գոյություն ունեն ռասաների ինտելեկտուալության գենետիկական հիմքերի տարբերություններ, գենետիկորեն պայմանավորված ինտելեկտուալության միջին բալով սպիտակամորթները բարձր են մյուս ռասաներից («Природа», 1973, № 12, 1974, № 2):

Մարքսիզմը չի ժխտում օժանդակ, տվյալ դեպքում կենսաբանական մեթոդների դերը մարդու իմացության պրոցեսում: Այսպես, ուղեղի ֆիզիկական,



բիոֆիզիկական, բիոքիմիական, ֆիզիոլոգիական վիճակների ուսումնասիրությունը կատարվում է համապատասխան գիտությունների հետազոտման կոնկրետ մեթոդներով: Ինչպես գրում է Ն. Պ. Բոչկովը, մարդու նկատմամբ պոպուլյացիոն մեթոդը հաջողությամբ կիրառվում է նաև մուտացիաների նմանությունների բացահայտման, պաթոլոգիայի տարածվածության պատճառների տարբերությունները պարզելու, ժառանգական հիվանդությունների կլինիկական պոլիմորֆիզմը վերլուծելու համար և այլն: «Մեթոդաբանական տեսակետից ոչ մի արատավոր բան չկա, երբ դիմում են էթնիկական տարբեր խմբերի հետազոտմանը մտավոր զարգացման գենետիկական մեխանիզմներն ուսումնասիրելու համար: ...Բանն այն է, որ ո՛չ պոպուլյացիոն, ո՛չ էլ ուրիշ մեթոդները մարդու գենետիկայում դեռևս բավարար չափով ճշգրիտ չեն այդ նպատակների համար: Մտավոր զարգացման ձևավորումը կենսաբանական և սոցիալական... գործոնների փոխներգործությամբ այնքան բարդ դետերմինացված պրոցես է, որ դրա վերլուծության համար դեռևս ադեկվատ մեթոդներ չկան: Հետևաբար, մարդկանց տարբեր խմբերում մտավոր զարգացման գործակիցների համեմատումը չի կարող ինֆորմատիվ լինել, ուստի նման արդյունքները պետք էլ չէ վերլուծել մեթոդաբանական տեսակետից» («Вопросы философии», 1981, № 1, стр. 53):

Կարևորն այստեղ, իհարկե, ոչ թե պոպուլյացիոն և մարդու գենետիկայի մյուս մեթոդների թերզարգացածությունն է, թեև դա նույնպես որոշ նշանակություն ունի, այլ, ինչպես նշում է Ն. Պ. Բոչկովը, հետազոտվող պրոցեսի առանձնահատուկ բարդությունն է: Բանն այն է, որ պոպուլյացիոն մեթոդը տվյալ դեպքում չի բավարարում գիտական իմացության մեթոդին ներկայացվող հիմնական պահանջներից մեկին՝ այն ադեկվատ չէ իմացության առարկային: Ն. Պ. Դուբինինը սկզբունքորեն մերժում է հետազոտման պոպուլյացիոն մեթոդով մարդու ինտելեկտուալ կարողությունների գենետիկական հիմքերի մասին ստացված տվյալների հավաստիությունը, բացահայտում նման մոտեցման մեթոդաբանական արատը: Նա շեշտում է, որ բուսական և կենդանական տեսակների հետազոտման պոպուլյացիոն եղանակը չի կարելի նույնությամբ կիրառել մարդու մտավոր կարողությունների գենետիկական հիմքերի ուսումնասիրման համար, որովհետև որպես իմացության օբյեկտներ նրանք միմյանցից որակապես տարբերվում են: Բույսերը և կենդանիները պասիվ կերպով են հարմարվում բնական միջավայրի պայմաններին, իսկ մարդն ակտիվորեն փոխում է այդ պայմանները, ինքն է ստեղծում իր կյանքի միջավայրը (Сбор. «Философская борьба идей в современном естествознании», М., 1977, стр. 68):

Կենսաբաններ Կ. Լորենցը, Ռ. Արդրին, Գ. Ստենտը, Ժ. Մոնոն մարդու մեջ բացարձակացնում են կենսաբանականը, դրա դերը անձնավորության ձևավորման գործում, լիովին անտեսելով սոցիալականը: Այդպիսի ծայրահեղ միակողմանի, զուտ կենսաբանական մոտեցումը մարդու պրոբլեմի հետազոտմանը չափազանց տիպական է Ժ. Մոնոյի Պատահականություն և անհրաժեշտություն աշխատությանը: Ինչպես նշում է Ի. Տ. Ֆրոլովը, այստեղ նա «ծայրահեղորեն բիոլոգիականացնում և խեղաթյուրում է մարդու զարգացման հետ առնչվող պրոբլեմները, լիովին անտեսելով մարդու էությունը որոշող սոցիալական գործոնները, այդ թվում և նրա ֆիզիկական կատարելագործման, կուլտուրայի զարգացման հնարավորությունները, ինչպես նաև մարդկանց արտադրական գործունեությունը՝ որպես հասարակական առաջընթացի հիմք» («Вопросы философии», 1979, № 8, стр. 27):

Ձգտելով սահմանազատվել ծայրահեղ բիոլոգիզմից, Սոցիոբիոլոգիա աշխատության հեղինակ Է. Ուիլսոնը, ինչպես նաև Ռ. Տրիվերսը, Ա. Իյենսենը թեև ընդունում են սոցիալական գործոնների դերը անձնավորության կերպավորման պրոցեսում, սակայն բիոսոցիոլոգիայի դիրքերից շեշտում են կենսաբանականը մարդու մեջ: Բացարձակացնելով կյանքի իմացության արդի նվաճումները, Է. Ուիլսոնը պնդում է, օրինակ, որ մարդկանց վարքը հիմնականում պայմանավորված է կենսաբանական գործոններով: Ուստի, նա առաջար-

կում է բարոյագիտությունը վերակառուցել կենսաբանական հիմքի վրա։ Գ. Մարկուզեն և Է. Ֆրոմը փորձում են Զ. Ֆրոյդի հոգեվերլուծական գաղափարները միացնել անձնավորության մասին մարքսիստական կոնցեպցիայի հետ՝ մարքսիզմը մեկնաբանելով գռեհիկ սոցիոլոգիայի ոգով։ Սկզբունքորեն անհամատեղելի այդ երկու հակադիր կոնցեպցիաները հաշտեցնելու էկլեկտիկական փորձը Է. Ֆրոմին հանգեցնում է այն կարծիքին, որ մարդու էությունը որոշվում է ենթագիտակցականի թաքնված կոնֆլիկտներով ու ձգտումներով, իսկ սոցիալականը պայմանավորում է միայն նրա էության սոսկ յուրահատուկ դրսևորումները։ Ըստ Է. Ֆրոմի, Կ. Մարքսը սխալվում էր մարդուն համարելով բանական էակ։ Մարդը իռացիոնալ կենդանի է, շեշտում է Է. Ֆրոմը (տե՛ս «Вопросы философии», 1979, № 8, стр. 27—30)։

Սոցիալ-բիոլոգիզմի կոնցեպցիան անձնավորության ձևավորման պրոբլեմի քննարկման առնչությամբ տրված է Ա. Իյենսենի «Ինչ չափով կարելի է բարելավել ինտելեկտուալ զարգացման գործակիցը և դպրոցական կրթությունը» հոդվածում։ Նա գտնում է, որ անհատական կյանքի ընթացքում մարդու մտավոր ընդունակությունները կարող են զարգանալ միայն աննշան չափով։ Ընդ որում նրանց զարգացման սահմանը որոշվում է կենսաբանական գործոններով, ժառանգականությամբ։ Փորձ է արվում նույնիսկ սահմանել անձնավորության ինտելեկտի դետերմինացիայում կենսաբանականի և սոցիալականի հարաբերակցության քանակական ցուցանիշը։

Մարքսիստական մեթոդաբանության տեսակետից այս դրույթը սկզբունքորեն սխալ է, որովհետև պարունակում է այն պնդումը, թե մտավոր ընդունակությունները մարդուն տրվում են ի ծնե։ Մարդը ժառանգում է ոչ թե մտավոր ընդունակությունները, այլ միայն նրանց գենետիկական հիմքերը։ Մյուս կողմից, ակնհայտ է, որ միակողմանի, զուտ քանակական մոտեցման դեպքում հնարավոր չէ բացահայտել կենսաբանական և սոցիալական գործոնների դիալեկտիկական փոխազդեցությամբ պայմանավորված անձնավորության, նրա մտավոր ընդունակությունների ձևավորման բարդ պրոցեսի մեխանիզմը։

Սոցիալ-բիոլոգիզմի մեթոդաբանական հավակնության սնանկությունը հանգամանորեն վերլուծված է Ա. Ֆ. Շիշկինի **Մարդկային բնությունը և բարոյականությունը** մենագրությունում։ Մարդու մասին արդի գիտական իմացության կուտակած փաստացի հարուստ նյութի վերլուծության միջոցով նա ցույց է տալիս, որ մարդու հոգեկան ընդունակությունները և մասնավորապես բարոյական հատկությունները թեև կենսաբանական հիմք ունեն, բայց չեն հանգում բացառապես դրան։ Հետևաբար, չեն կարող ժառանգվել պատրաստի վիճակում, այլ ձևավորվում են նրա անհատական կյանքի ընթացքում՝ սոցիալական գործոնների որոշիչ ազդեցության ներքո։ Գենոտիպը միայն կենսաբանական նախադրյալ է մարդու մեջ սոցիալականի իրականացման համար և ոչ թե սոցիալականի էության կրողն է (տե՛ս А. Ф. Шишкин, Человеческая природа и нравственность. М., 1979, стр. 215—216)։

Մարդու մեջ կենսաբանականի և սոցիալականի փոխազդեցությանն անդրադարձել են նաև սովետական այլ հետազոտողներ։ Ըստ հոգեբան Ա. Ն. Լեոնտևի, մարդու մեջ կան երկու կարգի ընդունակություններ. բնական, որոնք իրենց հիմքում կենսաբանական են, և հասարակական-պատմական ծագում ունեցող սպեցիֆիկ մարդկային, բարձրագույն կարգի ընդունակություններ։

Առաջիններից շատերը, օրինակ, արագորեն պայմանական կապեր ստեղծելու, դիֆերենցելու, նույնիսկ վերլուծելու ընդունակությունները, նույնական չեն բնածին տվյալներին, բայց ձևավորվում են դրանց հիման վրա՝ գործողության ընթացքում։ Երկրորդ կամ բարձր կարգի, սպեցիֆիկ մարդկային ընդունակությունների (ձայնային, երաժշտական, կոնստրուկտորական և այլն) զարգացման գործում բնածին նախադրյալները ոչ մի սպեցիֆիկ դեր չեն կատարում։ «Մարդու սպեցիֆիկ մարդկային ընդունակությունները,— նկատել է Ա. Ն. Լեոնտևը,— իսկական **նորագոյացություններ** են, որոնք ձևավորվում են նրա անհատական զարգացման մեջ, և ոչ թե այն բանի բացահայտումը, ձևափոխումն են, ինչ նրա մեջ դրված է ժառանգականությամբ» («Вопросы психо-



логии», 1960, № 1, стр. 10—11)։ Գիտնականի կարծիքով ինդիվիդը «մարդ է դառնում միայն շնորհիվ նրա կողմից մարդկային գործունեության յուրացման» («Вопросы психологии», 1968, № 5, стр. 10)։ Այսպիսով, ժխտվում են «սպեցիֆիկ մարդկային ընդունակությունների» ժառանգական նախադրյալները, դրանց ծագումը վերագրելով միայն հասարակական պայմաններին, հասարակական-պատմական փորձի յուրացմանը։

Քննադատելով Ա. Ն. Լեոնտևի տեսակետը, Ս. Լ. Ռուբինշտեյնը եզրակացրել է, որ չի կարելի «...մարդու ընդունակությունները մասնատել բնականի, բնածինի (կենսաբանականի) և բուն մարդկայինի՝ հասարակականի» («Вопросы психологии», 1960, № 3, стр. 7)։ Նման մոտեցումը նրա կարծիքով հավասարազոր է մարդու բնության երկակիության ընդունմանը, ըստ որի այն բաժանվում է խորթ ծագում ունեցող երկու մասերի։ Նորածնի հոգեկանի զարգացման ներքին պայմանները ներառում են կենսաբանական տվյալներ, բայց մարդու կենսաբանականը միջնորդված է սոցիալականով, ձևավորվել է վերջինիս ազդեցության ներքո։ Հետևաբար, մարդու հոգեկանի զարգացման ներքին պայմանները կենսաբանականի և սոցիալականի, բնածինի և հասարակականի միաձուլությունն են։

«Շատ բան այն ամենից, ինչ մենք համարում ենք սպեցիֆիկ մարդկային, ծնվելուց հետո մարդու կողմից ձեռք բերված,— գրել է ակադեմիկոս Պ. Կ. Անոխինը,— իրականում պարունակվում է մեր գենետիկայում» (Сбор. Ленинская теория отражения и современная наука, М., 1966, стр. 291)։ Վ. Պ. Էֆրոիմսոնը շեշտել է «գենոտիպի չափազանց էական դերը տարբեր տեսակի բարձր և ցածր օժտվածության դետերմինացիայում» (В. П. Эфроимсон, Введение в мед. генетику, М., 1968, стр. 6)։ «Ժառանգականության կոմպոնենտը,— գրել է նա մեկ այլ առիթով,— չափազանց կարևոր դեր է կատարում մարդու փոփոխականության, նրա անհատական առանձնահատկությունների ձևավորման գործում» (Сбор. Проблемы медицинской генетики, М., 1965, стр. 137)։ Անդրադառնալով մարդու մեջ կենսաբանականի և սոցիալականի հարաբերակցության հարցին, Ա. Ա. Նեյֆախը նկատել է. երկվորյակների հոգեկանի նմանությունը, ինչպես նաև սոցիալական նույն պայմաններում, միևնույն կոլեկտիվում մեծացած երեխաների հոգեկանի տարբերությունը վկայում են ժառանգական տվյալների կարևոր դերը անձնավորության ձևավորման գործում։ Մարդու քրոմոսոմներում հանճարեղության կամ հանցագործության գեների որոնումն անհեթեթություն է, բայց միանգամայն գիտական հիմք ունի այն պնդումը, թե բնածին և ժառանգական ինչ տվյալների հիման վրա է երեխան դառնում, ասենք, լավ երաժիշտ կամ մաթեմատիկոս («Литературная газета», 29 марта 1972 г.)։

Անձնավորությունը որոշակի հատկությունների մի բարդ ամբողջություն, համակարգ է, որտեղ առանձին հատկություններն այդ համակարգի կառուցվածքի հիմնական տարրերն են։ Անձնավորության հատկությունները պայմանականորեն միավորելով չորս հիմնական ենթակառուցվածքում, Կ. Կ. Պլատոնովը շեշտում է, որ դրանցից նույնիսկ այնպիսիները, որոնք չունեն բնածին տվյալներ, ինչպես օրինակ անձնավորության հետաքրքրությունները, ձգտումները, իդեալները, աշխարհայացքը, բարոյական և քաղաքական հայացքներն ու համոզմունքները, որոնց ամբողջությունը հոգեբանության մեջ նշվում է «անձնավորության ուղղվածություն» հասկացությամբ, արդյունք են մարդու կենսաբանորեն պայմանավորված շատ առանձնահատկությունների։ Այսպես, իդեալը պայմանավորված է բացառապես սոցիալականով։ Բայց իդեալի ձևավորումը հիմնվում է արդեն ձևավորված հետաքրքրությունների վրա, իսկ վերջիններիս հիմքում ընկած է կողմնորոշման ռեֆլեքսը, որը դրսևորվում է նաև կենդանիների մոտ։ Հետաքրքրությունը ձևավորվում է ուսուցման պրոցեսում, իսկ ուսուցումը պայմանավորված է կողմնորոշիչ գործունեությամբ։ Մարդու մեջ «գենետիկորեն պայմանավորված են և՛ անատոմոֆիզիոլոգիական, և՛ հոգեկան առանձնահատկությունների զարգացման կարողությունները, ընդ որում թե՛ մեկ և թե՛ մյուս առանձնահատկությունների փաստացի զարգացումը (**թեև տարբեր աստիճանով**) պայմանավորված է արտաքին, իսկ մարդու համար՝ ամենից

*չությունն է» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս,* Ընտիր երկեր 3 հատորով, *Ե., 1972, հ. 1, էջ 3)։ Մարքսիստական մեթոդաբանությունը սկզբունքորեն հաղթահարել է մարդու մասին ինչպես միակողմանի, զուտ սոցիոլոգիական կամ կենսաբանական, այնպես էլ բիոսոցիոլոգիական՝ մեխանիստական-դուալիստական ըմբռնումները։*

*Կենսաբանականը և սոցիալականը թեև մարդու մեջ բազմակողմանի փոխազդեցության և փոխներթափանցման բարդ պրոցես են, այստեղ որոշիչը սոցիալականն է։ ««Առանձնահատուկ անհատի» էությունը,— գրել է Կ. Մարքսը,— ոչ թե նրա մորուքը, արյունը, և ոչ էլ նրա աբստրակտ ֆիզիկական բնությունն է, այլ նրա* սոցիալական որակը» (К. Маркс, Ф. Энгельс, Соч., т. 1, стр. 242)։ *Սա է մարդու մասին մարքսիստական կոնցեպցիայի հիմնարար սկզբունքներից մեկը։*

*Հասարակական կյանքի պայմաններն ավելորդ են դարձնում մարդու կենսաբանական կատարելագործման անհրաժեշտությունը՝ նրա տեսակային կենսաբանական բնութագիրը, որակը փոխելու իմաստով։ Մարդը ոչ թե պասսիվորեն հարմարվում է շրջակա միջավայրի պայմաններին, այլ բնության օրենքների իմացության հիման վրա վերափոխում է դրանք՝ իր կենսաբանական-ֆիզիկական և հասարակական պահանջմունքներին համապատասխան։ Շրջակա միջավայրի բնական պայմանների փոփոխության, նրանց ազդեցության հետևանքով մարդու կենսաբանական կառուցվածքում կատարվող ֆունկցիոնալ փոփոխություններն առավելապես ադապտացիոն բնույթ ունեն, մնում են տվյալ անհատի գոյության սահմաններում։ Աշխատանքի գործիքների և համապատասխան սարքերի օգնությամբ մարդը փոխհատուցում է իր կենսաբանական-ֆիզիոլոգիական կառուցվածքի սահմանափակությունները և կատարելագործվում ու զարգանում է որպես հասարակական էակ։*

*Ի տարբերություն մյուս կենսաբանական տեսակների, գենետիկ ծրագրի հետ միասին մարդուն հատուկ է նաև սոցիալական ծրագիր։ Մարդկանց ցանկացած նոր սերնդին պատկանող անհատները անմիջապես հաջորդ սերնդին են փոխանցում ո՛չ միայն իրենց անհատական և տեսակային գենետիկ կառուցվածքի առանձնահատկությունները, այլև անձնական և կոլեկտիվ սոցիալական փորձը, հասարակության զարգացման նախորդ փուլերի հասումները նյութական, հոգևոր և սոցիալ-քաղաքական կյանքի բնագավառներում, որոնք ելակետ են դառնում մարդկության հետագա կատարելագործման և զարգացման համար, հանդիսանալով պատմական առաջընթացի անընդհատության հիմքը։*

*Տեսակային կենսաբանական կառուցվածքի որակական սահմաններում մարդու ներդաշնակ ֆիզիկական զարգացումը, կատարելությունը նրա էության, սոցիալական որակի զարգացման, կատարելագործման կենսաբանական հիմքն են։ Մարդու մասին կոմունիստական իդեալը՝ ֆիզիկական կատարելությունը և հոգեկան հարստությունը, ներդաշնակորեն մարմնավորող անձնավորությունն է։ Սակայն մարդու կատարելության չափանիշը ամենից առաջ նրա հոգևոր հարստությունն է, նրա էության, սոցիալական որակի կատարելությունը, որը ձևավորվում ու զարգանում է օբյեկտիվ իրականության, հասարակական կյանքի վերափոխման պրոցեսում։ Ուստի կատարելագործել մարդուն նշանակում է համակողմանի, ներդաշնակ զարգացած մարդու մասին կոմունիստական իդեալին համապատասխան փոխել նրա սոցիալական որակը, նրա պատկերացումները օբյեկտիվ իրականության մասին, հարստացնել նրա գիտելիքները գիտական իմացության հասումներով, ձևավորել կոմունիստական գաղափարական համոզմունք հասարակական կյանքի կազմակերպման, կյանքի իմաստի և նպատակի մասին։*

*Հասարակության արդի գիտատեխնիկական և կուլտուրական հասումները, մարդու սոցիալական զարգացման ողջ պատմությունը համոզիչ կերպով վկայում են, որ նրա տեսակային կենսաբանական-գենետիկական հիմքերը լիովին բավարար են որպես սոցիալական էակ անընդհատ զարգանալու և կատարելագործվելու համար։*

---

# ԺՈՒՌՆԱԼԻՍՏԻԿԱՅԻ ՀՐԱՏԱՊ ՊՐՈԲԼԵՄՆԵՐԸ

**Ա. Ս. ՍԻՄՈՆՅԱՆ**

Կուսակցության գաղափարախոսական աշխատանքի համակարգում առանձնահատուկ տեղ է գրավում ժուռնալիստիկան, մասնավորապես վերջինիս ծանր հրետանին՝ հրապարակախոսությունը։ Տպագիր խոսքի ներազդման յուրահատկությունների ու հնարավորությունների ուսումնասիրությունն այժմեական հրատապ խնդիրներից մեկն է։ Այս առումով ուշագրավ է Մոսկվայում հրապարակված ՍՍՀՄ ժուռնալիստների միության 1980 թվականի մայիսին կայացած պլենումի նյութերի ժողովածուն*։

Գիրքն ամենից առաջ շահեկան է նրանով, որ հրապարակախոսության մասին արտահայտվել են իրենք՝ հրապարակախոսները, որոնց փորձն ու նկատառումները պատշաճ արտացոլում են գտել այս ուշագրավ ժողովածուում։

Ճշմարիտ է ասված՝ տաղանդավոր, հրապարակախոսական երկը միաժամանակ և գեղարվեստական է, և՛ խոր գիտական։ Այդ է վկայում **Կոմունիստական կուսակցության մաֆեստը**՝ գիտական կոմունիզմի առաջին ծրագրային փաստաթուղթը։ Հիրավի, **Կապիտալի** շատ հատվածներ ունեն և՛ հրապարակախոսական, և՛ գեղարվեստական շունչ։

Վ. Ի. Լենինի տեսական ժառանգության մեջ բացահայտ դրսևորվել են նրա հրապարակախոսական ոգին, ժամանակի այրող պրոբլեմները։ Բոլշևիկյան մամուլը հիմնադրման օրից մինչև այսօր հրապարակախոսական կրքով մեկնաբանում է կուսակցության խոսքը, ծրագրային պրոբլեմներն ու խնդիրները։ Դրա վառ օրինակ է ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումների կենսագործման համակողմանի լուսաբանումը սովետական մամուլի էջերում, ինչպես նաև ինֆորմացիոն աղբյուրների մյուս միջոցներով։

Տակավին վիճում են, թե հրապարակախոսության ո՛ր ժանրն է առաջատարը, գլխավորը։ Նման տարբերակումը թերևս ճիշտ չէ, քանզի դրանց անհրաժեշտությունը պայմանավորվում է տվյալ ժամանակի թելադրանքով, իրադրության տրամաբանությամբ։

Հրապարակագիրը պետք է կարողանա խոսքի ուժով գրավել, համակել ընթերցողին, հասնել այն բանին, որ ընթերցողը մինչև վերջ կարդա նյութը։ Նա պետք է թափանցի մարդկանց ներաշխարհը, ապրի նրանց շահերով ու հետաքրքրություններով։ Դաստիարակչական առումով հրապարակախոսական ներազդեցությունը բազմակողմ է, բազմապիսի։

Հիշենք, որ թերթերում և ամսագրերում ժամանակին տեսական հոդվածներ էին նվիրվում «ՀամԿ(բ)Կ պատմության համառոտ կուրսի» ուսումնասիրմանն ու պրոպագանդմանը, և այդ առումով դրանք իրենց դրական դերը կատարել են։ Հետպատերազմյան տարիների մոտ երկու տասնամյակ հրապարակվող տեսական հոդվածների թեմատիկան հաճախ բխում էր բուհական պահանջներից կամ կուսակցական լուսավորության, առաջին հերթին մարքսիզմ-լենինիզմի երեկոյան համալսարանների ծրագրերից։ Հոդվածների հեղինակները մեծ մասամբ դասախոսներ էին, ուստի և շարադրանքում գերիշխում էին բացատրական ոճը, անառարկելիության միտումը։ Չնայած ընթերցողների կրթական մակարդակն այժմ զգալի չափով բարձրացել է, սակայն հեղինակները հիմնականում շարունակում են գրել նախկին ձևով։ Հարկ է նկատել, որ դեռևս քիչ են այն ժուռնալիստները, որոնք մասնագիտորեն զբաղվում են տեսության հարցերով և մասսայականացնում են մարքսիզմ-լենինիզմը պատշաճ ստեղծագործական մակարդակով։

Հրապարակախոսական գործը պահանջում է գիտելիքներ, գրածի անհրաժեշտ իմաստավորում, այն խարսխվում է իմացության ծառին, թափանցում դրա գաղտնարանները, մերժում

* Горизонты публицистики; Опыт и проблемы. Москва, «Мысль», 1981.

մակերեսայնությունը, մոտավորությունը: Հրապարակախոսական ծանրակշիռ գործ ստեղծելու համար հարկավոր է, որ հեղինակն ինքն իր հետ անկեղծ լինի և մտերմիկ զրուցի ընթերցողի հետ: Դա հնարավոր է միայն ներքին լարումով: Մարքսը նկատել է, որ գաղափարները, վերածվելով համոզմունքների, դևերի նման նվաճում են մեզ, և անհնար է դրանցից բաժանվել, մինչև չնեղքեն սեփական սիրտը (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 1, стр. 118):

Ժուռնալիստի համար սկզբունքային նշանակություն ունի նրա գաղափարական դիրքավորումը, հավատամքը: Համեմատաբար հեշտ է որոշել, թե ինչ և ինչպես գրել, սակայն առանց դիրքավորման անհնար է որևէ բան թղթին հանձնել. ունի՞ արդյոք ժուռնալիստն ասելիք, ինչո՞վ է նա դիմում մարդկանց, ի՞նչ է ընդունում, պաշտպանում, հաստատում, ի՞նչ է դատապարտում ու մերժում, ինչի՞ դեմ է պայքարում: Սովորական է դարձել կանոնին, ավանդականին, ընդունվածին չհակառակվելը: Մտքի ճիշտ ձևակերպումը տակավին չի կարելի համարել ներքին համոզմունքի դրսևորում: Քաղաքացիական արիությունը կուսակցականության հատկանիշ է, բոլշևիկյան վարքագիծ: Անտարբեր մարդը չի կարող ժուռնալիստ լինել: Ժուռնալիստը ապրում ու գործում է հանուն մարդու: Լրագրողը կոչված է հանդես գալու հասարակության անունից:

Գրքում տեղին է նշված, որ մեզ մոտ թույլ է զարգացած տեսական հրապարակախոսությունը: Խիստ անբավարար են մասսայականացվում բարոյագիտական գիտելիքները: Մինչդեռ լուսաբանման կարոտ պրոբլեմներից են՝ մարդու կյանքի նպատակը, նրա վերաբերմունքը աշխատանքի, հասարակական պարտքի հանդեպ, անձի արժանապատվության հարցերը, անձնականի ու հասարակականի փոխհարաբերությունը. դեռևս պատշաճ խորությամբ չեն լուսաբանվում կոմունիստների բարոյական վարքագծի հատկանիշները:

Հասարակական մեծ արժեք են ներկայացնում քաղաքատնտեսական այնպիսի պրոբլեմների մշակումը, ինչպիսին են՝ տնտեսության պլանային կազմակերպումը, հաշվառումն ու վերահսկողությունը, ըստ աշխատանքի բաշխումը, աշխատանքի խթանումը, անձնական պատասխանատվությունը, փոխօգնությունը աշխատանքում, սոցմրցության ձևերը, տնտեսական շինարարության փորձի քաղաքական վերլուծությունը: Գիտական կոմունիզմի պրոբլեմատիկան լուսաբանող հոդվածներում հարկ է պատշաճ տեղ հատկացնել զարգացած սոցիալիզմի կոնցեպցիայի համակողմանի մեկնաբանմանը:

Պատմական հոդվածներում հարկավոր է հանդես բերել կենդանի մարդուն՝ իր խոհերով և զգացմունքներով, հույզերի ողջ ներկապնակով: Անհրաժեշտ է առավել խոր բացահայտել գիտական կոմունիզմի հիմնադիրների հզոր աշխարհի գաղտնարանները, անհատական հակումներն ու նախասիրությունները: Ժամանակն է գիտական հիմնավորվածությամբ ներկայացնելու պրոլետարիատի առաջնորդների հեղափոխական գործունեության անձնական շարժառիթները, նրանց բոլորանվիրությունը մարդկության սոցիալական ու ազգային ազատագրմանը: Անշուշտ ընթերցող լայն զանգվածներին մեծապես կհետաքրքրի նաև մեր օրերի հեղափոխականների կերպարի հրապարակախոսական բնութագիրը, մարդիկ, որոնք լեգալ ու անլեգալ ծանր պայմաններում մաքառում են իմպերիալիստական ուժերի դեմ: Անհրաժեշտ է ժամանակակից երիտասարդին հոգեբանական մանրազնին վերլուծությամբ ներկայացնել կապիտալի աշխարհում սոցիալական արդարության համար պայքարող անվեհեր հեղափոխականների անձնական կյանքը, նկրտումներն ու իդեալները:

Ակներև է, որ աշխատանքի թեման մշտապես գտնվում է մամուլի տեսադաշտում, այդուհանդերձ տակավին չեն մշակվել գործի նկատմամբ ստեղծարար, կոմունիստական, անշահախնդիր վերաբերմունքի բարդ ու նրբին պրոբլեմները, անձնավորության ինքնահաստատման էվոլյուցիան: Առաջավոր, նախաձեռնող անհատներն իրենց գործելակերպով ու սոցիալիստական ապրելակերպով բարերար ազդեցություն ունեն մեր մարդկանց, հատկապես երիտասարդության վրա և պետք է արժանանան մամուլի ուշադրությանը: Նրանց բարոյական փորձի համաժողովրդական պրոպագանդան կարելի է ապահովել, հաղթահարելով այն տարանջատվածությունը, որ կա լրագրաամսագրային ու գիտական ժուռնալիստիկայի, գրական քննադատության ու գրողների հրապարակախոսության միջև: Այսօր մեր ոչ բոլոր գրողներն են հանդես գալիս մամուլում կամ ռադիոյով ու հեռուստատեսությամբ: Դեռևս շատ հրապարակումներ չեն գրախոսվում, մատնվում են լռության, որն անհարիր է լենինյան, բոլշևիկյան ժուռնալիստիկայի ավանդներին, երբեմն էլ մամուլի էջերում տպագրվում են պատմական փաստերի խեղաթյուր գնահատականներ:

Դասակարգային դիրքերից նահանջելու արտահայտություն է այն,— գրում է Ռ. Կոսոլապովը,— որ մտավորականության որոշ շրջաններում մոդա է դարձել իրենց նախնիների մեջ փնտրել ազնվական ծագումով անձնավորություններ: Կամ անվերապահորեն հայտարարել, թե իշխան Կուրբսկին ու Նիկոլայ առաջինը բարի հայրենասերներ են, իսկ Սալյերին չի թունավորել Մոցարտին:



Հրապարակախոսական նյութերի թեմաներ են կոլեկտիվիզմի ձևավորումը և պայքարը անհատապաշտության դեմ, խելամիտ պահանջմունքների մշակումը: Մամուլում պետք է ձաղկել առանձին մարդկանց փառատենչությունը, հոբելյանական արարողություններով հրապարակվելը: Մեր մամուլը մեծ ուշադրություն է նվիրում անհատի համակողմանի ու ներդաշնակ զարգացմանը, նոր մարդու կերպավորման հարցերին: Սակայն այդ թեմայի լուսաբանումը հաճախ լինում է միակողմանի, մոռացության են մատնվում անհատի ինքնակատարելագործվելու անձնական մղումները, կամային հատկությունները: Միշտ չէ, որ հեղինակներին հաջողվում է մարքս-լենինյան տեսության հիմնադրույթները միավորել հասարակական զարգացման արդի փորձի ընդհանրացման հետևությունների հետ: Հիրավի, սոցիալիստական սիստեմը սոսկ տնտեսական չէ. վերջինս սոցիալ-տնտեսական համակարգ է, որի առանցքը մարդն է: Ժողովածուի նյութերում մտահոգություն է արտահայտված, թե որոշ շրջաններում առկա է մանր արտադրությունը խոշորին հակադրելու միտում, որը մասամբ արտացոլվել է «գյուղական արձակում», գիտության մեջ, պրակտիկայում: Երբեմն ժամանակավոր դժվարությունները հաղթահարելիս հստակորեն չեն տարբերակվում պրոբլեմի լուծման տակտիկական ու ստրատեգիական ուղիները: Անհրաժեշտ է ուժեղացնել տեսության պրոպագանդումը, սիստեմատիկ ու մատչելի պարզաբանել կուսակցության գաղափարախոսական հրատապ պրոբլեմները, մասսայական պրոպագանդայի ու ինֆորմացիայի միջոցներով մշտապես անդրադառնալ այդ հարցերին, կատարելագործել նյութի մատուցման եղանակները:

Ժողովածուում ուսանելի նկատառումներ են զետեղված ինֆորմացիայի վերաբերյալ: Վերջինս ո՛չ միայն մարդու բանականության, այլև զգացմունքների վրա ներազդելու ամենագործուն և հզոր միջոցներից է: Ահա թե ինչու բոլոր ժամանակներում այն եղել է հասարակության ուշադրության առարկա:

Մամուլում ինֆորմացիան խարսխվում է ամուր գաղափարական հիմքի վրա: ՍՄԿԿ Կենտկոմի՝ «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» որոշման մեջ (1979 թ. ապրիլ) շեշտված է, որ անհրաժեշտ է բարձրացնել հրապարակվող նյութերի ինֆորմացիոն հագեցվածությունը: Այժմ ինֆորմացիան մեկնաբանական է, այն չի սահմանափակվում լոկ փաստերի հաղորդմամբ, այլ ձգտում է դրանք բացատրել, ներկայացնել փոխկապակցված փաստերով, հիմնավորել իրադարձություններից հանված հետևություններով: Ճշմարիտ է, որ մենք դեռևս չենք սովորել տաղանդավոր ու արտահայտիչ «հեռագրական ոճով» գրել, որին դեռ սովետական մամուլի արշալույսին կոչ էր անում Վ. Ի. Լենինը:

Պլենումի նյութերում իրավամբ պահանջվում է գաղափարական պայքար ծավալել ամենաբարձր մասնագիտական մակարդակով, համակողմանի ու հիմնավորապես բացահայտել մեր հակառակորդների գաղափարական սնանկությունը: Մենք արդար գործ ենք պաշտպանում, այս է ուժը մեր պրոպագանդայի, որը խարսխված է մարքս-լենինյան գիտության վրա: Արտասահմանի կյանքը լուսաբանելիս անհրաժեշտ է առավել ուշադրություն նվիրել փաստերի քննական վերլուծությանն ու իմաստավորմանը:

Ինֆորմացիայի ծավալն այժմ այնքան է ընդլայնվել, որ պահանջում է կուտակվածի հետևողական կարգավորում, տրամաբանական առնչությունների վերհանում, ինֆորմատիվ հաղորդումների սոցիալ-դասակարգային միտումների շեշտում:

Երկու աշխարհների պայքարի ներկա փուլում արդեն չի կարող լինել լրիվ վերադարձ սառը պատերազմի ժամանակներին, երբ գաղափարական կռիվը որոշ առումով վերացական էր, անհասցե, միշտ չէ, որ հաշվի էին առնվում ծագած հեռակա վիճաբանության հետևանքները: Այժմ հաճախակի մղվող գաղափարական մենամարտում պետք է շատ արագ խափանել հակառակորդի նկրտումները, գիտակցելով, որ ասվածը հասել է նպատակին: Վ. Ի. Լենինը չէր վախենում հակառակորդին ցույց տալ ամբողջովին, համակողմանի: Բարեխղճորեն մեջ բերելով ընդդիմախոսի փաստարկները, նա դրանց հակադրում էր իր առարկությունները, ընթերցողին համոզում, որ քննադատվող տեսակետը սխալ է, խոտելի: Ահա թե ինչու այնպես կարևոր է, որ ժուռնալիստ-միջազգայնագետը կատարելագործվի պոլեմիկայի արվեստում:

1980 թվականի մայիսի 24-ին «Комсомольская правда» թերթում, ծննդյան 75-ամյակի առիթով, Մ. Շոլոխովը գրել է. «Խոսել ընթերցողի հետ ազնվորեն, մարդկանց ասել ճշմարտությունը, երբեմն դաժան, բայց միշտ համարձակ: Ամրապնդել մարդկանց սրտերում հավատը ապագայի, սեփական ուժերի նկատմամբ... Լինել մարտիկ հանուն խաղաղության ամբողջ աշխարհում և քո խոսքով դաստիարակել այդպիսի մարտիկներ ամեն տեղ, ուր հասնում է այդ խոսքը»:

Լենինյան հրապարակախոսության անդիմադրելի ուժն այն է, որ դա հիմնված է կյանքի ռեալ փաստերի խոր իմացության վրա: Հասարակական իրադարձությունները արտացոլելով դիալեկտիկական զարգացման մեջ, Լենինը դրանք անխզելիորեն առնչում էր կոնկրետ պատմական փորձի հետ: Կյանքի փաստերն ու երևույթները նա երբեք չի օգտագործել սոսկ որպես իլյուստրացիա: Հարյուրավոր տարբեր, հաճախ հակասական փաստերից նա կարողանում էր ընտրել էականը, նշանակալին, առօրյա կյանքի իրադարձություններում վեր հանել նորը, կոմունիստականը և այդ հիման վրա անել խորագույն տեսական եզրակացություններ:

Բոլշևիկ հրապարակախոսներից Լենինն առաջինն էր, որ կարողացավ տեսնել շահագործումից ազատագրված աշխատանքի մարդու բնորոշ հատկանիշները: Հեղափոխության առաջին տարիներին աշխատանքի նկատմամբ մարդկանց վերաբերմունքի մասին Լենինը գրեց **Ինչպես կազմակերպել մրցությունը** հոդվածում: Աշխատավորության՝ կուլտուրային, գիտելիքներին հաղորդակցվելու ձգտման մասին առաջնորդը պատմեց իր հոդվածներում, ՌԿԵՄ III համագումարի ու լուսավորության աշխատողների պատգամավորների առջև ունեցած ելույթներում: Լենինյան տողերից հառնում է աշխատանքի մարդու, նրա ժամանակի դիմանկարը:

Վեհ գաղափարայնությունը, պատկերավորությունն ու գրական վարպետությունը բնորոշ են Լ. Ի. Բրեժնևի **Մալայա զեմլյա, Վերածնունդ, Խոպան, Հուշեր** գրքերին: Այս հուշագրերում սեղմ ու բովանդակալի բացահայտված է ժողովրդի, աշխատավոր մարդու վսեմ կերպարը: Հուշապատումը հրապարակախոսական վարպետության բացառիկ նմուշ է— թեմայի խորապես մտածված ընտրություն, նյութի ուսանելի գրական մշակում: Հեղինակի խոսքն անկեղծ է, ջերմ ու հոգեպարար, սրտագին ու առինքնող ճշմարտացիությամբ է արտահայտվում գործընկերների, մարդկանց մասին: Նկարագրված ժամանակը լի է փորձություններով ու հերոսական արարումներով, ուժերի գերմարդկային լարումով, արյամբ ու քրտինքով, տառապանքով ու հույսով, կոմունիստական գաղափարներին անմնացորդ նվիրվածությամբ: Հուշագրությունը պատմական լավատեսության, մեր ժողովրդի բարոյական կորովի, նրա հոգևոր կուլտուրայի վկայությունն է, սովետական հայրենասիրության ու սոցիալիստական ինտերնացիոնալիզմի մարմնավորումը:

Լ. Ի. Բրեժնևի հուշագրություններն այժմ հիրավի ամենակարդացվող գրքերից են աշխարհում, բազմիցս հրատարակվել են տարբեր լեզուներով: Այս վեհաշունչ ինքնակենսագրականում վերարտադրված են մեր կյանքի նշանակալի իրադարձությունները, որոնք խոր տպավորություն են գործում ո՛չ միայն սովետական մարդկանց վրա, այլև ջերմ արձագանք են գտնում հողագնդի տարբեր երկրների ընթերցողների լայն շրջաններում: Նոր կյանքի հաստատման ճշմարիտ պատումը համակում է բոլոր նրանց, ովքեր ցանկանում են ճանաչել սովետական մարդու բնավորությունն ու խառնվածքը, իմանալ նրա արիության ու հերոսության դրդապատճառները, մարդ, որն իր հայրենասիրական սխրանքներով Մեծ հայրենականի տարիներին և խաղաղ պայմաններում զարմանահրաշ մեծագործություններով հիացմունք է պատճառել համայն մարդկությանը:

Տակավին ոչ բոլոր երկրներում մարդիկ պատշաճ պատկերացում ունեն մեր կյանքի, ապրելակերպի վերաբերյալ, այն մասին, թե ինչպես ծնվեց, հասակ առավ բազմազգ սովետական պետությունը: Իրոք, օտարերկրացին, որն օժտված է ինքնուրույն դատողությամբ ու սթափ գիտակցությամբ, հուզվում է այն հարցը, թե սովետական մարդիկ որտեղից են ձեռք բերել ոգու ուժը, անկոտրում կամքը, ծանր փորձություններին դիմակայելու, տոկալու, աննախադեպ դժվարություններ հաղթահարելու ունակությունը: Պատասխան ստանալու համար նրանք դիմում են ամենահավաստի աղբյուրներին՝ մեր կուսակցության ու պետության ղեկավարի հուշագրություններին: Անվարան կարելի է ասել, որ Լ. Ի. Բրեժնևի ինքնակենսագրական պատումը բովանդակում է վիթխարի պատմական ու հոգևոր լիցք, անձնական ճակատագրի սահմաններից դուրս եկող շառավիղով: «Իմ կյանքի յուրաքանչյուր օրը,— արդարացիորեն նկատել է Լեոնիդ Իլյիչը,— անբաժանելի է այն գործերից, որոնցով ապրել և ապրում են մեր կոմունիստական կուսակցությունը, մեր սովետական երկիրը»:

Լ. Ի. Բրեժնևի հուշերի գլխավոր հերոսները սովետական ժողովուրդն է, կոմունիստական կուսակցությունը: Այս պատումը հեղինակի վերապրածն է, ստուգված ժամանակի, կյանքի փորձությունների ընթացքում: Մեծ է հավատարիմ լենինյանի ծառայությունը կուսակցության ու ժողովրդի կյանքում բարոյաքաղաքական առողջ մթնոլորտի ստեղծման գործում: Հոգատար վերաբերմունք մարդկանց հանդեպ, անհանդուրժողականություն ամեն տեսակ անարդարությունների նկատմամբ, վստահություն և պահանջկոտություն, գործարարություն և համարձակ որոնումներ՝ ահա այն ոճը, որը տիրապետում է մեր հասարակության մեջ: Սովետական մարդիկ լավ գիտեն, որ կուսակցությունն ամեն ինչ անում է ժողովրդի համար, հանուն նրա բարօրության, և ջերմորեն պաշտպանում են հարազատ կուսակցության քաղաքականությունը: Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը մեր ժողովրդի հեղափոխական ավանգարդն է, մեր դարաշրջանի միտքը, պատիվը, խիղճը:

Կուսակցության ականավոր գործիչները հրապարակախոսությունը համարում են գաղափարական հզոր զենք: Նրանց տպագիր խոսքին բնորոշ են խոր գաղափարայնությունը, հավատարմությունը կոմունիստական իդեալին, պատմական լավատեսությունը, համակող կենսասիրությունը, դատողությունների հստակությունն ու լայնախոհությունը, հասարակական երևույթների փաստարկված գնահատումը:

Հրապարակախոսության օրգանական մասն է գրական-գեղարվեստական քննադատությունը: Վերջինիս դերը հատկապես մեծացավ ՍՄԿԿ Կենտկոմի 1972 թ. հունվարի 21-ի գրական-գեղարվեստական քննադատության մասին հայտնի որոշումի հրապարակումից հետո: Սովետական գրական-գեղարվեստական քննադատությունն արդի թեմատիկայով ստեղծված արվեստի գործերում բացահայտում է ժողովրդական բնավորության էվոլյուցիան, նոր մարդու կերպավորման հոգեբանական հիմքերը: Արձակի, պոեզիայի, թատերգության լավագույն գործերի հաջողությունը քննադատությունը բացատրում է թեմայի հրատապությամբ, կերպարների պատմական ու գեղարվեստական հավաստիությամբ, սյուժետակոմպոզիցիոն լուծումների ու պատկերաարտահայտչական միջոցների ինքնատիպությամբ:

Գաղտնիք չէ, սակայն, որ շատ հոդվածներ, մեկնաբանություններ ու գրախոսականներ դեռևս չունեն պատշաճ տեսական-փիլիսոփայական ու գեղագիտական հիմնավորում: Քննադատությունը կոչված է խթանելու արվեստագետի գաղափարական մտահորիզոնի ընդլայնմանը, կատարելագործելու նրա վարպետությունը: Համակողմանի վերլուծել արդի գեղարվեստական պրոցեսի միտումներն ու օրինաչափությունները, ակտիվորեն նպաստել այն բանին, որ գեղարվեստական ստեղծագործության մեջ տիրապետողը լինեն կուսակցականությունն ու ժողովրդայնությունը, բացահայտել սոցիալիստական ազգերի ազգային կուլտուրաների մերձեցման ու փոխհարստացման օբյեկտիվ պրոցեսը, մարդկանց դաստիարակել սովետական հայրենասիրության ու պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով, հարձակողական պայքար մղել ռեակցիոն տեսությունների, գեղագիտական խորթ ուղղությունների դեմ: Հարկ է բացահայտել արվեստի կոնկրետ ստեղծագործությունների տեղն ու դերը սովետական մարդկանց կոմունիստական աշխարհայացքի կերպավորման, նրանց քաղաքացիական ու բարոյական վեհ հատկանիշներով օժտելու գործում:

Տակավին պատահում է, ասված է գրքում (էջ 56), որ գրել միայն ճշմարտության մասին արդարացի պահանջն ընկալվում է իբրև կյանքը դռան ճեղքից դիտելու, մամուլի էջերը ընտանեկան անհաջողություններով ու հոգսերով, քաղքենիական բամբասանքով լցնելու կոչ. նման մտայնության դեպքում արվեստագետին սպասում են ստեղծագործական անհաջողություն, ճիշտ դիրքավորումից շեղվելու միտում:

Տեղին է շեշտում Ե. Ռյաբչիկովը, որ քննադատության չի դիմանում այն կարծիքը, իբր պարբերական մամուլում, մասնավորապես օրաթերթում, պետք չեն ակնարկն ու պրոպագանդիստական հոդվածը: Պրակտիկան հակառակն է վկայում. լավ հոդվածն ու ակնարկը ջերմ ընդունելություն են գտնում հասարակության լայն շրջաններում: Հեռուստատեսության դարում, որը պատմում է ցուցադրելով, ներկայացնելով կոնկրետ ընկալելի փաստեր, դժվարանում ու բարդանում է թերթի, ամսագրի կամ ռադիոյի աշխատանքը:

Հետևաբար ժուռնալիստից պահանջվում է հավաստիության, իրականության մեջ թափանցելու և ներկայացնելու այլ մակարդակ: Հայտնի է, որ շատ ակնարկագիրներ հրապուրվում են գեղարվեստական հնարանքներով, և երբեմն սյուժեն շատ է հեռանում փաստական աղբյուրից: Անշուշտ, նման ակնարկը չի հրապուրի ընթերցողին: Ասում են, թե անհրաժեշտ է ակնարկի փոխարեն զարգացնել ռեպորտաժը, կամ ակնարկի տեղը ոչ թե թերթն է, այլ ժանրերը: Նման պնդումներն անհիմն են: Ռեպորտաժը, իրոք, գրվում է իրադարձությունների անմիջական տպավորության ներքո: Եթե լրագրողը կարողանում է սովորականում տեսնել անսովորը, առօրեականում՝ հերոսականը, վերհանել աշխատող մարդու բնավորությունը, այսինքն՝ եթե ասելիք ունի, ապա ժանրային սահմանափակումները չեն կարող արգելք հանդիսանալ:

Սովետական մարդկանց անող հոգևոր մակարդակը ժուռնալիստներից պահանջում է գիտելիքների խորացում, բարձր կուլտուրա, սոցիալական նոր երևույթների, միտումների վերլուծություն: Դրա համար լրագրողը պետք է անընդհատ կատարելագործվի, հմտանա, կարողանա ինչպես հարկն է օգտագործել ու վերլուծել վիճակագրական տվյալները, մշակել և ընդհանրացնել սոցիալական հետազոտությունները, փաստաթղթերը, ականատես մասնակիցների վկայությունները:

Եթե ժուռնալիստը չի կարողանում պատշաճ

խորությամբ վերլուծել արդի իրականության երևույթները, նա անկարող է տեսնելու մեր հասարակության զարգացման դինամիզմը: Նման պայմաններում երևան են գալիս հոդվածներ, որտեղ ճիշտ տեսական եզրակացությունները, կտրվելով այսօրվա իրականության փաստերից, վերածվում են ընդհանուր դատողությունների: Ցավալի է, որ հաճախ այդպիսի հոդվածներում առավելապես համոզում են ցիտատները: Ընթերցողներին նման շարադրանքում գրավում են ոչ թե հեղինակների փաստարկումները, այլ հիշատակված մեջբերումները: Անշուշտ, պրոֆեսիոնալիզմի, վարպետության մակարդակի բարձրացումը դժվար ու բարդ գործ է: Սակայն առանց դրա անհնար է ստեղծել բարձրորակ հոդվածներ ու ակնարկներ:

Հրապարակախոսությունը, վերարտադրելով այժմեականության պատմությունը, ռեալ արդյունքի է հասնում միայն այն դեպքում, եթե փոխադարձ կապի մեջ է լինում, մի կողմից՝ քաղաքականության ու գաղափարախոսության, մյուս կողմից՝ հասարակական հոգեբանության; մասսայական գիտակցության հետ: Հրապարակախոսության գումարելիներն են՝ բարձր գաղափարաքաղաքական մակարդակը, վերլուծության խորությունը, ինֆորմատիվ հագեցվածությունը՝ զուգակցված պատկերավոր շարադրանքի, վառ արտահայտչականության հետ:

Հրապարակախոսությունը սոցիալական հետազոտման մեթոդները սինթեզում է իրականության գեղարվեստական պատկերման հետ: Անշուշտ, երբ պատշաճորեն չեն կիրառվում գեղարվեստական հնարանքն ու արտահայտչամիջոցները, նվազում է հրապարակախոսական գործի ներազդման արդյունավետությունը:

Իրողություն է, սակայն, որ արդի սովետական ժուռնալիստիկային բնորոշ են վերլուծական խորությունը, արծարծվող սոցիալական պրոբլեմների մասշտաբայնությունը, ակտիվ միջամտությունը կոնֆլիկտային իրավիճակներին: Մամուլում հրապարակվող նյութերը պետք է տոգորված լինեն քաղաքացիական պաթոսով, արծարծվող խնդիրների հրատապությամբ, արտադրատնտեսական ու բարոյահոգեբանական պրոբլեմատիկայով:

Ժուռնալիստական արվեստի կատարելագործումն առաջին հերթին պայմանավորվում է մամուլի կուսակցական ղեկավարման արդյունավետությամբ, սոցիալական կառավարման այն խնդիրների մասշտաբով ու բնույթով, որոնք կուսակցությունը լուծում է մասսայական ինֆորմացիայի ու պրոպագանդայի միջոցներով, հրապարակախոսության օգնությամբ:

Հրապարակախոսության ներգործունությունն զգալի չափով պայմանավորվում է ստեղծագործության գաղափարաքաղաքական բովանդակության ու ձևի ներդաշնակությամբ, որը նշանակում է հիմնավորված փաստարկման, արտահայտչաձևերի օպտիմալ համակարգի ընտրում, ոճի ու կոմպոզիցիայի, ոճի, գրելաձևի, հարուստ բառապաշարի օգտագործում:

Այսօր օգնել սոցիալիստական մրցության կազմակերպմանը, նշանակում է լինել ոչ այնքան ինֆորմատոր, որքան հետազոտող: Բացահայտել իրոք շատերի համար ուսանելի առաջավոր փորձը անհնար է առանց թափանցելու դրա էության մեջ, այն բանում, թե տնտեսական ինչպիսի՛ մեթոդներով է ստացվել որոշակի արդյունքը: Այստեղ է, որ երևում է շտամպի վերջը: Հաճախ բարձր տեխնիկատնտեսական հասումներով ոգևորված, մոռացվում է գլխավորը՝ դրանց ստեղծողը՝ մարդը: Մամուլի էջերում դեռևս տեղ են գտնում աշխատանքային կոլեկտիվների կյանքի միակողմանի ու պարզունակ նկարագրություն, վերլուծություն: Մամուլի ուժը մասսաների հետ կապի մեջ է: Վերջինիս ամրապնդման երաշխիքը ընթերցողների սոցիալական կազմի ուսումնասիրումն է, տպագիր պրոպագանդայի առավել հստակ չափանիշների կիրառումը:

Այս փոթորկալի, դինամիկ աշխարհում մարդու հոգևոր ուժի ու կայունության գրավականն ու հուսալիությունը նրա գաղափարական հասունությունն է, խիղճը: Համոզում են ոչ թե խոսքերը, այլ իրողությունները, մարդը մշտապես ավածը համեմատում է տեսածի հետ: Գիտելիքը վերածվում է համոզման, երբ այն ճիշտ է արտահայտում աշխատավոր զանգվածների շահերը: Տեսական գիտելիքների պրոպագանդայում անհրաժեշտ է շեշտել մեր կուսակցության գաղափարների համապատասխանությունը լայն զանգվածների արմատական շահերին: Հրապարակախոսի համար բավական չէ հաստատել, նույնիսկ ապացուցել որոշակի ճշմարտություն: Նա պետք է կարողանա այնպես անել, որ հաղորդվող նյութը բեկվի մարդու մեջ, անձնավորվի, դառնա համոզմունք: Համոզմունքում գիտելիքը համաձուլվում է մարդու կամքի հետ: Համոզմունքներն այնպիսի գիտելիքներ են, որոնք լիցքավորում են գործունեության դրդապատճառների էությունը, ազդում մտածողության ու գործողության միտումների վրա, պայմանավորում անձնավորության արարքներն ու վարքագիծը: Կոմունիստական գաղափարախոսության ուժն այն է, որ դա ճշմարտացի է արտահայտում աշխատավոր հասարակության մեծամասնության շահերը:

Հրապարակախոսությունն օգնում է ժողովրդին՝ հստակ ըմբռնելու կյանքի իմաստը,



նըպաստում հոգևոր նոր արժույթների խոր ըմբռնմանը: Սոցիալիստական ապրելակերպի պրոպագանդման պրոցեսում հրապարակախոսությունն արտացոլում ու հաստատում է սովետական կենսաձևի հատկանիշները, պայքարում դրանց հակոտնյաների դեմ, մշակում նոր հոգևոր արժույթների չափանիշներ:

Այս առումով հետաքրքրական և ուսանելի է սովետական ճանաչված փիլիսոփա, ակադեմիկոս Բ. Մ. Կեդրովի պատասխանը ի՞նչ է նշանակում լինել կուլտուրական մարդ հարցին. կարող է մարդը հասած լինել որոշակի դիրքի, ունենալ ծառայություններ, բայց հասարակությունից վերցնել շատ ավելին, քան տալիս է. այդպիսին կուլտուրական մարդ համարվել չի կարող: Կարելի է և՛ նման կրթություն չունենալ, և՛ նման դիրքի չհասնել, սակայն հասարակությանը տալ ավելին, քան վերցնում ես: Եվ հենց այդ է, ըստ իս, կուլտուրականության և այդ առումով իսկ քաղաքացիականության չափանիշը:

Ահա նման մարդը պետք է դառնա հրապարակախոսության մեջ այժմ արմատավորված այնպիսի լուրջ ժանրերի հերոս, ինչպիսին են սոցիալ-տնտեսական ակնարկը, ակնարկ-հետազոտությունը, սոցիոլոգիական հոդվածը, սոցիալական դիմանկարը: Հարկավոր է միայն կյանքի նկատմամբ դրսևորել ակտիվ, հետազոտական մոտեցում, ցուցաբերել ստեղծագործական հնարամտություն ու վարպետություն, իսկ նման հերոսներ կգտնվեն:

Ցավոք, մեր ժամանակակցի ամբողջական կերպարը հազվադեպ է հրապարակախոսության մեջ: Մարդու խառնվածքի խոր ուսումնասիրումը չի դարձել նորմ, բավարար չափով մշակված չեն այդ բարդ էակի ներաշխարհը թափանցելու ուղիները: Բարդանում են կապը և փոխազդեցությունը ժողովրդի բարեկեցության հետագա բարձրացման և անհատի առաջընթացի զարգացման միջև: Այսօր, իրոք, դժվար է պատկերացնել սովետական մարդուն աշխատանքային գործունեությունից դուրս: «Մեր թերթերի բնույթի մասին» հոդվածում Վ. Ի. Լենինը ժուռնալիստներից, սովետական մամուլից պահանջում էր մասսաներին դաստիարակել կյանքի բոլոր բնագավառներից վերցրած կենդանի, կոնկրետ օրինակներով, առանձնակի ուշադրություն դարձնել, թե ինչպես բանվորական ու գյուղացիական մասսան իր առօրյա աշխատանքում գործով է կառուցում նորը: Երբ հրապարակախոսի ստեղծագործությունը հասարակական արձագանք է գտնում, երբ դրանից ելնելով պետական մարմինները որոշում են ընդունում, նշանակում է հեղինակը հաջողության է հասել: Հանրահայտ է Մարիետա Շահինյանի Հայրենական մեծ պատերազմից հետո Ուրալում կառուցվող երկաթուղուն նվիրված ակնարկաշարի ստեղծման պատմությունը, որի մասին կարդում ենք «Ժուռնալիստի ակտիվ դիրքորոշումը» ելույթում:

«Իզվեստիայի» հնագույն աշխատակցուհուն՝ Մարիետա Շահինյանին, խնդրեցին ոգեշունչ ակնարկներ գրել Ուրալում կառուցվող երկաթուղու մասին: Այն ժամանակ, երբ սկսվեց ծավալուն վերակառուցումը, կարևոր էր ժողովրդին ցույց տալ մեծ կառույցը, որը կարող էր դառնալ հաղթանակից հետո խաղաղ ստեղծագործ աշխատանքի խորհրդանիշ: Ճանաչված գրողն իրեն հատուկ խանդավառությամբ գործի անցավ: Երկաթուղու կառուցման նախագիծն արդեն քննարկել էին մասնագետները, և սովետական կառավարությունը հաստատել էր: Կարծես ակնարկագրի համար նախապատրաստական աշխատանքի մեծ մասն արդեն արված էր. նրա տրամադրության տակ էր ստվարահատոր նախագիծը, առկա էին նաև պատմական ծանուցագրեր, տեղանքի նկարագրություններ, կային համեմատական նկարագրություններ մեր և արտասահմանյան նման ուրիշ կառույցների: Ինչպես հարկն է ծանոթանալով այդ բոլոր նյութերին՝ գրողը ճանապարհ ընկավ ապագա ուղու ողջ երկայնքով: Մի քանի շաբաթ նա խմբագրությունում չերևաց, գործընկերներն սկսեցին անհանգստանալ իրենց խելահեղ հատուկ թղթակցի ճակատագրով, և ահա երևաց նա՝ զայրացած, հուզված:

— Ես չեմ կարող ոչ մի ոգեշունչ ակնարկ գրել,— ասաց Շահինյանը,— նախագիծը սխալ է, վատ, ամեն ինչ պետք է փոխել: Հարկավոր է գրել խիստ քննադատական ակնարկներ...

Լինելով տեղում՝ Շահինյանը հանգեց այն եզրակացության, որ նախատեսված ճանապարհի կառուցման դեպքում կլուծվի սոսկ տրանսպորտային խնդիրը— փոխադրամիջոցները կանցնեն կարճ ճանապարհով՝ մի կողմ թողնելով ժողովրդական տնտեսության համար հեռանկարային շրջանները. այն բարենպաստ ազդեցություն չի ունենա բնական գանձերով հարուստ այդ շրջանների էկոնոմիկայի վրա: Կարելի է պատկերացնել խմբագրության աշխատակիցների տրամադրությունը, որոնք հասկանում էին, թե որքան բարդ ու ծանր խնդիր է հանդես գալ կառավարության կողմից հաստատված նախագծի դեմ: Իր անկոտրում կամքով Շահինյանը հասավ այն բանին, որ սովետական կառավարությունը քննարկեց գրող-ժուռնալիստի առարկությունները, համաձայնեց Շահինյանի եզրակացությունների հետ, հանձնարարվեց մշակել ուրիշ նախագիծ, հե-

տագայում ըստ դրա էլ ճանապարհը կառուցվեց:

Ուսանելի է սովետական ականավոր ժուռնալիստ Միխայիլ Կոլցովի ստեղծագործական կյանքը. մարդկանց խորապես ճանաչելու նպատակով նա աշխատել է մերթ որպես տաքսու վարորդ, գրադարանավար, օդաչու, մե՛րթ տեղեկանքի բյուրոյի հերթապահ:

Հասարակական մեծ արձագանքի են արժանացել «Պրավդայի» քաղաքական մեկնաբան Յուրի Ժուկովի հեռուստատեսային ելույթները: Դա բացատրվում է ո՛չ միայն հրապարակախոսի տաղանդով, վարպետությամբ, հանրագիտարանային գիտելիքներով, այլև առաջին հերթին բազմաթիվ ունկնդիրների սուր, այրող հարցերին կուսակցական հստակ դիրքերից բխող պատասխաններով: Խոսելիս նա երբեք չի շրջանցում բարդ հարցերը, դժվարությունները, թույլ տրված սխալները, չի խուսանավում, խոսում է շիտակ, բայց համատով: Ծարդրանքի պարզությունն ու հստակությունը, ամենաբարդ հարցերի մասին մատչելի խոսելու կարողությունը, անկեղծությունը, պատումի ժողովրդայնությունը նրա ամեն մի ելույթ վերածում են իրադարձության, որին անհամբեր սպասում են սովետական ու արտասահմանյան հեռուստադիտողները:

Հրապարակախոսի դերը ո՛չ միայն կուսակցության քաղաքականության պրոպագանդումն է, այլև օգնությունը կուսակցությանը՝ հիմնավորելու այդ քաղաքականությունը: Հրապարակախոսը կոչված է նկատելու հասարակական բարդ ոլորտներում ծնվող երևույթները, զգալու դրանց զարգացման միտումները և հասարակայնության ուշադրությունը սևեռելու դրանց լուծման վրա:

Այժմ էական տեղաշարժեր են կատարվում ո՛չ միայն տնտեսական ու սոցիալ-քաղաքական ոլորտներում, այլև հասարակության հոգևոր կյանքում, այրելակերպում: Գաղափարական աշխատանքում պետք է հաշվի առնվի սովետական մարդկանց կրթության ու կուլտուրայի հարաճուն մակարդակը, երկրում ու աշխարհում տեղի ունեցող իրադարձություններին նրանց իրազեկությունը:

**Հրապարակախոսության հորիզոնները** գրքում իրենց արժանի տեղն են գրավել սովետական այնպիսի ճանաչված ու հարգված ժուռնալիստներ, որպիսիք են՝ Կոնստանտին Սիմոնովը, Բորիս Պոլևոյը, Սերգեյ Բորզենկոն, Վալենտին Օվեչկինը, Վասիլի Պեսկովը, Անատոլի Ագրանովսկին, Իլյա Ծատուռովսկին և շատ ուրիշներ...

Լիովին համամիտ ենք գրքում զետեղված հիմնական զեկուցման եզրակացություններին: Հիրավի, երիցս ճշմարիտ է «Կոմունիստ» ամսագրի գլխավոր խմբագիր Ռ. Ի. Կոսոլապովը՝ նշելով արդի ժուռնալիստիկայի զարգացման երեք կարևոր ուղիներ— ստեղծագործական միությունների ներս համագործակցություն, հրապարակախոսական լավագույն ընտեղծագործությունների ծավալուն հրատարակություն, անդուլ հոգատարություն կուսակցության հավատարիմ զինվորների՝ հրապարակախոսների, ուսուցման ու դաստիարակության նկատմամբ:

---



# ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅԱՆ ԲԱՐԵՐԱՐ ԱԶԴԵՑՈՒԹՅՈՒՆԸ

**Ս. Գ. ԳՐԻԳՈՐՅԱՆ**
ՀԿԿ Ախուրյանի շրջկոմի կազմբաժնի վարիչ

*ՈՒՇ ԱՇՈՒՆ ԷՐ: Ձմեռնամուտ: Դրսում ցուրտ էր: Բայց նրանք ինչ-որ տաք էին զգում: Մեքենայի ապակիներից մեկը կիսաբաց էր: Երկուսով էին: Լուռ, իրենց մտքերի հետ: Վերադառնում էին կուսակցության շրջանային կազմակերպության կոնֆերանսից:*

*Տարին ավարտվում էր: Ավարտվում էր նաև տասներորդ հնգամյակը: Մարդիկ բաժանվում էին անցնող տարվանից ու հնգամյակից: Բաժանվում էին տարբեր տրամադրությամբ: Շատերը՝ հպարտ ու պարզ ճակատով: Իսկ ոմանք՝ պարտք ունեցողի պես: Ինչպես, օրինակ, իրենք, իրենց սովխոզի մարդիկ: Դե, ի՞նչ տրամադրություն պիտի ունենային: Քննադատությունը, որքան էլ տեղին, քաղցր հաց չէ: Իրենց խիստ էին քննադատել: Եվ՝ ոչ անտեղի: Իսկ ինչպե՞ս խիստ խոսք չասեին: Չէ՛ որ շատ էին չարված գործերը: Ցուցանիշները բոլորովին գոհացուցիչ չէին: Հացահատիկի միջին բերքը տասներորդ հնգամյակի տարիներին կազմել էր 25 ցենտներ, շրջանի միջինից մոտ 10 ցենտներով պակաս: Թերակատարվել էին նաև բանջարեղենի և կարտոֆիլի արտադրության ու վաճառքի առաջադրանքները: Անասնապահությունը չէր ապահովվել առատ, բազմատեսակ կերով: Իսկ առանց կերի լավ արդյունք լինել չէր կարող: Ցածր էր կովերի կաթնատվությունը: 100 կովից 68 հորթ էր ստացվել: Բանն նման չէր և ոչխարաբուծության վիճակը: Բրդի արտադրության հնգամյա պլանը թերակատարվել էր 16 ցենտներով: 100 մաքիից 74 գառ էր ստացվել:*

*Ինչո՞ւ էին գործերը վատ ընթանում: Ի՞նչ էր պատահել: Իրո՞ք տնտեսությունում չկային հնարավորություններ ու ռեզերվներ: Կային: Եվ՝ շատ: Չէ՛ որ դեռ ոչ հեռու անցյալում Մայիսյանի սովխոզը առաջավոր տնտեսություն էր Ախուրյանի շրջանում, շատ ուսանելի փորձ ուներ:*

*Իրենց հարցին իրենք էլ պատասխան էին տալիս: Տնտեսությունը, ինչպես իր հարևանները, բերրի հողեր ունի: Ջրանցքը անցնում է գյուղի միջով: Այստեղ մի ժամանակ ոչ միայն հացահատիկի ու բանջարեղենի, այլև բազմամյա խոտաբույսերի և հատկապես եգիպտացորենի ռեկորդային բերք էր աճում: Կերն առատ էր, անասունների մթերատվությունը՝ բարձր: Շրջանում միշտ մատնացույց էին անում իրենց ֆերմաները:*

*Եվ նորից նույն հարցը՝ ի՞նչ էր պատահել: Եվ որքան էլ կրկնում էին հարցը, հանգում էին մի եզրակացության. կոլեկտիվում թուլացել է աշխատանքային ու կատարողական կարգապահությունը, ցածր է գյուղատնտեսական արտադրության կազմակերպման ու ղեկավարման մակարդակը: Վերջին մի քանի տարում սովխոզում հինգ դիրեկտոր է փոխվել, բայց արտադրության*

ուշադրություն չի նվիրվում թռչնաբուծության և խոզաբուծության զարգացմանը, հետևողական աշխատանք չի տարվում տոհմային գործի արմատական բարելավման, սեփական հոտի վերարտադրության կազմակերպման, անկումների ու հարկադիր մորթի կրճատման ասպարեզում։

Գործարար քննադատություն եղավ նաև սկզբնական կուսկազմակերպությունների այն ժողովներում, որտեղ քննարկվեցին շրջկոմի պլենումի և շրջանային կոնֆերանսի արդյունքները։ Լուրջ խոսակցություն ծավալվեց հատկապես կոլտնտեսային և սովխոզային կուսկազմակերպություններում։ Քննադատությունը ավելի ու տալիս է իր դրական արդյունքը։ Շրջանը անասնապահության բնագավառում տասներորդ հնգամյակը փակեց ժամկետից երեք ամիս շուտ և բարձր ցուցանիշներով։ Գոհացուցիչ են նաև 1981-ի արդյունքները։ Կաթի վաճառքի պլանը կատարվեց 111, մսինը՝ 103, ձվինը՝ 115, բրդինը՝ 121 տոկոսով։

Շրջանային կոմիտեն հանրապետության գյուղմինիստրության հետ մշակել ու իրականացնում է մի շարք միջոցառումներ՝ հոտի ընդլայնված վերարտադրություն կազմակերպելու համար։ Խնդիր է դրված հանրային նախրում կովերի տեսակարար կշիռը հասցնել նախ 36—38, իսկ հետագայում՝ 40—45 տոկոսի։ Մինչև հնգամյակի վերջը արդեն ոչ մի ցեղական անասուն չի ներմուծվի դրսից։ Մենք կունենանք մեր բազան և նույնիսկ հնարավորություն կստանանք ցեղական անասուններ վաճառել այլ շրջանների։ Լուրջ տեղաշարժեր են կատարվել խոզաբուծության բնագավառում։ Մոտ 400-ով ավելացել է խոզերի գլխաքանակը, կրկնակի անգամ՝ խոճկորների ստացումը։ Զգալիորեն աճել են նաև խոզի մսի արտադրությունն ու վաճառքը։

Անասնապահությունը Ախուրյանի շրջանում վերածվում է արտադրության բարձր կուլտուրա ունեցող ճյուղի։ Շրջանում սկսվել ու ծավալվում է «Բարձր արդյունավետության և օրինակելի ֆերմայի համար» շարժումը։ Այն արդեն տալիս է իր լավ արդյունքը։ Վերջին ժամանակներս շահագործման են հանձնվել 800-ական գլուխ կովի համար նախատեսված կաթնային համալիրներ Ոսկեհասկ, Արևիկ, Բայանդուր գյուղերի տնտեսություններում։ Այդպիսիք կառուցվում են Մայիսյանում, Աղատանում, Հովունիում, Հայկավանում։ Անասնապահների համար ստեղծվում են աշխատանքի ու հանգստի լավագույն պայմաններ։ Մեքենայացվում են աշխատատար պրոցեսները, կառուցվել ու կառուցվում են անասնապահի՝ ճաշակով կահավորված հանգստի սենյակներ։

Կոմունիստների, կոլեկտիվի յուրաքանչյուր անդամի արտադրական և քաղաքական ակտիվության բարձրացման գործում վճռական է քննադատական դիտողությունների ու առաջարկությունների կենսագործման դերը։ Դա հզոր լծակ է արդյունավետության և որակի համար մղվող պայքարում։ Ինչպես շրջանային կոմիտեում, այնպես էլ սկզբնական կուսկազմակերպություններում կանոնավոր կերպով հաշվի են առնվում կոմունիստների քննադատական դիտողություններն ու առաջարկությունները, ձեռնարկվում անհրաժեշտ միջոցներ՝ դրանց ընթացք տալու, լուծելու համար։ Իսկ դա շատ կարևոր է. յուրաքանչյուր կոմունիստ պետք է զգա իր մասնակցությունը ընդհանուր գործին, վստահ լինի այն բանում, որ իր կարծիքը, իր ձայնը կլսվի, հաշվի կառնվի։

Ախուրիկի և Երազգավորսի սովխոզային կուսկազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում կոմունիստները քննադատական խոսք էին ասել այն մասին, որ ոռոգման լարված շրջանում իրենց տնտեսությունները Աջափնյա ջրանցքից կանոնավոր ջուր չեն ստանում, դանքերը ոռոգել անհնար է։ Դիտողությունը տեղին էր։ Որոշվեց մեծացնել Ախուրիկի ջրհան կայանի հզորությունը այնքան, որ երկու սովխոզներն էլ պահանջվող քանակությամբ ոռոգման ջուր ստանան։ Այդ աշխատանքներն արդեն սկսվել են։ Մինչև ոռոգման սեզոնի սկիզբը ջրհան կայանը լրիվ պատրաստ կլինի։

Երբ կոլեկտիվում գործերը լավ են ընթանում, կոմունիստն անկեղծորեն ուրախանում է, հպարտանում։ Չէ՛ որ ինքն էլ բաժին ունի այդ հաջողություններում։ Իսկ եթե աշխատանքում կան թերություններ, հուզող հարցեր, չլուծված խնդիրներ, նա լրջորեն անհանգստանում է, փորձում պարզել պատճառները։



Եվ երբ ամեն ինչ կշռադատում է, հանդես է գալիս օգտակար առաջարկություններով, դիտողություններով։

«Մենք չպիտի անտարբեր անցնենք այն փաստի կողքով, որ վերջին տարիներին, գետնաջրերի մակարդակի բարձրացման հետևանքով, շրջանում շուրջ 1.000 հեկտար վարելահողեր ճահճակալել են։ Այդ բանն ավելի շատ զգացվում է մեր գյուղում։ Իսկ մեր ունեցած հողերն առանց այդ էլ շատ չեն»։ Ղարիբջանյանի կոլտնտեսային կուսկազմակերպության անդամ Աղատ Համբարձումյանի այս խոսքերը չմնացին որպես ձայն բարբառո հանապատի։ Հարցն անհրաժեշտ լուծում ստացավ։ Միայն Ղարիբջանյանում արդեն չորացվել և շրջանառության մեջ է դրվել 300 հեկտար վարելահող։ Չորացման աշխատանքները շարունակվում են։

Կոմունիստի համար իր կարծիքը հայտնելու, առաջարկություն անելու, թերությունները քննադատելու լավ ամբիոն է կուսակցական ժողովը, մասնավորապես հաշվետու-ընտրականը։ Ահա ինչու մշտապես լուրջ ուշադրություն է նվիրվում ժողովների լավ նախապատրաստմանն ու անցկացմանը։ Մեր շրջանում վերջին հաշվետու-ընտրական ժողովներին կոմունիստների մասնակցությունը կազմեց ավելի քան 98 տոկոս։ Հաշվետվությունների շուրջը ծավալված մտքերի փոխանակությանը մասնակցեց ժողովականների 35 տոկոսը։ Նրանք հանդես եկան մի շարք արժեքավոր դիտողություններով ու առաջարկություններով։ Դրանցից 12-ը վերաբերում է հանրապետական, իսկ 163-ը՝ տեղական կազմակերպություններին։ Կոմունիստների դիտողությունների ու առաջարկությունների մեծ մասին արդեն ընթացք է տրվել։

Կոմունիստների քննադատական դիտողությունների և առաջարկությունների կենսագործման շնորհիվ է, որ այժմ շրջանում լայն ծավալ են ստացել շինարարական ու բարեկարգման աշխատանքները։ Վերջին տարիներին Արևիկ, Մարմաշեն, Հայկավան, Մայիսյան, Ջաջուռ և Այգաբաց գյուղերում կառուցվել ու շահագործման են հանձնվել կենցաղսպասարկման տներ՝ պատվերների կոմպլեքսային ընդունման սրահներով։ Դրանք ունեն բոլոր հարմարությունները գյուղի աշխատավորությանն անհրաժեշտ կենցաղային ծառայություններ մատուցելու համար։

Ելնելով կոմունիստների քննադատական դիտողություններից ու առաջարկություններից՝ կուսակցության շրջանային կոմիտեն և շրջսովետի գործկոմը, հանրապետության բնակչության կենցաղային սպասարկման մինիստրության հետ միասին, մշակել են նոր միջոցառումներ՝ 1981—1985 թթ. շրջանում կենցաղային սպասարկման նոր օբյեկտներ կառուցելու, սպասարկման ծավալներն ու տեսակներն ընդլայնելու, կուլտուրան բարձրացնելու համար։ Լայն ծավալ է ստացել նաև դպրոցական և նախադպրոցական օբյեկտների շինարարությունը։

Մինչև վերջերս գրեթե բոլոր կոլտնտեսային և սովխոզային կուսակցական կազմակերպությունների ժողովներում խիստ կերպով բարձրացվում էր շրջանի մելիորատիվ ջոկատի գործունեությունը բարելավելու հարցը։ Բանն այն է, որ ջոկատի ունեցած տեխնիկական հնարավորությունները և, մանավանդ, աշխատանքի մակարդակը բոլորովին չէին համապատասխանում շրջանի գյուղատնտեսության օրավուր աճող պահանջներին։ Այդ հարցն արդեն լուծվել է. ջոկատը համալրվել է նոր, ձեռնահաս կադրերով, ամրապնդվել է նրա տեխնիկական բազան։ Դրա շնորհիվ ապահովվում է նախատեսված ծավալի աշխատանքների կատարումը։

Շրջանային կոմիտեում հաշվի են առնվում նաև մարդկանց հետ անհատական զրույցների ժամանակ, աշխատավորների նամակներում բարձրացված խնդրի, գործին օգնող դիտողություններն ու առաջարկությունները։ Նկատի ունենալով նման մի առաջարկություն՝ շրջանում սահմանվեց շինարարության օր, որի շնորհիվ շինարարական օբյեկտները մշտապես պահվում են հսկողության տակ, կանոնավոր ամփոփվում են արդյունքները։ Վերջին երեք տարում շրջանում կատարվում է կապիտալ շինարարության պլանը, կառույցները շահագործման են հանձնվում նախատեսված ժամկետներում։ Զգալիորեն բարձրացել է նաև շինարարական աշխատանքների որակը։

ուշադրություն չի նվիրվում թռչնաբուծության և խոզաբուծության զարգացմանը, հետևողական աշխատանք չի տարվում տոհմային գործի արմատական բարելավման, սեփական հոտի վերարտադրության կազմակերպման, անկումների ու հարկադիր մորթի կրճատման ասպարեզում։

Գործարար քննադատություն եղավ նաև սկզբնական կուսկազմակերպությունների այն ժողովներում, որտեղ քննարկվեցին շրջկոմի պլենումի և շրջանային կոնֆերանսի արդյունքները։ Լուրջ խոսակցություն ծավալվեց հատկապես կոլտնտեսային և սովխոզային կուսկազմակերպություններում։ Քննադատությունը տվեց ու տալիս է իր դրական արդյունքը։ Շրջանը անասնապահության բնագավառում տասներորդ հնգամյակը փակեց ժամկետից երեք ամիս շուտ և բարձր ցուցանիշներով։ Գոհացուցիչ են նաև 1981-ի արդյունքները։ Կաթի վաճառքի պլանը կատարվեց 111, մսինը՝ 103, ձվինը՝ 115, բրդինը՝ 121 տոկոսով։

Շրջանային կոմիտեն հանրապետության գյուղմինիստրության հետ մշակել ու իրականացնում է մի շարք միջոցառումներ՝ հոտի ընդլայնված վերարտադրություն կազմակերպելու համար։ Խնդիր է դրված հանրային նախրում կովերի տեսակարար կշիռը հասցնել նախ 36—38, իսկ հետագայում՝ 40—45 տոկոսի։ Մինչև հնգամյակի վերջը արդեն ոչ մի ցեղական անասուն չի ներմուծվի դրսից։ Մենք կունենանք մեր բազան և նույնիսկ հնարավորություն կստանանք ցեղական անասուններ վաճառել այլ շրջանների։ Լուրջ տեղաշարժեր են կատարվել խոզաբուծության բնագավառում։ Մոտ 400-ով ավելացել է խոզերի գլխաքանակը, կրկնակի անգամ՝ խոճկորների ստացումը։ Զգալիորեն աճել են նաև խոզի մսի արտադրությունն ու վաճառքը։

Անասնապահությունը Ախուրյանի շրջանում վերածվում է արտադրության բարձր կուլտուրա ունեցող ճյուղի։ Շրջանում սկսվել ու ծավալվում է «Բարձր արդյունավետության և օրինակելի ֆերմայի համար» շարժումը։ Այն արդեն տալիս է իր լավ արդյունքը։ Վերջին ժամանակներս շահագործման են հանձնվել 800-ական գլուխ կովի համար նախատեսված կաթնային համալիրներ Ոսկեհասկ, Արևիկ, Բայանդուր գյուղերի տնտեսություններում։ Այդպիսիք կառուցվում են Մայիսյանում, Ազատանում, Հովունիում, Հայկավանում։ Անասնապահների համար ստեղծվում են աշխատանքի ու հանգստի լավագույն պայմաններ։ Մեքենայացվում են աշխատատար պրոցեսները, կառուցվել ու կառուցվում են անասնապահի՝ ճաշակով կահավորված հանգստի սենյակներ։

Կոմունիստների, կոլեկտիվի յուրաքանչյուր անդամի արտադրական և քաղաքական ակտիվության բարձրացման գործում վճռական է քննադատական դիտողությունների ու առաջարկությունների կենսագործման դերը։ Դա հզոր լծակ է արդյունավետության և որակի համար մղվող պայքարում։ Ինչպես շրջանային կոմիտեում, այնպես էլ սկզբնական կուսկազմակերպություններում կանոնավոր կերպով հաշվի են առնվում կոմունիստների քննադատական դիտողություններն ու առաջարկությունները, ձեռնարկվում անհրաժեշտ միջոցներ՝ դրանց ընթացք տալու, լուծելու համար։ Իսկ դա շատ կարևոր է. յուրաքանչյուր կոմունիստ պետք է զգա իր մասնակցությունը ընդհանուր գործին, վստահ լինի այն բանում, որ իր կարծիքը, իր ձայնը կլսվի, հաշվի կառնվի։

Ախուրիկի և Երազգավորսի սովխոզային կուսկազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում կոմունիստները քննադատական խոսք էին ասել այն մասին, որ ոռոգման լարված շրջանում իրենց տնտեսությունները Աջափնյա ջրանցքից կանոնավոր ջուր չեն ստանում, ցանքերը ոռոգել անհնար է։ Դիտողությունը տեղին էր։ Որոշվեց մեծացնել Ախուրիկի ջրհան կայանի հզորությունը այնքան, որ երկու սովխոզներն էլ պահանջվող քանակությամբ ոռոգման ջուր ստանան։ Այդ աշխատանքներն արդեն սկսվել են։ Մինչև ոռոգման սեզոնի սկիզբը ջրհան կայանը լրիվ պատրաստ կլինի։

Երբ կոլեկտիվում գործերը լավ են ընթանում, կոմունիստն անկեղծորեն ուրախանում է, հպարտանում։ Չէ՞ որ ինքն էլ բաժին ունի այդ հաջողություններում։ Իսկ եթե աշխատանքում կան թերություններ, հուզող հարցեր, չլուծված խնդիրներ, նա լրջորեն անհանգստանում է, փորձում պարզել պատճառները։



Եվ երբ ամեն ինչ կշռադատում է, հանդես է գալիս օգտակար առաջարկություններով, դիտողություններով։

«Մենք չպիտի անտարբեր անցնենք այն փաստի կողքով, որ վերջին տարիներին, գետնաջրերի մակարդակի բարձրացման հետևանքով, շրջանում շուրջ 1.000 հեկտար վարելահողեր ճահճակալել են։ Այդ բանն ավելի շատ զգացվում է մեր գյուղում։ Իսկ մեր ունեցած հողերն առանց այդ էլ շատ չեն»։ Ղարիբջանյանի կոլտնտեսային կուսկազմակերպության անդամ Ազատ Համբարձումյանի այս խոսքերը չմնացին որպես ձայն բարբառո հանապատի։ Հարցն անհրաժեշտ լուծում ստացավ։ Միայն Ղարիբջանյանում արդեն չորացվել և շրջանառության մեջ է դրվել 300 հեկտար վարելահող։ Չորացման աշխատանքները շարունակվում են։

Կոմունիստի համար իր կարծիքը հայտնելու, առաջարկություն անելու, թերությունները քննադատելու լավ ամբիոն է կուսակցական ժողովը, մասնավորապես հաշվետու-ընտրականը։ Ահա ինչու մշտապես լուրջ ուշադրություն է նվիրվում ժողովների լավ նախապատրաստմանն ու անցկացմանը։ Մեր շրջանում վերջին հաշվետու-ընտրական ժողովներին կոմունիստների մասնակցությունը կազմեց ավելի քան 98 տոկոս։ Հաշվետվությունների շուրջը ծավալված մտքերի փոխանակությանը մասնակցեց ժողովականների 35 տոկոսը։ Նրանք հանդես եկան մի շարք արժեքավոր դիտողություններով ու առաջարկություններով։ Դրանցից 12-ը վերաբերում է հանրապետական, իսկ 163-ը՝ տեղական կազմակերպություններին։ Կոմունիստների դիտողությունների ու առաջարկությունների մեծ մասին արդեն ընթացք է տրվել։

Կոմունիստների քննադատական դիտողությունների և առաջարկությունների կենսագործման շնորհիվ է, որ այժմ շրջանում լայն ծավալ են ստացել շինարարական ու բարեկարգման աշխատանքները։ Վերջին տարիներին Արևիկ, Մարմաշեն, Հայկավան, Մայիսյան, Ջաջուռ և Այգաբաց գյուղերում կառուցվել ու շահագործման են հանձնվել կենցաղսպասարկման տներ՝ պատվերների կոմպլեքսային ընդունման սրահներով։ Դրանք ունեն բոլոր հարմարությունները գյուղի աշխատավորությանն անհրաժեշտ կենցաղային ծառայություններ մատուցելու համար։

Ելնելով կոմունիստների քննադատական դիտողություններից ու առաջարկություններից՝ կուսակցության շրջանային կոմիտեն և շրջսովետի գործկոմը, հանրապետության բնակչության կենցաղային սպասարկման մինիստրության հետ միասին, մշակել են նոր միջոցառումներ՝ 1981—1985 թթ. շրջանում կենցաղային սպասարկման նոր օբյեկտներ կառուցելու, սպասարկման ծավալներն ու տեսակներն ընդլայնելու, կուլտուրան բարձրացնելու համար։ Լայն ծավալ է ստացել նաև դպրոցական և նախադպրոցական օբյեկտների շինարարությունը։

Մինչև վերջերս գրեթե բոլոր կոլտնտեսային և սովխոզային կուսակցական կազմակերպությունների ժողովներում խիստ կերպով բարձրացվում էր շրջանի միլիորատիվ ջոկատի գործունեությունը բարելավելու հարցը։ Բանն այն է, որ ջոկատի ունեցած տեխնիկական հնարավորությունները և, մանավանդ, աշխատանքի մակարդակը բոլորովին չէին համապատասխանում շրջանի գյուղատնտեսության օրավուր աճող պահանջներին։ Այդ հարցն արդեն լուծվել է. ջոկատը համալրվել է նոր, ձեռնահաս կադրերով, ամրապնդվել է նրա տեխնիկական բազան։ Դրա շնորհիվ ապահովվում է նախատեսված ծավալի աշխատանքների կատարումը։

Շրջանային կոմիտեում հաշվի են առնվում նաև մարդկանց հետ անհատական զրույցների ժամանակ, աշխատավորների նամակներում բարձրացված խելացի, գործին օգնող դիտողություններն ու առաջարկությունները։ Նկատի ունենալով նման մի առաջարկություն՝ շրջանում սահմանվեց շինարարության օր, որի շնորհիվ շինարարական օբյեկտները մշտապես պահվում են հսկողության տակ, կանոնավոր ամփոփվում են արդյունքները։ Վերջին երեք տարում շրջանում կատարվում է կապիտալ շինարարության պլանը, կառույցները շահագործման են հանձնվում նախատեսված ժամկետներում։ Զգալիորեն բարձրացել է նաև շինարարական աշխատանքների որակը։

Սխալ կլինի, սակայն, կարծել, թե մեզ մոտ ամեն ինչ արվում է՝ ճիշտ օգտագործելու քննադատության զորեղ ուժը, մինչև վերջ կենսագործելու կոմունիստների դիտողություններն ու առաջարկությունները: Այդ մասին չի՞ խոսում, արդյոք, այն փաստը, որ վերջին երեք հաշվետու-ընտրական կամպանիաների ընթացքում գրեթե նույն քննադատական դիտողություններն են արվում շրջանային սպառողական կոոպերացիայի հասցեին, նշվում, որ դեռևս ցածր է բնակչության առևտրական սպասարկման կուլտուրան, ցանցում չեն արմատավորվում առևտրի կազմակերպման նոր, առաջավոր ձևեր, վատ է հաշվի առնվում բնակչության պահանջարկը, կոպիտ կերպով խախտվում են առևտրի կանոնները:

Առանձին դեպքերում դեռևս իրեն զգացնել է տալիս այն արատավոր երևույթը, երբ քննադատության սրությունը որոշվում է ըստ այն բանի, թե ում է դա հասցեագրված: Օրինակ, եթե խոսքը վերաբերում է շարքային կոմունիստին, քննադատությունն անպայման սուր է, անզիջում: Եվ, հակառակը, երբ այն վերաբերում է ղեկավար աշխատողին, կորցնում է իր թափը, հղկվում են սուր անկյունները: Իսկ նման պարագաներում քննադատությունը օբյեկտիվ լինել չի կարող: Եթե ղեկավար աշխատողը իրոք հեղինակություն է վայելում, ապա անաչառ քննադատությունը երբեք ստվեր չի գցի նրա հեղինակության վրա: Ավելին, այն զարգացնում է սեփական արարքները ճիշտ վերլուծելու ունակությունը, պարտավորեցնում է միշտ հաշվի նստել աշխատողների կարծիքի հետ: Ղեկավարը պետք է կարողանա մոտիկից շփվել մարդկանց հետ, հասկանալ, կազմակերպել նրանց, ունկնդրել նրանց ձայնին, ճիշտ եզրակացություն անել նրանց ասած խիստ, բայց անաչառ խոսքից:

Հենց այդ կարևոր հատկանիշներն էին բացակայում Կապսի կոլտնտեսության նախկին նախագահ Մերուժան Թովմասյանի մոտ: Դա էլ հանգեցրեց այն բանին, որ նա հեղինակազրկվեց կոլեկտիվի աչքում: Եվ, բնականաբար, նրան ազատեցին կոլտնտեսության նախագահի պարտականությունից:

Կոլեկտիվի ղեկավարին անհարիր վարքագիծ էր դրսևորում Ջաջուռի երկաթուղային կայարանի նախկին պետ Ռաֆիկ Թադևոսյանը: Մեկ անգամ չէ, որ շրջկոմում, կուսկազմակերպությունում ասել, զգուշացրել էին նրան իր սխալների համար: Բայց նա միշտ հիվանդագին էր ընդունում իր հասցեին արված ամենաաննշան դիտողությունն անգամ: Ինչի՞ հանգեցրեց նման վարքագիծը: Ռ. Թադևոսյանը նախ կուսակցական տույժ ստացավ, ապա նաև ազատվեց զբաղեցրած պաշտոնից:

Չի կարելի չնշել նաև մեկ ուրիշ կարևոր հարցի մասին: Հանրապետական կազմակերպությունների հասցեին արված որոշ քննադատական դիտողություններ ու առաջարկություններ ընթացք չեն ստանում: Ահա մի օրինակ: Ջաջուռի կրի գործարանը միակ ձեռնարկությունն է Ախուրյանի շրջանում, որը թերակատարում է պլանները: Սուբյեկտիվ պատճառներից բացի կան նաև օբյեկտիվ պատճառներ: Գործարանի սարքավորումները հին են, բարոյապես մաշված, հնացած է նաև արտադրության տեխնոլոգիան: Այդ պատճառով ցածրորակ կիր է արտադրվում: Ո՞րն է ելքը: Կամ պետք է գործարանը հիմնովին վերակառուցել, կամ ուղղակի փոխել նրա բնույթը: Գիտե՞ այս մասին ՀՍՍՀ շինանյութերի արդյունաբերության մինիստրությունը: Անշուշտ: Մեկ անգամ չէ, որ այդ հարցը բարձրացրել են կրագործ կոմունիստները: Սակայն այդպես էլ այն լուծում չի ստանում: Իսկ դրան սպասում է մի ամբողջ բանվորական կոլեկտիվ:

Ախուրյանի շրջանի աշխատավորները, ինչպես սովետական բոլոր մարդիկ, մեծ եռանդով ու ոգևորությամբ ձեռնամուխ են եղել կուսակցության XXVI համագումարի պատմական որոշումների կենսագործմանը, տասնմեկերորդ հնգամյակի առաջադրանքների կատարմանը: Կյանքը սկզբնական կուսկազմակերպությունների առջև դնում է նորանոր խնդիրներ, որոնց լուծման շահերը պահանջում են հետևողականորեն ծավալել քննադատությունը և ինքնաքննադատությունը: Հիրավի, զորեղ ուժ է քննադատությունը, որի բարերար ազդեցությունն ամեն օր զգում ենք մեր գործունեության բոլոր բնագավառներում:

# ՆԱԽԱՁԵՌՆՈՒՄ ԵՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՎԵՐԱՀՍԿԻՉՆԵՐԸ

**Ս. Մ. ՔԱՌՅԱՆ**
Ժողովրդական վերահսկողության Կիրովականի
քաղաքային կոմիտեի նախագահ

ԻՆՉՊԵՍ ՆՇՎԱԾ Է «ՍՍՀՄ-ում ժողովրդական վերահսկողության մասին» օրենքի երրորդ հոդվածում, վերահսկողության մարմինները կոչված են սիստեմատիկաբար ստուգելու կուսակցության դիրեկտիվների, սովետական օրենքների և կառավարության որոշումների կատարումը, վճռականորեն հանդես գալու այն ամենի դեմ, ինչ վնաս է հասցնում պետության շահերին, նպաստելու հասարակության գործերի համար քաղաքացիների պատասխանատվության զգացումի ուժեղացմանը:

ՍՄԿԿ XXVI համագումարը, բարձր գնահատելով ժողովրդական վերահսկողության մարմինների դերը կատարման ստուգման գործում, կուսակցական կազմակերպություններից պահանջեց արդյունավետ օգտագործել նրանց ուժերն ու հնարավորությունները, ըստ ամենայնի նպաստել նրանց գործունեության բարելավմանը: Կիրովականի ժողովրդական վերահսկիչները հետևողականորեն են կենսագործում այդ պահանջները: Իրենց ակտիվ գործունեությամբ նրանք նպաստում են քաղաքի տնտեսական ու սոցիալական զարգացման խնդիրների լուծմանը: Վերահսկողության խմբերը հետևում են նյութական ռեսուրսների և դրամական միջոցների ռացիոնալ օգտագործմանը, պայքար մղում պետական կարգապահության խախտումների, շռայլումների ու չարաշահումների, քաշքշուկի ու բյուրոկրատիզմի, սոցիալիստական սեփականության վատնումների դեմ: Միայն վերջին մի քանի տարում ժողվերահսկողության քաղկոմը, նրա արտահաստիքային բաժինները, հիմնարկ-ձեռնարկությունների խմբերն ու պոստերը անցկացրել են հարյուրավոր ստուգումներ, որոնց մասնակցել են մի քանի հազար վերահսկիչներ: Ընդ որում յուրաքանչյուր ժողվերահսկիչ մեկ տարվա ընթացքում միջին հաշվով մասնակցել է 4—5 ստուգման:

Սովետական պետության մեջ, որն արտահայտում է ամբողջ ժողովրդի շահերն ու կամքը, վերահսկողության իրավունքը պատկանում է իրեն՝ ժողովրդին, որպես իր երկրի տիրոջ: Կիրովականի աշխատավորական կոլեկտիվների գրեթե յուրաքանչյուր տասը աշխատողից մեկը ժողովրդական վերահսկիչ է: Նրանք բանվորներ են, ինժեներներ ու տեխնիկներ, ծառայողներ և ուսանողներ, պլանային աշխատողներ ու տնտեսագետներ: Վերահսկիչների այս ստվար բանակի ուժերի համախմբումը, կոորդինացումը և նպատակամետ ու արդյունավետ օգտագործումը ժողվերահսկողության քաղկոմի, խմբերի ու պոստերի ամենօրյա ուշադրության առարկան են: Վերջին տարիներին նրանց գործունեությունն ավելի է ակտիվացել: Այդ գործում մեծ դեր են խաղացել Լատվիական ՍՍՀ ժողովրդական վերահսկողության մարմինների կուսակցական ղեկավարման մասին ՍՄԿԿ Կենտկոմի և Կուրգանի ժողովրդական վերահսկողության մարզային կոմիտեի մասին ՍՍՀՄ ժողովրդական վերահսկողության կոմիտեի որոշումների լայն քննարկումներն ու դրանցից բխող համապատասխան միջոցառումների իրականացումը:

Ժողովրդական վերահսկողության աշխատանքը կարող է արդյունավետ լինել այն դեպքում միայն, երբ անհրաժեշտ պայմաններ ու հնարավորություններ են ստեղծվում վերահսկիչների ակտիվության բարձրացման ու նախաձեռնության զարգացման համար։ Եվ եթե մեր վերահսկիչները հաջողությամբ են իրականացնում իրենց ֆունկցիաները, ապա դա բացատրվում է հենց այն բանով, որ կուսքաղկոմը և քաղսովետի գործկոմը, հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարներն ու սկզբնական կուսկազմակերպությունները մշտական օգնություն ու աջակցություն են ցույց տալիս նրանց, ամեն կերպ նպաստում վերահսկիչների գործունեության բարելավմանն ու նախաձեռնության զարգացմանը։ Տարիներ շարունակ ջերմաէլեկտրակենտրոնը չէր կատարում խնայողության առաջադրանքները, պարբերաբար տույժի էր ենթարկվում ու տուգանքներ վճարում՝ պայմանագրային պարտավորությունները չկատարելու և երկաթուղային վագոնները ժամանակին չբեռնաթափելու համար։ Թերացման պատճառների ուսումնասիրման ու վերացման նախաձեռնությամբ հանդես եկավ ջերմաէլեկտրակենտրոնի ժողվերահսկողության խումբը, որի նախագահն է կուսբյուրոյի քարտուղարի տեղակալ Հ. Հովհաննիսյանը։ Կուսբյուրոն հավանություն տվեց նախաձեռնությանը, իսկ էլեկտրակենտրոնի երիտասարդ դիրեկտոր Է. Արզումանյանը պայմաններ ստեղծեց հարցի բազմակողմանի ուսումնասիրման համար։ Ստուգման արդյունքների հիման վրա վերահսկիչներն իրենց առաջարկությունները ներկայացրին դիրեկցիային. նրանք անհրաժեշտ էին համարում ընդարձակել մազութի կուտակման կարողությունները, մեծացնել փոխադրատարողությունները։ Առաջարկությունների իրագործումով ձեռնարկությունում արմատավորվեց խնայողության ռեժիմ։

Բնական է, որ այսպիսի արդյունքից հետո վերահսկողության խմբի հեղինակությունը բարձրանում է, մարդիկ նրան ավելի են վստահում, դիմում նրա օգնությանը։

Ճշգրիտ հաստոցների գործարանի խումբը (նախագահ՝ Վ. Մազմանյան), 1980 թ. երրորդ եռամսյակում ստուգելով էլեկտրաէներգիայի օգտագործման վիճակը, հայտնաբերել էր, որ №№ 3 և 6 արտադրամասերում երկրորդ հերթափոխի ժամերին բանվորներն աշխատում են ոչ լրիվ ծանրաբեռնվածությամբ, գործի է գցվում ընդամենը մի քանի հաստոց, սակայն էլեկտրական լուսավորման կետերը գործում են լրիվ հզորությամբ։ Խումբը գլխավոր էներգետիկին և նորոգման արտադրամասի վարպետին առաջարկել էր էլեկտրացանցը վերասարքավորել այնպես, որ երկրորդ հերթափոխի ժամանակ վառվեն միայն անհրաժեշտ քանակի լամպեր, որով արտադրամասերի էլեկտրաէներգիայի ծախսը զգալիորեն կկրճատվեր։ Մեկ ամիս անց խումբը, անդրադառնալով իր որոշման կատարմանը, պարզել էր, որ գրեթե ոչինչ չի արվել և այդ մասին տեղյակ էր պահել գործարանի դիրեկցիային։ Վերջինս էլեկտրաէներգիայի շռայլման համար գործարանի գլխավոր ինժեներ Ս. Քոչարյանին և գլխավոր էներգետիկ Է. Հակոբյանին խիստ զգուշացրել էր, իսկ նորոգման արտադրամասի վարպետ Ս. Ղարագյոզյանին, վերահսկողության խմբի որոշումը չկատարելու համար, հայտարարել նկատողություն։ Դիրեկցիայի հանձնարարությամբ տասն օրվա ընթացքում խմբի առաջարկությունը իրականացվեց։ Մի այլ օրինակ ևս. գործարանի վերահսկիչները բազմիցս բանվոր-ծառայողներից ահազանգ էին ստացել, որ №№ 2 և 9 արտադրամասերում վարպետները մեկի աշխատանքի արդյունքը գրանցում են մեկ ուրիշի վրա՝ փոխելով տաբելային համարը։ Մարշրուտային թերթիկներում խախտվում են տեխնոլոգիական օպերացիաները, և ստացվում է կրկնակի վարձատրություն։ Ստուգման արդյունքները ներկայացվեցին գործարանի ադմինիստրացիային։ Դիրեկցիայի հրամանով № 2 արտադրամասի երկու և № 9 արտադրամասի չորս վարպետներ ենթարկվեցին խիստ պատասխանատվության։ Նման խախտումներ հետագայում այլևս չկրկնվեցին։

Հասարակական սննդի տրեստի ժողվերահսկողության խումբը (նախագահ՝ Գ. Բաղդասարյան) անցյալ տարի ուսումնասիրեց օբյեկտներում չափի ու կշեռքի շահագործման վիճակը։ Ստուգումներին հրավիրվեցին նաև պետական



ստանդարտների Կիրովականի բաժանմունքի աշխատակիցները։ Ստուգումների ընթացքում հայտնաբերվեցին չափի ու կշեռքի տեխնիկայի ոչ ճիշտ աշխատանքի դեպքեր։ Հարցը քննարկվեց խմբի ժողովում՝ սննդի տրեստի և նրա առանձին օբյեկտների ղեկավարների ներկայությամբ։ Զգուշացվեցին «Կիրովական», «Ղարս», «Բաթում» ռեստորանների և մի շարք բանվորական ճաշարանների ղեկավարներ։ № 2981 ավտոշարասյան ժողվերահսկողության խումբը (նախագահ՝ Տ. Սիրունյան) ուսումնասիրել է ավտոտրանսպորտի ռացիոնալ օգտագործման վիճակը։ Ստուգումների ընթացքում արձանագրվել է, որ մի շարք ավտոմեքենաների հաշվիչների ցուցանիշները չեն համապատասխանում ուղեգրերում նշված տվյալներին, լիովին չեն օգտագործվում կցորդները, առանձին վարորդներ գործից հետո մեքենաները չեն կանգնեցնում հավաքակայանում, զբաղվում են կողմնակի փոխադրումներով։ Պարզվել էր նաև, որ ուղեգրերում բեռնափոխադրումների հավելագրումներ են արվել, առանձին դեպքերում ուղեգրերը ճիշտ չեն լրացվել, զգալի է ավտոմեքենաների դատարկ վազքը։

Ավտոշարասյան ղեկավարների ներկայությամբ հարցը քննարկվեց խմբի ընդլայնված ժողովում։ Առանձին վարորդների ու պատասխանատու անձանց նկատմամբ կիրառվեցին հասարակական պարսավանքի միջոցներ։ Դիրեկցիան հրամանով կարգապահական տույժերի ենթարկեց մի շարք վարորդների, մշակեց թերությունների վերացման միջոցառումների պլան։

Լուսատեխնիկական գործարանի վերահսկողության խումբը, որը գլխավորում է Լ. Բոշյանը, մանրակրկիտ ուսումնասիրել և կուսկոմիտեի քննարկմանն է ներկայացրել պատրաստի արտադրանքի առաքման հարցը։ Պարզվել է, որ գործարանի այդ բաժինը փաստորեն ձախողել է պետական կարևոր նշանակություն ունեցող գործը՝ առաջացնելով պատվիրատուների դժգոհությունը։ Իրենց պարտականությունների կատարման գործում թերանալու համար առաքման բաժնի պետ Հ. Կարապետյանը, գործարանի գլխավոր տեխնոլոգ Հ. Բադյանը տուժարկվեցին, իսկ ավագ հաշվապահ Լ. Մխիթարյանը և հաշվապահ Ջ. Մուկուչյանը հեռացվեցին զբաղեցրած պաշտոններից։

Ակտիվ գործունեությամբ աչքի է ընկնում նաև «Ավտոմատիկա» սարքաշինական գործարանի վերահսկողության խումբը, որի ղեկավարն է արտադրության ավտոմատ կառավարման բաժնի պետ, կուսկոմիտեի քարտուղարի տեղակալ Լևոն Դավթյանը։ Խումբն իր նախաձեռնությամբ շատ է օգնում արտադրության նեղ տեղերի վերացմանը, գործերի վիճակի բարելավմանը։ Վերջերս վերահսկիչներն ստուգել են աշխատաժամանակի լիարժեք օգտագործման վիճակը։ Արդյունքը գոհացուցիչ չէր. կորուստներն զգալի էին՝ հիմնականում ուշացումների պատճառով։ Իսկ կարգազանցներն իրենց ուշացումները բացատրում էին քաղաքային տրանսպորտի աշխատանքի անբավարար դրվածքով։ Գործարանի կուսկոմիտեն որոշեց ուսումնասիրել ավտոբուսների երթևեկության վիճակը։ Նրա հանձնարարությամբ, տեխնոլոգիական բաժնի վերահսկիչները մեկ շաբաթ հետևեցին գործարանամերձ փողոցով անցնող ավտոբուսային № 1 երթուղու աշխատանքին։ Պարզվեց, որ սարքաշինարարների դժգոհությունը տեղին էր։ Ավտոբուսները խախտում էին երթևեկության գրաֆիկները, տարբեր ուղղություններով գործի շտապող ուղևորների մեծ հերթեր էին գոյանում կանգառներում։ Ժողվերահսկողության խումբն ահազանգեց համապատասխան կազմակերպություններին, և հաջորդ շաբաթ կարգավորվեց ավտոբուսների երթևեկությունը, պակասեց աշխատանքից ուշացողների թիվը։ Այս և այլ ձեռնարկումներ զգալիորեն նպաստել են գործարանում աշխատանքային կարգապահության ամրապնդմանը, նախկինի համեմատությամբ, ուշացումները կրճատվել են ավելի քան վեց անգամ՝ հասնելով նվազագույնի։

Գործարանում ժողվերահսկողության ոլորտում ընդգրկված է ավելի քան 200 մարդ, և չկա մի բնագավառ, որը դուրս մնա նրանց տեսադաշտից։ Ամենօրյա կազմակերպչական աշխատանքից բացի, խումբը բազմակողմանիորեն ստուգել և քննարկել է մի քանի տասնյակ հարցեր, որոնք հիմնականում վերաբերում են արտադրական կարողությունների ու մեքենասարքավորումների արդյունավետ օգտագործմանը, նոր տեխնիկայի ներդրմանը, թողարկվող ար-

տադրանքի որակին, վառելիքահումքային միջոցների խնայողական օգտագործմանը։ Բոլոր այդ քննարկումները դրական դեր են խաղացել արտադրության արդյունավետության բարձրացման, կոլեկտիվի առջև ծառացած խնդիրների լուծման գործում։ Վերահսկիչների հետևողականության շնորհիվ այստեղ կարճ ժամանակամիջոցում նորոգվել ու գործի են դրվել անուշադրության մատնված հաստոցները, կառուցվել է 200 տոննա տարողությամբ մազութի պահեստ։

ՍՄԿԿ XXVI համագումարը խնդիր դրեց պայքարել արտադրանքի բարձր որակի, պայմանագրային կարգապահության ամրապնդման համար։ Այդ հարցերը մշտապես մեր վերահսկիչների ուշադրության կենտրոնում են։ Նման բնույթի յուրաքանչյուր բողոք կամ ահազանգ դառնում է ստուգման ու քննարկման առարկա, իսկ դրան հետևում են կոնկրետ ձեռնարկումները։ Բազմաթիվ փաստերից նշեմ մեկը։ Անցած տարվա սկզբներին Կիրովականի տրիկոտաժեղենի նկատմամբ պատվիրատուների դժգոհություններն ու ռեկլամացիաները հաջորդում էին իրար։ Ժողովրդական վերահսկողության քաղկոմը հրավիրեց տրիկոտաժագործ վերահսկիչների խորհրդակցություն, կոնկրետ հանձնարարություններ տվեց նրանց։ Ստուգումներից պարզվեց, որ արտադրանքի որակը, նրա ապրանքային տեսքը վատանում են ոչ թե բուն արտադրության պրոցեսում, այլ արտադրանքը նախ՝ պահեստ, ապա՝ առաքման բաժին և կրկին պահեստ տեղափոխելու ընթացքում։ Առաջարկվեց կրճատել պատրաստի արտադրանքի «անցման ճանապարհը», դրա տեսակավորումն ու փաթեթավորումը կատարել հենց արտադրամասում և անմիջապես ուղարկել պահեստ։ Ձեռնարկության կուսկոմիտեն, դիրեկցիան հաշվի առան վերահսկիչների այդ կարծիքը։ Եվ ահա արդյունքը։ Լրացուցիչ ուսումնասիրությունը ցույց տվեց, որ երկրորդ եռամսյակում պատվիրատուների բողոքները նվազել են շուրջ երկուսուկես անգամ։

Հումքային, վառելիքաէներգետիկ և մյուս նյութական ռեսուրսների խնայողության և ռացիոնալ օգտագործման աշխատանքն ուժեղացնելու վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի ու ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշման հրապարակումից հետո վերահսկողության քաղաքային կոմիտեն և ձեռնարկությունների ու հիմնարկությունների խմբերը, բոլոր վերահսկիչներն իրենց ուշադրությունը սևեռել են այդ հարցերի վրա։ Վերահսկողության քաղկոմը բարձրացրել է քաղաքի հիմնարկ-ձեռնարկությունների և կազմակերպությունների պատասխանատվությունը հումքային, վառելիքաէներգետիկ և մյուս ռեսուրսների խնայողության և ռացիոնալ օգտագործման համար։ Դրան են ուղղված վերջին շրջանում մեր կատարած ուսումնասիրություններն ու ստուգումները։ Քաղաքի մետաղամշակման և սարքաշինական ձեռնարկություններում սև և գունավոր մետաղների նորմավորման և խնայողաբար օգտագործման դրվածքի ուսումնասիրությունից պարզվեց, որ դրանց կոլեկտիվները կատարել ու գերակատարել են մետաղի ծախսի նորմայի իջեցման 1976—1980 թթ. պլանային առաջադրանքները։ Սակայն, չնայած դրան, կան թաքնված ռեզերվներ, որոնց օգտագործման դեպքում նկատելիորեն կավելանար մետաղի խնայողությունը։ Օրինակ, «Ավտոմատիկա» գործարանում արտադրանքի որակազրկման հետևանքով 1979—1980 թթ. մետաղի կորուստը կազմել է 1.400 ռ., սև մետաղի ջարդոնի հանձնման առաջադրանքը թերակատարվել է 10 տոննայով։ Մեկ ուրիշ ստուգումից պարզվեց, որ, թեև քաղաքի հիմնարկ-ձեռնարկություններն ու կազմակերպությունները 1981 թ. առաջին կիսամյակում տնտեսել են 8 մլն 941 հազար կվտ-ժամ էլեկտրական և 3.846 հեկակալորիա ջերմային էներգիա, դեռևս ոչ բոլոր կոլեկտիվներում են հետևողականորեն կատարվում խնայողության վերաբերյալ կուսակցության և կառավարության որոշումները։ Այսպես, «Կիրներուդ» կոմբինատը 1981 թ. առաջին կիսամյակում տվել է 34 հազար կվտ-ժամ էլեկտրաէներգիայի, հացաբուլկեղենի կոմբինատը՝ 233 հեկակալորիա ջերմային էներգիայի համասար քանակության վառելանյութի գերածախս։ Բնական գազի գերածախս է առաջացել փորձնական ավտոնորոգման գործարանում, մսի և գեղարվեստական իրերի կոմբինատներում։

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ էլեկտրաէներգիայի, հումքի,



վառելանյութի խնայողության ռեզերվներ կան ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում։ Դրանք հայտնաբերելու և գործի դնելու համար հարկ չկա ծախսել նյութական և աշխատանքային միջոցներ, արտադրության մեջ կատարել արմատական վերափոխումներ։ Բավական է միայն ճիշտ նորմավորել հումքի ու նյութերի, էլեկտրաէներգիայի և վառելիքի ծախսումները, կազմակերպել դրանց հաշվառումը և ռացիոնալ, արդյունավետ օգտագործումը, խստորեն տնտեսավարություն պահանջել պատասխանատու անձանցից։

Վերահսկողության մարմինների կարևորագույն խնդիրներից է հանրային բարիքի պահպանությունը, հափշտակումների և յուրացումների դեմ հետևողական պայքարի կազմակերպումը։ Այս ասպարեզում ևս մեր վերահսկիչները հանդես են բերում հետևողականություն, բացահայտում ոչ քիչ թվով հափշտակության և յուրացման դեպքեր։ Վերջին ամիսներին տրիկոտաժի արտադրական միավորումում, մսի կոմբինատում, քաղկոոպառում, «Հայառմոնտաժ» կոմբինատի Կիրովականի տեղամասում, № 19 միջնակարգ դպրոցում արձանագրվել են սոցիալիստական սեփականության հափշտակումների, յուրացումների դեպքեր։ Դրանց համար պատասխանատու անձինք վերահսկողության քաղկոմի կողմից ենթարկվել են կարգապահական տույժերի, իսկ մեղավորները պատժվել են։ Իհարկե, այդ դեպքերը չէին լինի, եթե վերահսկողության խմբերը ուժեղացնեին կանխարգելիչ աշխատանքը, հանդես բերեին անհրաժեշտ ակտիվություն ու նախաձեռնություն, ժամանակին ահազանգեին համապատասխան կազմակերպություններին։

Ժողովրդական վերահսկիչների նախաձեռնությունները ցանկալի արդյունք չեն տա, եթե դրանք չխրախուսվեն ու պաշտպանություն չգտնեն, եթե անհրաժեշտ աշխատանք չտարվի դրանց մասսայականացման, հրապարակայնության ապահովման ու տարածման նպատակով։ Դրա համար մեզ մոտ կիրառվում են տարբեր ձևեր ու միջոցներ։

Արդեն երրորդ տարին է, ինչ մեր քաղկոմին կից գործում է 70 մարդուց բաղկացած դասախոսական խումբ։ Նրանում ընդգրկված են ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառների մասնագետներ, կուսակցական, սովետական ու տնտեսական ղեկավար աշխատողներ։ Դասախոսները պարբերաբար, պլանավորված կարգով հանդես են գալիս ժողովրդական վերահսկողության խմբերում ու պոստերում, ծանոթանում նրանց պրակտիկ գործունեությանը, մեթոդական ցուցումներ ու խորհուրդներ տալիս, պարզաբանում կուսակցության ու կառավարության որոշումները և վերահսկիչների խնդիրները։ Դասախոսական խումբն ունի իր խորհուրդը։ Վերջինս պլանավորում է դասախոսությունների թեմաները, կազմակերպում սեմինար պարապմունքներ ու կոնսուլտացիաներ, իրականացնում առաջավոր փորձի պրոպագանդման գործը։

Վերջին մեկ տարում ժողվերահսկողության քաղկոմը ընդհանրացրել է քիմիական, քիմիական մանրաթելի, լուսատեխնիկական, ավտոգենային մեքենաշինության գործարանների ժողվերահսկիչների փորձը։ Առաջավոր փորձը պրոպագանդում ենք գործնական պարապմունքների միջոցով։ Յուրաքանչյուր պարապմունքում տեսական ղեկուցումներ են կարդացվում վերահսկողության որևէ հրատապ հարցի վերաբերյալ, ապա վերահսկիչներն իրենց աշխատանքի կազմակերպման ձևերի ու մեթոդների մասին հանդես են գալիս հաղորդումներով։ Աշխատանքի այս ձևը փաստորեն կադրերի ուսուցման դպրոց է, և մենք հենց այդպես էլ կոչում ենք այն։ Դպրոցում, որի պարապմունքները տեղի են ունենում երկու ամիսը մեկ անգամ, ընդգրկված են հիմնականում խմբերի ու պոստերի ղեկավարները և դրանց առավել ակտիվ անդամները։

Քաղաքի բոլոր վերահսկիչները (քաղկոմի ու նրա բաժինների անդամները, տեսուչները, խմբերի և պոստերի նախագահներն ու անդամները) ընդգրկված են քաղաքական ուսուցման տարբեր օղակներում։ Անշուշտ, ուսուցման այս ձևը նպաստում է վերահսկիչների ակտիվության բարձրացմանն ու նախաձեռնության զարգացմանը։

Կարևոր են փորձի ու նախաձեռնությունների հրապարակայնությունն ու գրավոր պրոպագանդան։ Բոլոր խոշոր ձեռնարկությունները (քիմիական, քի-

միական մանրաթելի և ճշգրիտ հաստոցների գործարաններ, տրիկոտաժի արտադրամիավորում, Կիրշինտրեստ և այլն) պարբերաբար հրապարակում են վերահսկողության խմբերի աշխատանքն արտացոլող պատի թերթեր, որտեղ դրվատվում են ակտիվ վերահսկիչները, ընդհանրացվում է նրանց աշխատանքի փորձը։ «Ժողվերահսկողության դիրքերում» խորագրով ծավալուն թերթ է հրատարակում ժողովրդական վերահսկողության քաղկոմը։ Դրա էջերում պատմըվում է վերահսկողության ասպարեզում քաղաքում կատարված դրական աշխատանքի, վերահսկիչների հանդես բերած նախաձեռնությունների մասին, դրվատվում են ակտիվիստները, պրոպագանդվում են այն նորն ու առաջավորը, ինչ կա այս ասպարեզում։

Մեզ շատ է օգնում նաև քաղաքային «Կայծ» թերթը, որը «Ժողովրդական վերահսկողության ներքո» խորագրով պարբերաբար թեմատիկ էջեր է նվիրում ժողովրդական վերահսկիչների գործունեությանը։

Դրական արդյունք են տալիս վերահսկողության խմբերի ու պոստերի, քաղաքային կոմիտեի արտահաստիքային բաժինների ու խմբերի հաշվետվությունների քննարկումները քաղկոմում և ակտիվի ժողովներում, փորձի փոխանակումները, կոմերիտական լուսարձակայինների հետ ստուգայցերի կազմակերպումը և այլն։ Խմբերի ու պոստերի լավ նախաձեռնությունները արժանանում են ժողվերահսկողության քաղկոմի հավանությանը, պաշտպանություն գտնում մյուս խմբերի ու պոստերի կողմից։ Երբ երեք տարի առաջ լուսատեխնիկական գործարանի վերահսկիչները հանդես եկան «ԲԱՄ-ի պատվերները՝ հսկողության տակ» նախաձեռնությամբ, քաղկոմը հավանություն տվեց, նախաձեռնության մասին նյութ հրապարակվեց «Կայծ» թերթում։ Էլեկտրասարքաշինարարները կոչ արեցին ամենօրյա հսկողության տակ վերցնել Սիբիրի և Հեռավոր Արևելքի պատվերների առաքումն ընդհանրապես։ Նախաձեռնությանն արձագանքեցին քիմիական, ավտոգենային մեքենաշինության գործարանների, երկաթուղային կայարանի վերահսկիչները։

Հնգամյակի առաջին տարում ավտոգենային մեքենաշինության գործարանի վերահսկիչները խիստ հսկողություն հաստատեցին թողարկվող արտադրանքի որակի նկատմամբ, սահմանեցին որակի օր։ Նրանց օրինակին հետևեցին քիմիական մանրաթելի գործարանի վերահսկիչները և ուրիշներ։ Անտարակույս, վերահսկիչների ջանքերով է նաև, որ ավտոգենային մեքենաշինության գործարանի արտադրանքի ավելի քան 75 տոկոսը հասցված է որակի պետական նշանի պահանջներին։ Այս ձեռնարկությունը քաղաքում միակն է, որը պարգևատրվել է ՍՍՀՄ ստանդարտների պետական կոմիտեի պատվոգրով ու դիպլոմով։

Ցավոք, առանձին նախաձեռնություններ տևական կյանք չեն ունենում։ Այդ առումով բնորոշ է բնակելի շենքերում և ոչ արտադրական հիմնարկություններում էլեկտրաէներգիայի օգտագործման նկատմամբ խիստ հսկողություն սահմանելու վերաբերյալ էներգոսբիտի ժողովրդական վերահսկիչների նախաձեռնության օրինակը։ Նախաձեռնությունը, թվում է, արձագանք գտավ քաղաքում, սակայն, չանցած մեկ ամիս, մարեց՝ հենց էներգետիկների անհետևողականության պատճառով։ Մինչդեռ, ինչպես ցույց տվեց ուսումնասիրությունը, այդ ընթացքում տասնյակ հազարավոր կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա խնայվեց։

Ինչպես յուրաքանչյուր աշխատանքում, այնպես էլ վերահսկողության մեջ գործի հաջողությունը մեծապես պայմանավորված է կադրերի բանիմացությամբ, գործարար հատկանիշներով ու պատասխանատվության աստիճանով։ Ուստի խմբերի ղեկավարների ու քաղկոմի արտահաստիքային ակտիվի ընտրությունը կատարվում է անհատական մոտեցումով, սկզբնական կուսակցական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունների համաձայնությամբ։ Վերջիններիս փոխհամաձայնությամբ է կատարվում նաև խմբերի անդամների ընտրությունը, հոգ է տարվում խմբերում ու պոստերում կուսակցական միջուկի ամրապնդման համար։ Մեզ մոտ տարեցտարի ավելանում է կուսակցական ու կոմերիտական վերահսկիչների թիվը, որն այժմ կազմում է 54



տոկոս։ Խմբերի ու պոստերի 458 նախագահներից շուրջ 300-ը ՍՄԿԿ անդամներ են, որոնցից 173-ը՝ բանվորներ։

Ամեն տարի մեզ մոտ զգալիորեն նորացվում է վերահսկիչների կազմը։ Անցած ընտրական կամպանիայի ժամանակ 243 վերահսկիչներ, այդ թվում խմբերի ու պոստերի 160 նախագահներ ընտրվել են առաջին անգամ, 47 խմբերում ստեղծվել են բյուրոներ, 197-ում՝ սեկտորներ։ Այս հանգամանքը ժողովրդական վերահսկողության քաղկոմին ստիպում է սիստեմատիկաբար զբաղվել կադրերի ուսուցմամբ, հոգ տանել նրանց գործիմացության և ակտիվության բարձրացման մասին։ Այս խնդիրը հիմնականում մենք իրականացնում ենք կադրերի ուսուցման և փորձի տարածման վերը նշված դպրոցի և սեմինար պարապմունքների միջոցով։ Սակայն հաճախ անհրաժեշտ է լինում այս կամ այն նորընտիր նախագահի հետ անհատական աշխատանք տանել, զրուցել, բացատրել նրան իր ֆունկցիաներն ու կոնկրետ անելիքները։ Այսպես, անցած տարի № 5 դպրոցում ժողվերահսկողության խմբի նախագահ ընտրվեց ուսուցչուհի Ա. Հովհաննիսյանը։ Անցել էր մեկ ամիս, իսկ ժողվերահսկողության խումբը ոչինչ չէր ձեռնարկում։ Ա. Հովհաննիսյանն ինքը եկավ քաղկոմ, ասաց, որ չի պատկերացնում իր և խմբի անելիքները։ Քաղկոմի տեսուչ Մ. Մազմանյանը զրուցեց նրա հետ, ապա եղավ դպրոցում, խորհրդակցեց դիրեկտորի ու կուսկազմակերպության քարտուղարի հետ։ Խմբի անդամներին տրվեցին կոնկրետ հանձնարարություններ։ Կարճ ժամանակ անց խումբն աշխուժացավ. ստուգեց դպրոցի գույքի ու գրենական պիտույքների պահպանության, կարգապահության ու սանիտարական վիճակը, դպրոցական ճաշարանի դրությունը, պատրաստեց ժողվերահսկողության ցուցափեղկ։ Խմբի նախագահը վերջերս իրենց գործունեության մասին պատմեց վերահսկողության քաղաքային ակտիվի ժողովում։

Վերը շարադրվածով չեն սահմանափակվում ժողվերահսկողության մեր քաղաքային կոմիտեի ձեռնարկումները տեղական խմբերի գործունեության բարելավման, նրանց նախաձեռնության զարգացման, ակտիվության ու հեղինակության բարձրացման ասպարեզում։ Ուզում եմ նշել մի իրողություն. մենք էական հաջողության չենք հասնի, եթե արժանի ձևով չգնահատենք վերահսկիչների ջանքերը, եթե նրանք չտեսնեն իրենց աշխատանքի արդյունքը, իրենց նկատմամբ հոգատարություն չզգան։

**Վերածնունդ** հուշագրության մեջ Լ. Ի. Բրեժնևը նշում է, որ մեծ մոլորություն է ենթադրել, թե իբր մարդուն պետք են միայն նյութական խթաններ։ Ո՛չ, սովետական մարդուն շատ բան է պետք՝ մեծ գործին իր մասնակցության գիտակցումը, աշխատանքում իրեն դրսևորելու ձգտումը, հպարտությունն իր վարպետությամբ, ընկերների հարգանքը, պատիվը։ Բայց այս բոլոր բարոյական պահանջմունքները պետք է դաստիարակել։

Մեզ մոտ աչքի ընկնող վերահսկիչները պարգևատրվում են պատվոգրերով, դիպլոմներով, նրանց լուսանկարները փակցվում են պատվո տախտակին, հայտնվում է գրավոր շնորհակալություն, կիրառվում են բարոյական ու նյութական խրախուսման այլ միջոցներ։ Առավել ակտիվ ժողվերահսկիչներն օգտըվում են երեքօրյա լրացուցիչ արձակուրդից։ Քիմիական, «Ավտոմատիկա» սարքաշինական և լուսատեխնիկական գործարանների ժողվերահսկողության խմբերը պարգևատրվել են ՀՍՍՀ ժողովրդական վերահսկողության կոմիտեի պատվոգրով։

Օգնել ժողվերահսկողության խմբերին, նրանց ցույց տալ արդյունավետ աշխատանքի ձևերն ու մեթոդները, բարձրացնել նրանց հեղինակությունը, ապահովել նրանց ակտիվ մասնակցությունը կուսակցության ու կառավարության որոշումների կենսագործմանը, քաղաքի սոցիալ-տնտեսական բազմաբնույթ հարցերի լուծմանը, նրանց դաստիարակել պահանջկոտության ու սկըզբունքայնության ոգով— ահա մեր ժողվերահսկողության քաղաքային կոմիտեի գործունեության հիմնական նպատակը։

# ՀԱՆՐԱՅԻՆ ԵՎ ՏՆԱՄԵՐՁ ՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԻՆՏԵԳՐԱՑՈՒՄԸ ՀՈՒՆԳԱՐԻԱՅՈՒՄ

Մ. Վ. ԲԱԼՈՅԱՆ, Մ. Ս. ԲԱՐԱՋԱՆՅԱՆ

**Վերջերս կուսակցական և սովետական մի խումբ աշխատողներ եղան Հունգարական Ժողովրդական Հանրապետությունում և ուսումնասիրեցին տնամերձ ու անձնական օժանդակ տնտեսությունների զարգացման փորձն այդ երկրում: Ստորև պատվիրակության անդամներ՝ ՀԿԿ Կենտկոմի գյուղբաժնի վարիչի տեղակալ Մ. Բալոյանը և ՀՍՍՀ գյուղատնտեսության մինիստրի տեղակալ Մ. Բարաջանյանը պատմում են իրենց տպավորությունների մասին:**

Գյուղատնտեսությունը մեծ դեր է խաղում Հունգարական Ժողովրդական Հանրապետությունում զարգացած սոցիալիստական հասարակարգ կառուցելու գործում: Սոցիալիստական գյուղատնտեսությունը Հունգարիայում հատկապես լայն թափ ստացավ կոլեկտիվացումն ավարտելուց հետո (1961 թ.), երբ խոշոր սոցիալիստական տնտեսությունները լիովին դրսևորեցին իրենց առավելություններն ու հնարավորությունները: Հունգարական սոցիալիստական բանվորական կուսակցության XII համագումարին տված զեկուցման մեջ, բնութագրելով գյուղատնտեսության վիճակը, ՀՍԲԿ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Յա. Կադարն ասաց. «Մենք կարող ենք խոսել սոցիալիստական հիման վրա արագընթաց զարգացում ապրող հունգարական գյուղատնտեսության հաջողությունների մասին: Սոցիալիստական վերակառուցմանը նախորդած ժամանակաշրջանի համեմատությամբ գյուղատնտեսությունը, ավելի փոքր հողատարածությամբ և զբաղվածների պակաս քանակով, երկրին տալիս է 61 տոկոսով ավելի արտադրանք»:

1980 թվականի տվյալներով երկրում կային 1.338 գյուղատնտեսական արտադրական կոոպերատիվ և 131 պետական տնտեսություն: Տնամերձ տնտեսությունների հետ մեկտեղ, որոնք կոոպերատիվի բաղկացուցիչ մասն են, նրանք տվել են գյուղատնտեսական արտադրանքի ավելի քան 90 տոկոսը, իրենց տրամադրության տակ ունենալով գյուղատնտեսական հողատարածությունների մոտ 94 տոկոսը: Պետության նյութական և այլ կարգի օգնության շնորհիվ արտադրական կոոպերատիվները և պետտնտեսությունները ամրապնդվեցին տնտեսապես և կազմակերպորեն, խոշոր հաջողությունների հասան բնակչությանը գյուղատնտեսական մթերքներով, իսկ արդյունաբերությանը՝ հումքով ապահովելու գործում: Բավական է նշել, որ հացահատիկի արտադրությունը 1970 թվականի 7,5 մլն տոննայի դիմաց 1980 թվականին կազմեց 13,7 մլն տոննա կամ մեկ շնչի հաշվով արտադրվեց 13 ցենտներ: Այս ցուցանիշով Հունգարիան այժմ աշխարհում զբաղեցնում է երրորդ տեղը (Կանադայից և Ավստրալիայից հետո), եգիպտացորենի արտադրությամբ՝ երկրորդ տեղում է (ԱՄՆ-ից հետո): Եթե 60-ական թվականներին ՀԺՀ-ը հացահատիկ էր ներմուծում, ապա այժմ լրիվ բավարարում է ինչպես հացահատիկի, այնպես էլ բանջարեղենի, խաղողի, պտուղների, բոստանային և բուսաբուծական այլ մթերքների սեփական պահանջները:

Զարգացած բուսաբուծության հետ մեկտեղ Հունգարիան ունի բարձր մթերատու անասնաբուծություն, 6,7 մլն հա գյուղատնտեսական հողատեսքերի դիմաց երկիրն ունի մոտ 2 մլն գլուխ խոշոր եղջերավոր անասուն (որից 760—800 հազարը՝ կով), 7—8 մլն գլուխ խոզ, 2,6—2,8 մլն գլուխ ոչխար, 43—44 մլն թև թռչուն: Այսպիսով, գյուղատնտեսական հողատեսքերի 100 հա հաշվով բաժին է ընկնում 61 պայմանական գլուխ (խոշոր եղջերավոր անասունների վերածած, առանց ձիերի): Դա մի քանի անգամ բարձր է, քան միջինը ՍՍՀՄ-ում:

ՀԺՀ գյուղատնտեսությունը խոշոր հաջողությունների է հասել անասնաբուծական մթերքների արտադրության բնագավառում: Այժմ այստեղ գյուղատնտեսական հողատեսքերի 100 հա հաշվով տարեկան արտադրվում է 298 ց ապրանքային միս (կենդանի քաշով): Համեմատության համար նշենք, որ դա մոտ 3,7 անգամ բարձր է, քան մեր հանրապետությունում: Միայն վերջին 10 տարում մսի արտադրությունը Հունգարիայում ավելացել է 50 տոկոսով: Նույնը կարելի է ասել անասնաբուծական մյուս մթերքների մասին: Բնակչության մեկ շնչի հաշվով արտադրվում է 220 լիտր կաթ, 420 հատ ձու: Այս ամենը հնարավորություն է ընձեռում տարեցտարի ընդլայնելու անասնաբուծական մթերքների, այդ թվում և մսի արտահանումը:

Վերջին տարիների տվյալներով, բավական բարձր է պարենային մթերքների սպառումը երկրում: Մեկ շնչի հաշվով սպառվել է 72 կգ միս, 30 կգ յուղ և ճարպ, ինչպես նաև 155 լիտր կաթ, 350 հատ ձու, 34 կգ շաքար, 63 կգ կարտոֆիլ, 86 կգ բանջարեղեն և 70—80 կգ մրգեղեն:

Գյուղատնտեսության այդ հաջողությունները Հունգարական սոցիալիստական բանվորական կուսակցության ճիշտ ագրարային քաղաքականության, կազմակերպչական մեծ աշխատանքի արդյունք են: Գյուղատնտեսության զարգացման ասպարեզում առաջատար դերը պատկանում է խոշոր սոցիալիստական ձեռնարկություններին, որոնք ապահովում են ընդհանուր արտադրանքի 65—70 տոկոսը, իսկ ապրանքային արտադրանքի՝ ավելի մեծ մասը: Բարձր է գյուղատնտեսության ինտենսիվացման մակարդակը: Գյուղատնտեսական հողատեսքերի 100 հա հաշվով արտադրության հիմնական միջոցների արժեքը կազմում է մոտ 240 հազար ռուբլի: Դա զգալիորեն ավելի է, քան մեր հանրապետության համապատասխան ցուցանիշը:

Նշանակալի են մեր հանրապետության մրցակից Դյոր-Շոպրոնի մարզի գյուղատնտեսության ձեռք բերած նվաճումները: Այստեղ գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը և անասունների մթերատվությունը մոտ 10 տոկոսով ավելի բարձր են, քան երկրի միջինը: Մարզի բնակչությունը 430 հազար մարդ է: Գյուղատնտեսությունն օգտագործում է 238 հազար հա հողատարածություն: Կոոպերատիվների թիվը 71 է (որից մեկը ձկնորսական), պետական տնտեսություններինը՝ 5: Խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը հասնում է 82,6 հազարի, խոզերինը՝ 430 հազարի: Բնական պայմանները գյուղատնտեսության համար հիմնականում նպաստավոր են. հողը բերրի է, տեղումների քանակը կազմում է 800—900 մմ: Գյուղատնտեսության ինտենսիվացման շնորհիվ մարզում 1980 թ. մեկ հեկտարից ստացվեց 52 ց ցորեն, 60 ց եգիպտացորենի հատիկ, 400-ական ցենտներ շաքարի ճակնդեղ և սիլոսացու եգիպտացորեն, 300 ց առվույտի կանաչ զանգված: Մարզի տնտեսություններում մեկ կովից ստանում են 3.600 լիտր կաթ, խոշոր եղջերավոր անասունները սպանդի են հանձնվում 500—600, խոզերը՝ 100—110 կգ քաշով:

Հունգարիայի գյուղատնտեսության հաջողությունները լենինյան կոոպերատիվ պլանի սկզբունքների, սոցիալիստական երկրների փորձի կիրառման, սեփական պահանջների և տեղական պայմանների ճիշտ զուգակցման արդյունք են: Գլխավոր դերը հատկացնելով գյուղատնտեսության հանրային սեկտորին,

ՀՍԲԿ-ն և ժողովրդական իշխանությունը մեծ հոգատարություն են դրսևորում նաև կոոպերատիվների անդամների անձնական տնամերձ տնտեսության, ինչպես նաև պետական տնտեսությունների աշխատողների, քաղաքների և ավանների բանվոր-ծառայողների օժանդակ տնտեսության զարգացմանը։ Երկրում առկա են մոտ 158 հազար անհատական տնտեսություններ (մենատնտեսներ)։ Տնտեսագիտական գրականության մեջ բոլոր այդ տիպի տնտեսությունները երբեմն միացվում են մեկ հասկացության ներքո՝ մանր տնտեսություններ։

ՀՍԲԿ-ի ճկուն ագրարային քաղաքականությունը մշակվեց դեռևս ՀՍԲԿ IX համագումարում և հետագայում զարգացվեց X, XI և XII համագումարներում։ Ընդունվել են հունգարական կառավարության համապատասխան որոշումներ։ Այսպես, ՀԺՀ Մինիստրների խորհրդի 1976 թ. մարտի 16-ի «Տնամերձ տնտեսության զարգացման մասին» որոշման մեջ ասված է, որ անհրաժեշտ է օգնություն ցույց տալ տնամերձ և օժանդակ տնտեսություններում արտադրության զարգացմանը՝ որպես հանրորեն օգտակար գործունեության։ Տնամերձ և օժանդակ տնտեսատերերը պետք է վստահ լինեն արտադրության և իրացման հեռանկարի հանդեպ։ Խոշոր տնտեսություններն ու մթերող կազմակերպությունները պետք է փոխշահավետության հիման վրա ավելի սերտորեն համագործակցեն տնամերձ և օժանդակ տնտեսությունների հետ՝ արտադրության կազմակերպումը բարելավելու նպատակով։

Անցած տարիների արդյունքները ցույց են տալիս, որ կուսակցության այս կուրսը հաջողությամբ իրականացվում է։ Ի դեպ, դրա մասին է վկայում նաև օգտագործվող հողատեսքերի կառուցվածքը. տնամերձ տնտեսությունները զբաղեցնում են 510 հազար հա կամ ընդհանուր հողատարածության՝ 7,6 տոկոսը, իսկ օժանդակ գյուղատնտեսական տնտեսությունները՝ 302 հազար հա կամ 4,5 տոկոսը։ Այսպիսով, մանր տնտեսությունների հողատարածությունը կազմում է ընդհանուր հողատարածության 12,1 տոկոսը (առանց մենատնտեսների)։ Տնամերձ և օժանդակ տնտեսություններին բաժին է ընկնում երկրի վարելահողերի 8,9 տոկոսը, մարգագետինների և արոտավայրերի՝ 3,7, պտղատու այգիների և բանջարանոցների՝ 57,3 և խաղողի այգիների՝ 46,2 տոկոսը։ Ընդ որում տնամերձ հողամասը իր որակով չի տարբերվում տնտեսության հողերից և շատ դեպքերում գտնվում է նույն հողամասում։ Օրինակ, Շոպրոնի շրջանի Խեդկյո գյուղի «Ֆերտեմենտի» կոոպերատիվի անդամների տնամերձ հողամասերը կազմում են 260 հա, որտեղ մշակվում են 95 հա սոխ, 53 հա գազար, 16 հա կանաչեղեն, 32 հա կակաչ և 64 հա այլ դաշտային կուլտուրաներ։ Տնամերձ հողամասերը գտնվում են գյուղից ոչ հեռու և հիմնականում մշակվում են տնտեսության մեքենաներով, իսկ ձեռքի աշխատանքները կատարում են տվյալ ընտանիքի անդամները։

Կոոպերատիվի յուրաքանչյուր անդամ կարող է ունենալ 6.400 քմ տնամերձ հողամաս։ Եթե ընտանիքում աշխատում են 2—3 մարդ, տնամերձ հողամասը համապատասխանաբար կազմում է 1,3—1,9 հա։ Հողը հատկացվում է այն պայմանով, որ աշխատողը բարեխղճորեն մասնակցի տնտեսության աշխատանքներին, տղամարդը տարեկան ոչ պակաս 1.500 ժամ, իսկ կինը՝ 1.000 ժամ։ Ավելի քիչ տնամերձ հողամաս է տրամադրվում կենսաթոշակառուներին, ինչպես նաև գյուղատնտեսությամբ զբաղվել ցանկացող բանվորներին և ծառայողներին։

Բանն այն է, որ արդյունաբերությունում աշխատող բանվորների զգալի մասը կապ է պահպանում գյուղի հետ։ ՀՍԲԿ Դյոր-Շոպրոնի մարզային կոմիտեի առաջին քարտուղար ընկեր Բելա Խարին զրույցի ժամանակ նշեց, որ մարզի արդյունաբերական բանվորների 40 տոկոսը սերում են գյուղից։ Նրանց համար պայմաններ են ստեղծվում ունենալու օժանդակ անձնական տնտեսություն։ Ընդ որում չօգտագործվող հողը երբեմն տրամադրվում է վարձակալական հիմունքներով։ Հողի մի մասը գյուղացիների սեփականությունն է։ Հիմնականում այն ընդգրկվում է ցանքաշրջանառության մեջ, և աստիճանաբար կոոպերատիվներն այդ հողը գնում և միացնում են հանրային հողատարածություններին։ Ինչպես տեսնում ենք, Հունգարիայում կարելի է հանդիպել տնա-



մերձ ու օժանդակ հողամասի օգտագործման և սեփականության զանազան ձևերի։

ՀՍԲԿ Կենտկոմի մարտյան (1978 թ.) պլենումը նշեց, որ կուսակցությունը հավանություն է տալիս անձնական աշխատանքի և ընտանիքի անդամների աշխատանքի վրա հիմնված տնամերձ տնտեսության զարգացմանը։ Դա նշանակում է, որ տնամերձ հողամաս մշակելիս բացառված է ուրիշի աշխատանքի շահագործման հնարավորությունը։ Յուրաքանչյուր ընտանիք (իսկ Հունգարիայում տարբեր տիպի անձնական հողամասեր ունեն մոտ 1,8 մլն ընտանիքներ), այնքան հողամաս ունի և այնքան անասուն, որքան հնարավոր է մշակել կամ խնամել ընտանիքի անդամների միջոցով։

Տնամերձ և օժանդակ անձնական տնտեսություններն ավելի մեծ տեսակարար կշիռ ունեն Հունգարիայի անասնաբուծության մեջ։ Վերջին տարիների տվյալներով, դրանց բաժինը խոշոր եղջերավոր անասունների, խոզերի, ոչխարների և թռչունների գլխաքանակում կազմում է համապատասխանաբար՝ 27,5, 50,7, 12 և 74,3 տոկոս։ Ըստ այդմ էլ բարձր է անձնական օժանդակ տնտեսությունից ստացվող արտադրանքի բաժինը գյուղատնտեսական մթերքների ընդհանուր արտադրության մեջ։ Բանջարեղենի գծով այն կազմում է մոտ 47, մրգեղենի՝ 51, խաղողի՝ 45 տոկոսը։ Տավարի մսի (սպանդանոցային քաշով) մոտ 21 տոկոսը, խոզի մսի՝ 52, թռչնինը՝ 36, կաթի՝ 32 և ձվի՝ 62 տոկոսը ստացվում է անձնական տնտեսություններից։ Ընդ որում ստացված արտադրանքի մոտ կեսն օգտագործվում է ընտանիքի սեփական կարիքները բավարարելու նպատակով, իսկ մնացածը իրացվում է որպես ապրանքային արտադրանք։

Հունգարացի ընկերները, մասնավորապես ընկեր Բելա Խարին, նշում էին, որ չի կարելի թերագնահատել անձնական տնամերձ և օժանդակ տնտեսության հնարավորությունները։ Առանց դրա, ինչպես ցույց տվեց վաթսունական թվականների փորձը, դժվար թե ապահովվեր սննդամթերքի առատությունը։ Զարգացնելով տնամերձ և օժանդակ անձնական տնտեսությունը և ապահովելով հանրային տնտեսության հետ դրա սերտաճումը, կուսակցությունն ու կառավարությունը ելնում էին նաև այն բանից, որ տնամերձ և օժանդակ անձնական տնտեսությունը հնարավորություն է ընձեռում բարձր արդյունավետությամբ օգտագործել եղած բակային կառուցվածքները։ Իսկ դրանց թիվը, ինչպես մենք համոզվեցինք տեղում, շատ է։ Մի փոքր վերանորոգելուց կամ վերակառուցելուց հետո դրանցում միաժամանակ կարելի է պահել 5—6 կով, աճեցնել 80—100 խոզ, պահել 800—1.000 թև հավ և այլն։ Հունգարական տնտեսագետների հաշվարկով, այդքան շենքեր կառուցելու համար կպահանջվեր 150 մլրդ ֆորինտ, որը հավասար է գյուղատնտեսության մեջ 5 տարվա կապիտալ ներդրումներին։ Այսպիսով, տնտեսվեցին զգալի չափերի հասնող կապիտալ ներդրումներ։ Բացի այդ, ապահովվեց մանր հողակտորների արդյունավետ օգտագործումը, որոնք ցրվածության, անհարմար դասավորության և այլ պատճառներով չէին կարող օգտագործել հանրային խոշոր տնտեսությունները։

Տնամերձ և օժանդակ անձնական տնտեսությունում բարձր արդյունավետությամբ են օգտագործվում աշխատանքային ռեսուրսները։ Ըստ հաշվումների, դրանցում ծախսվում է 2 մլրդ աշխատաժամ, որը համազոր է 300—320 հազար աշխատունակ մարդու աշխատանքին։ Այդ աշխատանքը երկրի ազգային եկամտի լրացուցիչ աղբյուր է, որը նպաստում է ազգաբնակչության կենսամակարդակի բարձրացմանը, այն միաժամանակ աճող սերնդի մոտ սեր է պատվաստում գյուղատնտեսական աշխատանքի նկատմամբ։

Մի հանգամանք ևս։ Անասնաբուծության և բուսաբուծության որոշ ճյուղեր շատ աշխատատար են, չնայած պահանջում են ոչ մեծ տարածություն, օրինակ, սագի մսի և լյարդի արտադրությունը, ճագարի և աղավնու բազմացումը, հատապտղի արտադրությունը և այլն։ Այդ պահանջներին համապատասխանում է անձնական փոքր տնտեսությունը։ Վերջապես, տնամերձ և օժանդակ տնտեսությունում գոյանում են տարբեր մնացուկներ, որոնք առանց կորստի և բարձր արդյունավետությամբ օգտագործվում են տեղում։

Կյանքը համոզիչ կերպով ցույց է տալիս, որ անձնական օժանդակ տնտեսությունը, նպաստելով երկրում գյուղատնտեսական մթերքների առատության ստեղծմանը, որևէ ձևով չի թուլացնում հանրային տնտեսությունը։ Մեր այցելած բոլոր տնտեսություններում (իսկ մենք եղանք 7 կոոպերատիվներում, ծանոթացանք 13 անձնական տնտեսությունների) չհանդիպեցինք անձնական և հասարակական շահերի հակադրման որևէ փաստի։ Ընդհակառակն, անձնական տնտեսությունների աշխատունակ տերերն ու ընտանիքի մյուս անդամները կոոպերատիվի ակտիվ և բարեխիղճ աշխատողներ են։ Կոոպերատիվի բոլոր անդամները, սկսած նախագահից և կուսկազմակերպության քարտուղարից մինչև շարքային աշխատողը, մեծ պատասխանատվությամբ են վերաբերվում իրենց պարտականություններին։ Մենք համոզվեցինք, որ Հունգարիայում գործում է անձնական և հանրային տնտեսության ներդաշնակ զարգացման մի կատարյալ համակարգ։ Այն համակողմանիորեն հաշվի է առնում ժողովրդական տնտեսության շահերը, կարգավորում է արտադրության արտադրանքի, իրացման ու պահպանման, տնտեսություններին սերմերով, կերով և մեքենաներով ապահովելու հարցերը։ Տնամերձ և օժանդակ անձնական տնտեսությունները Հունգարիայում մեկուսացված չեն խոշոր սոցիալիստական տնտեսություններից։ Այստեղ իրականացված է դրանց յուրօրինակ սերտաճումը և առաջինները փաստորեն դարձել են կոոպերատիվների և պետական տնտեսությունների յուրահատուկ արտադրական բաժանմունքները։

Տնամերձ տնտեսությունը և կոոպերատիվը տարեսկզբին կնքում են պայմանագիր։ Մինչև պայմանագիր կնքելը անձնական տնտեսությունն ընտրում է ցանկացած ճյուղը, բայց պայմանագիրը կնքելուց հետո իրավունք չունի այն փոխելու, քանի որ տվյալ մթերքն արդեն հաշվի է առնվում պլանային փաստաթղթերում։ Նկատի ունենալով տավարաբուծության և բանջարաբուծության զարգացման շահերը, հարկման ժամանակ հաշվի չի առնվում այդ ճյուղերից ստացված եկամուտը։ Հատուկ որոշումներով խրախուսվում են երկարաժամկետ պայմանագրերը։ Եթե տնամերձ տնտեսությունը պարտավորվում է կովեր պահել, ապա առաջին կովի համար միանվագ ստանում է 2,5—3 հազար, իսկ երկրորդ և յուրաքանչյուր հաջորդ կովի համար՝ 5—6 հազար ֆորինտ պետական նպաստ (դոտացիա)։ Նման արտոնություններ են սահմանված նաև խոզաբուծության համար։ Տարբեր նյութեր, անասունի և թռչնի մատղաշը կոոպերատիվը տնամերձ տնտեսությանը վաճառում է գնման գներով, իսկ տրակտոր, ավտոմեքենա տրամադրում է ինքնարժեքով, հանելով վերադիր ծախսերը։

Լրիվ ինտեգրացման դեպքում տնամերձ տնտեսությանը հատկացվում են անհրաժեշտ ու թանկարժեք տեխնոլոգիական սարքավորումներ ու նյութեր (սինթետիկ թաղանթ, վանդակներ և այլն), տրամադրվում են մատղաշ, կեր, անասնաբուժական ծառայություններ և այլն։

Տնամերձ և օժանդակ տնտեսության գործերով զբաղվում են ազատված աշխատողներ կամ հատուկ մարմիններ։ Կոոպերատիվի և պետական տնտեսության կարգը սահմանելու համար հաշվի է առնվում անձնական տնտեսության արտադրանքի արժեքի 50 տոկոսը։ Դա բարձրացնում է հանրային տնտեսության ղեկավարության և մասնագետների շահագրգռվածությունը՝ դրա զարգացման գործում, քանի որ անդրադառնում է նրանց աշխատավարձի վրա։

Տնամերձ տնտեսությունները ապրանքային արտադրանքն իրացնում են հիմնականում կոոպերատիվի կամ այսպես կոչվող ԱՖԵՍ-ի միջոցով, իսկ օժանդակ անձնական տնտեսությունները՝ հիմնականում ԱՖԵՍ-ի միջոցով։ Ընդորում քաղաքացիները ցանկության դեպքում կարող են իրենց մթերքը վաճառել նաև ազատ շուկայում, բայց գերադասում են իրացնել նշված կազմակերպությունների միջոցով։ Բանն այն է, որ իրացման գները, այդ թվում մսի, կաթի և այլնի, պետական կամ կոոպերատիվ ցանցում և ազատ շուկայում չեն տարբերվում։ Առհասարակ գների սիստեմը ՀԺՀ-ում ճկուն է և արագորեն հաշվի է առնում կոնյունկտուրան։

ԱՖԵՍ-ների գործունեությանն արժե անդրադառնալ ավելի հանգամանորեն։ Մենք այցելեցինք ԱՖԵՍ-ին պատկանող Կապուվարի միսկոմբինատ, որն



ունի 600 բանվոր, սպասարկում է 8.000 անդամների (հիմնականում օժանդակ անձնական տնտեսություններ) և 8 կոոպերատիվների տնամերձ տնտեսությունների։ Մուտքի անդամավճարը 500 ֆորինտ է։ Ի՞նչ է անում ԱՖԵՍ-ը։ Նախ, ելնելով պայմանագրերից, տնտեսություններին տրամադրում է բանջարեղենի սերմեր, որոշ տեսակի անասնակեր, այլ նյութեր, իսկ հիմնականը՝ պարտավորվում է իրացնել արտադրանքը։ Մթերված բանջարեղենը ԱՖԵՍ-ի ձեռնարկություններում լվացվում, մաքրվում, հասցվում է պահանջվող ստանդարտի և հանձնվում համապատասխան խանութների։ Անասունները մորթվում են, միսը իրացվում կամ վերամշակվում է։ Վերամշակված արտադրանքը (ազգային երշիկներ, վետչինա, պահածոներ) իրացվում է երկրում կամ արտահանվում։

ԱՖԵՍ-ը տնտհաշվարկային կազմակերպություն է։ Այն հատուցում է կատարված ծախսերը և ապահովում մոտ 3,3 տոկոսի շահութաբերություն։ Չի ձգտում բարձր շահութաբերության փայատերերի, այսինքն՝ օժանդակ և տնամերձ անձնական տնտեսության հաշվին. Նրա նպատակն է լինել միջնորդ անձնական արտադրողի և սպառողի միջև։ Ինչ-որ գծերով հունգարական ԱՖԵՍ-ը հիշեցնում է մեր կոոպառը։

Ուսումնասիրեցինք ԱՖԵՍ-ի սպասարկած մի քանի անձնական տնտեսություններ։ Վեսկենե գյուղի կոոպերատիվի մի տնամերձ խոզաբուծական տնտեսությունում զբաղված են երեք աշխատող, որից երկուսը կենսաթոշակառուներ են, մեկը՝ կոոպերատիվի անդամ։ Պահում են 10 մայր խոզ, միաժամանակ բտում են 86 գլուխ խոզեր և հանձնում 100—110-ական կգ քաշով։ Խոզանոցի մուտքի մոտ տեղադրված է պարզունակ մի հարմարանք հեղուկ կեր պատրաստելու համար։ Այդ հարմարանքից խողովակով կերը լցվում է ցեմենտե կերաբաշխիչը։ Ցամքարը անվճար տալիս է կոոպերատիվը և իր տրանսպորտով անվճար տեղափոխում է գոմաղբը։

Նույն կոոպերատիվի մեկ ուրիշ անձնական տնտեսությունում պահում են 800 տոհմային հավ։ Դրանց ձվի գինը մոտ 4 անգամ բարձր է սովորականից և վաճառվում է կոոպերատիվին ու անձնական տնտեսություններին, իսկ հավերը մեկ-մեկուկես տարեկան դառնալուց հետո իրացվում են մսի համար։

Տնամերձ անձնական տնտեսության մասին ավելի կոնկրետ պատկերացում ունենալու համար նկարագրենք դրանցից ևս մի քանիսը, որոնք արտադրանքը հանձնում են ոչ թե ԱՖԵՍ-ին, այլ հենց իրենց կոոպերատիվին։ Պաննոնհալմայի մոտ Եդյետերտեշ գյուղի կոոպերատիվի անասնաբուժակն իր անձնական տնտեսությունում պահում է 3 կով, յուրաքանչյուրը 5 հազար լիտր կաթնատվությամբ։ Աշխատում են ինքը, կինը և կենսաթոշակառու հայրը։ Բացի կովերից պահում է խոզեր, հավեր և բադեր, ունի խաղողի այգի։ Կովերը կթում է էլեկտրական փոքր ագրեգատով, գոմի մի անկյունում տեղադրվել է ծղոտակտրիչ մեքենա։ Կոոպերատիվի անձնական տնտեսություններն իրացնում են 6.000 տոննա խոզի միս՝ նույնքան, որքան և այդ նույն հանրային տնտեսությունը, 100 գլուխ խոշոր եղջերավոր անասուն, 60 տոննա ճագարի միս, 120 հազար լիտր կաթ։

Մեկ ուրիշ օրինակ։ Ջորնայի շրջանի Ֆահրադի Բադիենսաբատ գյուղի կոոպերատիվում 318 անդամներ կոոպերատիվի հետ պայմանագրեր ունեն խոզաբուծության գծով, 269-ը՝ տավարաբուծության։ Մեկ կիլոգրամ խոզի մսի (կենդանի քաշով) գնման գինը 32 ֆորինտ է, դրան գումարած մեկ ֆորինտ արդյունաբերական հավելավճարը։ Բացի դրանից, տնտեսությունը մեկ ֆորինտ էլ ստանում է պետությունից։ Խոշոր եղջերավոր անասունի առաջին կարգի 1 կգ միսը (կենդանի քաշով) իրացվում է 40 ֆորինտով, երկրորդ կարգի գինը 38 ֆորինտ է։ Կիրառվում են արդյունաբերական հավելավճարներ։ Կոոպերատիվի անձնական տնամերձ տնտեսությունները գյուղատնտեսական 100 հա հողատեսքերի հաշվով արտադրում են 26 տոննա միս, հանրային տնտեսությունը՝ 35։ Օժանդակ տավարաբուծական տնտեսություններից մեկը տարեկան հանձնում է 10—12 ցուլիկներ՝ 550—600-ական կգ քաշով և 25 խոզ՝ 120-ական կգ քաշով։ Մարդ ու կին՝ կոոպերատիվի անդամներ, տնամերձ տնտեսությամբ

զբաղվում են աշխատանքից ազատ ժամերին, նրանց օգնում են պատանի զավակները։ Բտման համար ցուլիկներ գնում են կովեր պահող տնտեսություններից։ Աճեցնում են նաև կակաչներ։ Տնամերձ տնտեսության զուտ եկամուտը 60 հազար ֆորինտ է։ Ամուսինները կոոպերատիվում վաստակում են տարեկան 70 հազար ֆորինտ։ Այսպիսով, ընտանիքի զուտ եկամուտը հասնում է 130 հազար ֆորինտի։ Դա հավասար է քաղաքում բարձր վարձատրվող ընտանիքի եկամտին։

Նման օրինակներ կարելի է շատ բերել, բայց այսքանն էլ բավական է՝ ցույց տալու համար, թե որքան մեծ հետաքրքրություն է ներկայացնում հունգարական փորձը։ Այդ մասին որոշակիորեն ասվեց ՍՄԿԿ XXVI համագումարում։ Համագումարի առաջադրած խնդիրը իր կոնկրետացումն ստացավ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1981 թ. հունվարի 8-ի «Քաղաքացիների անձնական օժանդակ տնտեսություններում գյուղատնտեսական արտադրանքի ավելացման լրացուցիչ միջոցառումների մասին» որոշման մեջ։ Հունգարական փորձը կիրառման իմաստով մեծ հետաքրքրություն է ներկայացնում նաև մեզ համար։ Եվ այս հարցում մենք պետք է հանդես բերենք ուշադիր ու ստեղծագործական մոտեցում, խստորեն հաշվի առնենք մեր կոնկրետ պայմանները, ռեզերվներն ու հնարավորությունները։

Վերցնենք թեկուզ տնամերձ տնտեսությունների կառավարման հարցը։ Կառավարման այդ օղակը Հունգարիայում գործում է շուրջ մեկուկես տասնամյակ։ Մեզ մոտ այն ստեղծվել է բոլորովին վերջերս։ Բնականաբար, տնամերձ տնտեսության հարցերով զբաղվող մասնագետները դեռ սովորելու շատ բան ունեն։ Բայց միայն նրանց ջանքերով այդ պրոբլեմը չի կարող լուծվել։ Անհրաժեշտ է, որ ղեկավար և մասնագիտական կադրերը ամենից առաջ հոգեբանորեն փոխեն վերաբերմունքը տնամերձ տնտեսությունների նկատմամբ։ Գյուղատնտեսության մասնագետները, ինչպես դա արվում է Հունգարիայում, տնամերձ տնտեսություններին պետք է վերաբերվեն որպես արտադրական մի տեղամասի, որի կարիքը զգում է երկիրը։ Այդ տեսակետից մեզանում անելիքները շատ են։ Դա վերաբերում է և՛ հողամասեր տրամադրելու, և՛ սերմերով, անասնակերով ապահովելու, տարբեր ծառայություններ մատուցելու, և՛ արտադրանքի իրացման հարցերին։ Յուրաքանչյուր նշված օղակ պետք է զարգացվի ու ամրապնդվի։

Մեր հանրապետության պայմաններում առավել նպատակահարմար է տնամերձ հողամասերում լայնորեն զարգացնել բուսաբուծությունը, հատկապես բանջարաբոստանային կուլտուրաների արտադրությունը։ Մեր շատ շրջաններում տնամերձ հողամասերում զբաղվում են բանջարաբուծությամբ, կարտոֆիլաբուծությամբ, պտղաբուծությամբ և խաղողագործությամբ։ Որոշ շրջաններում աճեցնում են նաև հացահատիկային և կերային կուլտուրաներ։ Մի կողմ թողնենք դեռ մշակության հարցը։ Անհրաժեշտ է նախ և առաջ արմատապես լուծել անհատական տնտեսություններում աճեցված բերքի իրացման հարցը։ Մենք երբեմն օգնում ենք միայն տրանսպորտով, այն էլ ոչ ամենուր։ Մինչդեռ անհրաժեշտ է տնամերձում արտադրված բուսաբուծական (և անասնապահական) արտադրանքի իրացումը կազմակերպել հանրային տնտեսությունների միջոցով։ Տնտեսապես նպատակահարմար է, որ տնամերձերում աճեցված արտադրանքի իրացմամբ զբաղվի հատուկ ծառայություն։ Պարտադիր չէ նոր ծառայություն ստեղծել։ Այն կարելի է իրականացնել Հայկոոպի համապատասխան ստորաբաժանումների միջոցով։ Հատուկ ուշադրությամբ պետք է ընտրվեն այդ բնագավառում աշխատող կադրերը։ Նրանց վերաբերմունքով է պայմանավորված՝ կամրապնդվի՞, թե՞ կարատավորվի անձնական տնտեսություններից մթերքներ գնելու գործը։ Նման ծառայությունը նախ և առաջ պետք է ստեղծվի հեռավոր շրջանների և գյուղերի անձնական տնտեսությունների արտադրանքն իրացնելու համար։ Առևտրական այդ կազմակերպությանը երկարատև վարկերի հաշվին անհրաժեշտ է տրամադրել պահեստներ, սառնարանային տնտեսություն, փոխադրամիջոցներ։ Այն պետք է ունենա նաև



փոքր արտադրական տեղամասեր՝ չիրացված արտադրանքը վերամշակելու համար։

Անձնական տնտեսություններում անասնաբուծության զարգացումն անհնար է առանց համապատասխան կերային բազայի։ Ցավոք, հանրապետության կոլտնտեսությունները և սովխոզները դեռևս հնարավորություն չունեն լրիվին բավարարելու անձնական տնտեսությունների պահանջը, բայց այս գործում, ըստ երևույթին, չեն օգտագործվում եղած բոլոր հնարավորությունները։ Մասնավորապես, լավ արդյունք կարող է տալ չօգտագործվող հողամասերը կոլտնտեսականներին և սովխոզների աշխատողներին տրամադրելը, պայմանով, որ կազմակերպվի ինտենսիվ կերարտադրություն և այդ կերի հաշվին պահվեն անասուններ, ինչպես դա նախատեսված է ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի վերոհիշյալ որոշումով։ Հետագայում հանձնվող մսի դիմաց նշված կատեգորիաների տնտեսություններին կարելի կլինի ավելացնել պետության կողմից տրվող օգնության ծավալը։ Միաժամանակ հարկ կլինի ավելացնել կերի վաճառքը կերային հանդակներ չունեցող բանվոր-ծառայողներին, համեմատաբար փոքր քաղաքներում։ Այստեղ էժան գներով կարող են ձեռք բերել նաև քաղաքային տնտեսության սննդաթափոնները։

Առավել հրատապ է մեր հանրապետությունում անձնական տնտեսություններից անասնաբուծական մթերքների մթերման գործի կարգավորումը։ Անհրաժեշտ է հաղթահարել մթերող կազմակերպությունների դանդաղկոտությունն ու նախաձեռնության պակասը և հասնել այն բանին, որ անասնապահական մթերքները մթերվեն անմիջականորեն արտադրության վայրում։ Հունգարիայում, օրինակ, համապատասխան կազմակերպությունները անձնական տնտեսության բակից են անասունը փոխադրում սպանդանոց։ Ոչ մի վեճ չի ծագում վաճառված անասունի քաշի վերաբերյալ։

Կարևոր խնդիր է մեզ մոտ բնակչությունից կաթի և թռչնի մթերման գործի բարելավումը։ Այդ նպատակով հարկ է ստեղծել համապատասխան ընդունման կետեր և հատկացնել փոխադրամիջոցներ։

Անձնական տնամերձ և օժանդակ տնտեսություններում բուսաբուծական և անասնաբուծական մթերքների արտադրության աճը կարելի է խթանել դրանց իրացման պայմանները բարելավելով։ Մթերողներն այստեղ շատ բան կարող են անել։ Նրանք կոչված են գործնականորեն պրոպագանդելու կուսակցության նոր կուրսը, անձնական տնտեսությունների հետ արտադրական, առևտրական և տնտեսական սերտ կապեր ստեղծելու, տոգորելու նրանց՝ իրենց աշխատանքի և՛ անձնական, և՛ հասարակական կարևորության գիտակցությամբ։

## Մարքսիստական գրականագիտության ակունքների մոտ

# ԲՈԼՇԵՎԻԿ ՀՐԱՊԱՐԱԿԱԽՈՍ-ԳՐԱԿԱՆԱԳԵՏԸ

ՌՈՒԶԱՆ ՆԱՆՈՒՄՅԱՆ
Բանասիրական գիտությունների թեկնածու

*ՀԱՅԱՍՏԱՆԻ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ակադեմիայի իսկական անդամ, գրականագետ-քննադատ Արտաշես Կարինյանը երեք քառորդ դար իր հասարակական-քաղաքական գործունեությամբ ու բեղմնավոր գրչով պայքարել է պրոլետարական հեղափոխության թշնամական ուժերի դեմ, պաշտպանել Հոկտեմբերի նվաճումները, նպաստել սոցիալիստական կարգերի ամրապնդմանն ու զարգացմանը։ Նրա քաղաքական, հրապարակախոսական և գրականագիտական-քննադատական հոդվածներն ու ուսումնասիրություններն ստեղծել են բազմակողմանի ընդգրկում ունեցող մի ժառանգություն, որն այսօր էլ շարունակում է հարստանալ հասարակական-գրական կարևոր հարցերի ուրույն մեկնաբանություններով։*

*XX դարի սկզբին կերպավորվում է հայ մարքսիստական գեղագիտական, գրականագիտական, քննադատական միտքը։ 1900 թ. «Տարազի» խմբագրությանն ուղղված նամակում երիտասարդ Ստ. Շահումյանը մատնանշում է գեղարվեստական գրականության և գրական քննադատության դերը հասարակական կյանքի երևույթների ճշմարտացի ուսումնասիրության բնագավառում։ 1902 թ. «Նովոե օբոզրենիե» թերթին ուղարկած մի գրախոսության մեջ նա ողջունում է Մ. Գորկու հետևորդներից Սկիտալեցի* Պատմվածքներ և երգեր *ժողովածուի «նոր և թարմ ուղղությունը», որը, զերծ լինելով վհատ և հուսալքող տրամադրություններից, ազատության կոչն էր հնչեցնում։*

*Ստ. Շահումյանը մշակեց նոր հայացք հայ դասական գրականության արժույթների, ինչպես և հասարակական մտքի ներկայացուցիչների պատմական դերի գնահատության վերաբերյալ։*

*Հայ մարքսիստական մտքի կերպավորման շրջանում նշանակալից երևույթ է Ստ. Շահումյանի ճառը Ղ. Աղայանի հոբելյանի առթիվ։ Սահմանազատելով դեմոկրատ գրողներին բուրժուական մտավորականությունից՝ Շահումյանը գնահատում է Աղայանի ժառանգությունը և իրեն՝ դեմոկրատ գրողին, որպես «բարոյական մաքրությամբ» օժտված քաղաքացու և գրական գործչի։ Բայց այն գրականությունը, գրում է նա, ինչպիսին նա կա այսօր, իր արժանիքներով հանդերձ, չի կարող հասարակական դեր խաղալ այժմ։ «Մեր կարծիքով,— հայտարարում է երիտասարդ Շահումյանը,— նա՝ ով ուզում է, որ հայ ժողովուրդը գրականություն ունենա՝ նա պիտի ամենից առաջ կռիվ հայտարարի այն պայմանների, քաղաքական այն կարգերի դեմ, որոնք արգելում են ժողովրդի, այդ հասարակական օրգանիզմի ազատ, բնական զարգացումը. Նա պիտի աշխատի այնպիսի պայմաններ ստեղծել, որ ժողովրդի միջից դուրս եկող մարդիկ— Րաֆֆիներն ու Շիրվանզադեներն անհատներ չլինեն, այլ խմբեր, մասսաներ։ Մի երկրում, որտեղ չկա խոսքի ու մտքի ազատություն, որտեղ ժողովուրդը շնորհիվ տիրող պետական քաղաքականության՝ աղքատ է ու տգետ և քաղաքակրթության բարիքները վայելելու արտոնությունը պատկանում է միայն փոքրաթիվ ապահով դասակարգին, որտեղ օրենքի տեղ տիրում է ցենզուրական կամայականություն,—* երբեք չի կարող իր կոչմանը ծառայող, հասարակական-ժողովրդական գրականություն *լինել» (Ստ. Շահումյան,* ԵԼԺ, *հ. 1, 1975 թ., էջ 35)։*

*Սոցիալ-դեմոկրատական խմբակներում ներգրավված Բաքվի գիմնազիայի աշակերտ Արտաշես Կարինյանը 1905 թվականին անլեգալ պայմաններում տպագրում է առաջին գրքույկը՝* Գրականություն և կյանք *վերնագրով։ Ռուսական հեղափոխական շարժմանը ոգեգրված 19-ամյա պատանին, հետևելով գրականագիտական մարքսիստական հայացքներին, հանդես է գալիս գրականության հասարակական դերի պաշտպանությամբ, գնահատելով հատկապես ռուս գրականության մեջ արտացոլված գրական նոր երևույթները։ Գրքույկը հիմնականում նվիրված էր Մ. Գորկու՝ նույն շրջանում լույս տեսած* Հովեկները *պիեսին։ «Մենք շատ սիրում էինք Մ. Գորկուն,— գրում է հետագայում Կարինյանն իր հուշերում,— Գորկու* Մրրկահավի երգից *մեջբերումներ էինք անում մեր թռուցիկներում»։*

*1906 թվականին «Մշակում» նույն վերնագրով տպագրված հոդվածում Կարինյանը քննում է «Զնանիե» ընկերության հրատարակած ժողովածուի 12-րդ գիրքը, ուր զետեղված են Գորկու ամերիկյան հասարակության ու ապրելակերպի քննադատությամբ հագեցած էտյուդները։*

*«Նովայա ժիզն» լրագիրը 1905 թվականի նոյեմբերին հրապարակում է Վ. Ի. Լենինի* Կուսակցական կազմակերպություն և կուսակցական գրականություն *վերնագրով տեսական ու գործնական ուղեցույց հանդիսացող գրական մանիֆեստը։ Ներկայացնելով գրականության կուսակցականության սկզբունքը՝ Լենինը հայտարարում է, որ գրական գործը պետք է դառնա համապրոլետարական գործի մի մասը։ Այս պահանջն ինքնին ուղենշում է գրականության գեղարվեստական ու ճանաչողական արժույթի համամարդկային նշանակությունը։ 1907 թվականին Ստ. Շահումյանի և Ս. Սպանդարյանի հիմնած «Կավկազսկի ռաբոչի լիստոկ» անլեգալ թերթի առաջին համարում զետեղվում են հատվածներ Լենինի* Կուսակցական կազմակերպություն և կուսակցական գրականություն *հոդվածից՝ համապատասխան մեկնություններով։*

*Դարասկզբի հասարակական քաղաքական բարդ իրադրությունն իր ուրույն անդրադարձումն է գտնում հայ գրականության մեջ։ Ռեալիզմի և ռոմանտիզմի կողքին նկատելի են դառնում գրական նորագույն հոսանքների ազդեցությունները։ Ռեալիզմն իր համակողմանի արտահայտությամբ շարունակում է զարգանալ Թումանյանի ստեղծագործություններում։*

*Թումանյանի խորաթափանց աչքը գրական մթնոլորտում նկատում է գաղափարապես հագեցած գրականագետ քննադատների նոր սերնդի ներկայացուցիչներին, որոնք ջանում էին ծխական միջավայրից հանել գրականությունը, դուրս բերելու համար այն լայն ասպարեզ։*

*Քննադատների այդ նոր սերնդի վրա, անշուշտ, իր ազդեցությունն է ունենում նաև հայ մարքսիստ քննադատների խոսքը։ 1911 թ. Շահումյանը Բաքվում հիմնադրում է «Նոր խոսք» երկշաբաթաթերթը։ Նույն թվականին սկսում է լույս տեսնել «Նոր կյանք»-ը։ Այս երկու պարբերականներում Ա. Կարինյանը հրապարակում է իր գրականագիտական հոդվածները հայ գրականության ընթացքի, ինչպես նաև առանձին հեղինակների մասին։ Մերժելով գրական քննադատության գռեհիկ-սոցիոլոգիական մեթոդը՝ նա քննադատում է գրողի աշխարհայացքը նեղ շրջանակների մեջ դիտելու և պիտակավորելու սկզբունքը։ Նրա կարծիքով անհնար է գտնել հասարակության մեջ բանաստեղծ, որի մոտ «չլինեն դասակարգային աշխարհայացքի որոշ հետքեր»։ Բայց դրանից պետք չէ եզրակացնել, թե «գեղարվեստի բոլոր գործիչները պիտի նետվեն զանազան նեղ վանդակներ և զարդարվեն որոշ մակդիրներով» (տե՛ս «Նոր խոսք», Բաքու, 1911, №№ 1—2, էջ 71)։*

*«Նոր խոսք»-ում արևմտահայ գրականության մասին գրած հոդվածաշա-*

րում Կարինյանը Սիամանթոյին և Վարուժանին գնահատում է որպես ազգային կյանքն արտացոլող բանաստեղծներ։ Սիամանթոն, գրում է նա, իր «սուբյեկտիվ հատկություններով» ևս մնում է բնորոշ ու հետաքրքրական մի հեղինակ տաճկահայ կյանքում և ինտելիգենտական որոշ շրջաններում։ Մեծ և խորունկ սիրով սիրում է իր հայրենիքը, «տառապող եղբայրներին»։ Նույնպիսի գնահատական է տալիս նաև Վարուժանի ստեղծագործությանը։

Վ. Բրյուսովի հրատարակած Հայաստանի պոեզիան ռուսերեն ժողովածուի առթիվ գրած քննական հոդվածում Կարինյանը մերժում է այն կարծիքը, թե Արևմուտքի ազդեցության հետևանքով արևմտահայ պոեզիան ամբողջովին կտրված է ժողովրդից. «Մի՞թե վերջապես տաճկահայ բանաստեղծության մեջ չեն եղել և չկան պոետներ,— հարց է տալիս քննադատը,— որոնց ստեղծագործության աղբյուրը ժողովուրդն է» («Պայքար», 1917, № 5)։ Եվ միանգամայն ճիշտ եզրակացնում է, որ հայ գրականության երկու հատվածներն էլ, իրենց վրա կրելով ազդեցություններ, հանդիսանում են նույն ժողովրդի հոգևոր մշակույթը, որի հողն ու զինանոցը բուն հայկական կյանքն է, հայոց ազգային իրականությունը, մշակութային հին ու հարուստ ավանդները։

«Նոր խոսք» և «Նոր կյանք» պարբերականներում Կարինյանը հայ գրականության ճանաչված դեմքերի՝ Ալ. Շիրվանզադեի, Գր. Զոհրապի, Վ. Փափազյանի ստեղծագործություններում ցույց է տալիս նրանց ներկայացրած հասարակական միջավայրը, ուր մարդիկ ողբում, զայրանում ու վրդովվում են, անկեղծ տանջանքով դիտում իրականության կոնտրաստները, դասակարգային ներհակությունները, քաղաքի մռայլ ու թշվառ բնակիչների հուսահատ կացությունը, միաժամանակ դառնում վերնախավերի շռայլ ու զեխ կյանքի, քաղաքի և ժամանակակից հասարակարգի քննադատներ, խարազանողներ ու «կարծես հրավիրում են բոլորին քանդել, ավերել ժամանակակից հասարակարգը»։

Հեղափոխական շարժման վերելքի տարիներին հիմնադրված «Պրավդա» բոլշևիկյան թերթում տպագրված լենինյան հոդվածներն իրենց ուղեցույց նշանակություն ունեցող դրույթներով կարևոր դեր են խաղացել նաև մշակութային հոսանքների, ինչպես և գրական երևույթների քննարկման համար։ Արտաշես Կարինյանը 1962 թ. գրած «Պրավդան» նախահոկտեմբերյան տարիներին ակնարկում հանգամանորեն անդրադառնում է այդտեղ զետեղված արվեստի ու գրականության պրոբլեմներին և գրական դեմքերին նվիրված հոդվածներին։ «Պրավդայում» բազում հոդվածներ են տպագրվել ռուս գրականության և հատկապես Մ. Գորկու դեմ ուղղված «արշավանքի» վերաբերյալ։

1955 թվականին հրատարակած Գրական արձագանքներ ժողովածուում Կարինյանը զետեղել է 1914 թ. «Պրավդայի» էջերում տպագրված հոդվածներից երեքը։ Առանձին տեղ է գրավում Ռեալիզմի վերածնունդը հոդվածը։ Այստեղ «Պրավդայի» թղթակիցը ցույց է տալիս 10-ական թվականների գրական շարժման տարբեր հոսանքների այն պայքարը, որի մեջ արդեն նկատելի էին դեկադենտների դիրքերի անկայունությունը և ռուս գրականության առողջ կենսական ուղղության՝ ռեալիզմի դիրքերի ամրապնդումը։ «Ավելորդ է ասել,— գրում է Կարինյանը,— որ հասարակական այդ բեկումը մեծագույն չափով կապված է բանվորական շարժման վերելքի հետ։ Պրոլետարիատը ռուս հասարակության միակ դասակարգն է, որ նորից ասպարեզի վրա է դնում կենսական խնդիրներ ու նպատակներ։ Եվ ահա հենց այսօր էլ ռեալիստ հեղինակները ստացել ու ստանում են հասարակական մեծ նշանակություն...» (Ա. Բ. Կարինյան, Ժողովուրդների եղբայրության դրոշի ներքո, էջ 104)։

«Ռեալիզմի վերածնունդը,— գրում է Կարինյանը,— կապված է բանվորական շարժման վերելքի հետ, ռեալիստ հեղինակներն այսօր ստանում են հասարակական մեծ նշանակություն։ Պտ. դեկադենտները կույր են ելնում վերակենդանացող ռեալիզմի դեմ, որովհետև գիտեն, որ ռեալիզմը բանվորական շարժման ուժի արտացոլումն է։ Դրանք զգում են, որ իրենց զզվելի «ստեղծագործվող լեգենդը» մարում ու անհետանում է պրոլետարիատի ստեղծագործվող կյանքի հանդեպ» (Նույն տեղը, էջ 105)։

1914 թ. «Պրավդայի» էջերում Կարինյանը տպագրում է գրախոսություն



Մ. Գորկու Իտալական հեքիաթների մասին։ Նա բարձր է գնահատում ռուս հեղափոխական գրողի հեքիաթների գլխավոր հերոսին՝ ժողովրդին, նրա ձըգտումները, հույզերն ու ապրումները, նրանց քննադատական վերաբերմունքը կյանքի մռայլ երևույթների և երազանքն ապագայի նկատմամբ։ «Մաքսիմ Գորկին հիրավի իր իդեալական հեքիաթների մեջ,— գրում է նա,— շատ անգամ հանդես է գալիս որպես նոր ճշմարտության քարոզիչ» (Նույն տեղը, էջ 106)։

Նույն թվականին «Պրավդայի» էջերում Ա. Կարինյանը գրախոսում է «Բանվորական գրադարան» մատենաշարով լույս տեսած Կարմիր մեխակներ, Բանվորի ալբոմ ալմանախները և այլ բրոշյուրներ։ Ալմանախների մասին խոսելիս գրախոսը բարձր է գնահատում Հ. Հակոբյանին, անդրադառնում է Նոր առավոտ պոեմին, որի մասին առաջին դրական խոսքն ասել էին Ստ. Շահումյանը և Ս. Սպանդարյանը։

«Պրավդայի» հավելված «Ռաբոչի» ամսագրում (1915, № 2) Կարինյանը գրախոսում է Մ. Գորկու խմբագրությամբ լույս տեսած Պրոլետարական գրողների ժողովածուն։ Այն նոր մոտիվները, գրում է նա, «այնքան անսովոր են մեր իրականության մեջ, այնքան վառ կերպով են արտահայտում ռուսական պրոլետարիատի երիտասարդական առույգ ու կենսախինդ տրամադրությունները, որ կազմում են ժամանակակից շրջանի ամենապայծառ և վեհ էջերից մեկը» (Նույն տեղը, էջ 7)։

Սովետական գրականագետները, անդրադառնալով նախահոկտեմբերյան «Պրավդայի» գրականագիտական հոդվածներին, գնահատել են Ա. Կարինյանի Ռեալիզմի վերածնունդը, Մ. Գորկու հեքիաթները, Պրոլետարական գրողների ժողովածուի մասին հոդվածները և հատկապես Ռեալիզմի վերածնունդը հոդվածը, որը բնութագրվել է «որպես անչափ նշանակալից գրական-հասարակական վավերագիր»։

Բաքվի կոմունայի շրջանում Ա. Կարինյանը նշանակվում է Բաքվի բանվորների, զինվորների դեպուտատների սովետի «Տեղեկագրի» գլխավոր խմբագիր։ Այստեղ բազմաթիվ քաղաքական հոդվածների հետ Ստ. Շահումյանի հանձնարարությամբ նա տպագրել է Ն. Գ. Չերնիշևսկին հեղափոխական իշխանության խնդիրների մասին հոդվածը, նրանից վերցրած մի նշանակալից բնաբանով. «...Չկա ոչինչ ավելի կորստաբեր մարդկանց համար, թե՛ մասնավոր և թե պետական կյանքում, քան այն, երբ գործում են անվճռականորեն, հրելով իրենցից բարեկամներին և երկյուղ կրելով թշնամիների առաջ»։

Հայաստանում սովետական կարգերի հաստատումից հետո 1921 թ. Ա. Կարինյանը գալիս է Հայաստան։ Պետական քաղաքական բուռն գործունեության հետ նա շարունակում է մասնակցել կուլտուրական շինարարությանը և սովետական գրականության ստեղծման համար սկսված պայքարին։ Մերժելով պրոլետ-կուլտական և գռեհիկ սոցիոլոգիական քննադատական ուղղությունը, Կարինյանը հետևողականորեն հանդես է գալիս գրական-դասական արժույթների պաշտպանությամբ, հոդվածներով և գրախոսականներով ակտիվ մասնակցելով սովետահայ գրականության զարգացմանը։

Ե. Չարենցը, որ արդեն համաժողովրդական ճանաչում գտած բանաստեղծ էր և գրել էր Դանթեական, Աթիլլան, Սոմա, Ամբոխները խելագարված, Երգ ժողովրդի մասին, Դեպի ապագան, Չարենց-Նամե և այլն, 1922-ին Ազատ Վըշտունու և Գ. Աբովի հետ հրապարակեց Երեքի դեկլարացիա գրական մանիֆեստը, որում ժխտվում էր անցյալի գրական ավանդույթները՝ նորը ստեղծելու պահանջով։ Ա. Կարինյանը Պ. Մակինցյանի, Հ. Սուրխաթյանի հետ հանդես է գալիս այդ «Դեկլարացիայի» քննադատությամբ, իր իսկ՝ Չարենցի ստեղծագործության մեջ նշելով կոնկրետ Տերյանից կրած բեղմնավոր ազդեցության փաստը։

1926 թվականին Ա. Կարինյանը հրատարակեց Չարենց վերնագիրը կրող գրական ակնարկը։ Այդ օրերին, երբ ծավալվում էին վեճերը Չարենցի ստեղծագործության շուրջը, Կարինյանը, գնահատելով նրա անցած ուղին, նշում էր. ճիշտ է, որ նա անհրաժեշտաբար ենթարկվել է տիրող գեղարվեստական հո-

սանքների ազդեցությանը, «Եթե այսօր էլ նա հարեր այդ ուղղություններին, դա կլիներ իհարկե անախրոնիզմ», բայց անցյալում և անցյալի ինքնահատուկ պայմաններում դա բնական և հասկանալի մի «թեքում» էր» (Եղիշե Չարենց, 1972, էջ 29), իսկ այժմ, նշում է Կարինյանը, «Նա տալիս է հեղափոխական մեծ շարժման պատկերը և ժողովրդական այդ լայն հորձանքի հեռավոր արձագանքի նկարը Արևելքի սահմանագծի վրա ընկած նայիրյան աշխարհի մայրաքաղաքում... Նա կոչի է կանչում թմբրածներին և առույգ ձայնով հեղափոխության ներբողն է երգում... Դա է նոր Չարենցի, այժմյան Չարենցի ստեղծագործության հիմնական ներվը» (Նույն տեղը, էջ 36):

1955 թվականին տպագրված ակնարկում, ինչպես և Չարենցի մասին Եղիշե Չարենցի ստեղծագործական ուղին հուշերում Կարինյանը կերտում է չարենցյան կերպարի այն «բնորոշ գծերը», որոնք ամուր թելերով կապում են նրան «սովետական հումանիստական և հեղափոխական պոեզիայի առաջավոր ներկայացուցիչների հետ» (Ա. Բ. Կարինյան, Ժողովուրդների եղբայրության դրոշի ներքո, էջ 486):

Այս ստվարածավալ հատորում Ա. Կարինյանը զետեղել է հայ դասական հեղինակների մասին տարբեր ժամանակներում ստեղծած գրական դիմանկարների շարք՝ Թումանյան, Րաֆֆի, Մամուրյան, Նալբանդյան: Թումանյանը ներկայացվում է որպես ազգամիջյան կոտորածների շրջանում խաղաղության դրոշակակիր, ապա ցույց է տրվում նրա առաջավոր դերը հայ ժողովրդի ճակատագրի լուծման հարցում, նրա վերաբերմունքը բոլշևիկյան Ռուսաստանի նկատմամբ: Բայրոն և Թումանյան հոդվածում, յուրովի մեկնաբանելով դեկաբրիստներից մինչև Գորկի բայրոնական մոտիվների ներթափանցումները ռուսական պոեզիայում, հոդվածագիրը Թումանյանի թարգմանություններում շեշտում է ընդվզման ու բողոքի սեփական արձագանքները: Թումանյանը համաշխարհային պոեզիային ևս մոտենում էր յուրահատուկ դիրքերից, ուստի և «Ամենևին զարմանալի չէ, որ Բայրոնը նրա համար չէր կարող մնալ սոսկ «համաշխարհային վշտի վերացական բանաստեղծ: Բայրոնի երգերն այդ պատճառով դառնում են կենդանի երգեր, շատ հարազատ անգամ «գեղջուկ» ժողովրդի «ցավերը» երգող իմաստասեր պոետի սրտին ու հոգուն» (Նույն տեղը, էջ 118—119):

Հետաքրքրական են և Կարինյանի հոդվածները ռուս գրականության վերաբերյալ: Նորօրյա ասպեկտներով է նա գնահատել Պուշկինին, Գոգոլին, Նեկրասովին, Չեխովին, Կորոլենկոյին, Գորկուն և ուրիշ մեծերի: Առանձին հետաքրքրություն են ներկայացնում «Պրավդան» նախանոկտեմբերյան տարիներին քաղաքական և գրական բնույթի ակնարկը, նրա այն գործերը, որոնք վերաբերում են սովետական կարգերի օրոք կուլտուրական շինարարության վերելքին, դրամատուրգիայի և այլ հարցերի:

Գրականագիտական հոդվածներում ցայտուն դրսևորված են հեղինակի քաղաքական-հասարակական մտորումները, նրա վերաբերմունքը իր ընտրած հեղինակների նկատմամբ: Պուշկինի մասին խոսելիս նրա երևակայության մեջ ուրվագծվում է ըմբոստ պոետը, որը դեկաբրիստների ապստամբության պարտությունից հետո, գրեթե միայնակ, դեմքը դեպի Սիբիրի աքսորյալները, գրում է իր սրտաբուխ նամակ-բանաստեղծությունը դեկաբրիստ բարեկամներին, կոչ անում նրանց ապրել հպարտ և հավատով գալիքի հանդեպ: Կարինյանը ռուս գրողների մեջ որոնում է ճշմարտության համար պայքարող հոգիներին, որոնք չեն ընկճվում հալածանքներից և մինչև կյանքի վերջը պահպանում են հավատը գալիք հաղթանակի հանդեպ: Ահա Ռադիշչևը. ցարական պաշտոնյաներն այրում են նրա հրատարակությունները, լիբերալ պատմաբանները հորինում են միտումնավոր կարծիքներ, աղավաղելով հեղափոխական հայրենասերի իրական կերպարը: Ահա Տարաս Շևչենկոն՝ ազատատենչ երգերի հեղինակը, որ երկար տարիներ տառապում է բանտում. ռուս վաթսունականների փայլուն ներկայացուցիչներից մեկը՝ Նեկրասովը: Նորօրյա ուսումնասիրություններում ներկայացված վավերաթղթերի միջոցով հեղինակը թափանցում է դեռևս ան-



հայտ էջերի կամ չլուսաբանված հարցերի խորքը, հետազոտման յուրովի եղանակներով գտնում դրանց հավաստի պատասխանները:

Այդպիսի նոր մեկնությունների մենք հանդիպում ենք ռուս գրականության վերաբերյալ Կարինյանի բանասիրական որոնումներում և ուրույն բացահայտումներում: Այդ առումով հետաքրքրական է հատկապես Չերնիշևսկին և ժուռնալիստիկայի պատմության հարցերը տեսական ու բանասիրական հոդվածը: Ինչպես «Օտեչեստվեննիե զապիսկի», նույնպես և «Սովրեմեննիկ» ամսագրերում Չերնիշևսկու տպագրած բազմաթիվ գրախոսականների և առանձին հրապարակումների ուսումնասիրությունը ինքնին նյութ է ծառայում նաև նույն շրջանում հայ առաջավոր մամուլում թարգմանաբար տպագրված կամ փոխառված համապատասխան նյութերի կապերի բացահայտման համար:

Ուսումնասիրելով Գոգոլի ստեղծագործական բարդ ուղին, Կարինյանն անդրադառնում է նրա կյանքի վերջին շրջանում լիբերալների և պաշտոնական մտայնության կողմից հորինված «դարձի» պատմությանը: Բանն այն է, նկատում է Կարինյանը, որ փաստերը հավաստում են, որ Գոգոլն զգացել է իր սխալը՝ ռեալիստական արվեստի սկզբունքներին դավաճանելը: «Մռայլ իրականությունը, հիվանդությունը, անկոչ խորհրդատուների վարքագիծը, անվերջ երկվություններն ու անվերջ դեգերումները, կտրվածությունը իսկական բարեկամներից սպանում են հանճարեղ գրողին» (Ա. Բ. Կարինյան, Ժողովուրդների եղբայրության դրոշի ներքո, էջ 167):

Անտոն Չեխովի մասին գրած ակնարկում հեղինակը թափանցում է ռուս մեծ ռեալիստի հերոսների հոգեբանական նկարագրի խորքը, բացահայտում նրանց դժգոհությունը տառապալի կյանքից, իր իսկ՝ հեղինակի ընդվզումն այդ իրականության դեմ: «Չի կարելի և միանգամայն անհնարին է,— եզրակացնում է Չեխովը,— խաղաղ ու անզոր կերպով արձագանքել դաժան իրականության մռայլ երևույթներին: Անհրաժեշտ է կռվի ելնել բռնակալների ու բռնությունները քողարկողների դեմ»:

Հայ քննադատը ջանում է ներկայացնել ո՛չ միայն իրական կյանքի բարդ հակասությունների շղթան ռուս դասականների՝ Գոգոլի, Չեխովի և հետագա տասնամյակներին հանդես եկած ռեալիստ այլ գրողների ստեղծագործություններում, այլև իրենց իսկ՝ հիշյալ գրողների դժգոհությունն այդ իրականությունից, նրանց ընդվզումն այն իրականության հանդեպ, որի դեմ բացահայտ պայքարի են ելել և ելնում են հեղափոխական դեմոկրատիայի անձնվեր ներկայացուցիչները:

Ինչպես նշեցինք, Մ. Գորկին իր հեղափոխական շնչով համակել էր Կարինյանին դեռ պատանության օրերից: Սովետական տարիներին գրած Մաքսիմ Գորկին գեղագետ հրապարակախոս հոդվածում Գորկու հրապարակախոսական հոդվածները նա քննում է իմպերիալիզմի ու ֆաշիզմի դեմ մղած համաշխարհային ուժերի պայքարի համայնապատկերի վրա: Մ. Գորկու ավանդների համաշխարհային արձագանքները հեղինակը համարում է այն մեծ ուժը, որ ժառանգել է հեղափոխության երգիչը և սովետական կարգերի առաջին պաշտպանը հումանիզմի ու ազատության համար մղվող և մղվելիք մեծ գոտեմարտերում:

Կարինյանը բարձր է գնահատել Մրրկահավի երգչին որպես պրոլետարական գրականության հիմնադրի, ցույց է տվել նրա պատմական դերը սոցիալիստական ռեալիզմի տեսական ու գործնական ուղիների բացահայտման ոլորտում: Մ. Գորկին եղել և մնում է հայ բոլշևիկ քննադատի ոգու ներգործուն ուժը:

Արտաշես Կարինյանի գրական քննադատական հայացքներն արտացոլված են նաև 1956 և 1960 թթ. տպագրված Ակնարկներ հայ պարբերական մամուլի պատմության աշխատության առաջին և երկրորդ հատորների հրապարակախոսական ակնարկներում: Առաջին հատորն ընդգրկում է գաղութահայ հնօրյա օջախներում՝ Մադրասում, Կալկաթայում, Սինգապուրում, այնուհետև XIX դարից մինչև 70-ական թվականներին Վենետիկում, Վիեննայում, Փարիզում, Մանչեստրում լույս տեսած հայ պարբերականները բնութագրող ակնարկներ:

Մադրասում հրապարակված հայ անդրանիկ լրագրում՝ «Ազդարարում», դրսևորվող ազգային միասնության գաղափարը Կարինյանը համարել է հայերի

ազատագրական պայքարի կարևոր խթաններից մեկը և շեշտել լրագրի ռուսական կողմնորոշման կարևորությունը:

Այստեղ տպագրվում են ազգային լուսավորական գաղափարներով համակված և աշխարհիկ բովանդակությամբ բանաստեղծություններ, որոնց կից ակնարկում արտացոլվում է գրականության հասարակական դերը հայրենասիրական բաղձանքների իրականացման գործում:

1820-ական թթ. սկզբներին Կալկաթայում հրապարակվող «Շտեմարանի» էջերում Կարինյանն առաջինն է բացահայտում խմբագրի՝ Մարտիրոս Մկրտչյանի հրապարակախոսական գործունեության դերը հնդկահայ հասարակության ազգային կյանքի առաջընթացի գործում: Պեղելով «Շտեմարանի» մեծ մասամբ խառը, մշուշապատ ու խրթին էջերը՝ Կարինյանը վեր է հանում աշխատավորության շահերի պաշտպան Մարտիրոս Մկրտչյանի պայքարը մեծահարուստների ինքնակամ իշխանության դեմ: «Շտեմարանի» էջերում կա այսպիսի հետաքրքրական մի երկխոսություն. պարոն Սարգիսը հարցնում է Մկրտչյանին. «...դու հասարակության կողմանե գիր ունե՞ս, որ նոցա կողմանե խոսման ա՞ս...»: Պարոն Մարտիրոսը պատասխանում է. «Ես հասարակության բազմությունիցն էս մասին գանգատամ լսել, թե մինչև երբ պետք է հասարակության առաջնորդները հարուստներից ընտրվեն»: «Կոմիսարությունը հայրենական ժառանգություն չի,— հայտարարում է Մկրտչյանը,— որ որդին տեղն ժառանգի» (Ակնարկներ հայ պարբերական մամուլի պատմության, 1956, հ. 1, էջ 231):

Մարտիրոս Մկրտչյանը մերկացնում է հնդկահայ մեծերի կամակատար Տեր-Հովսեփի շահատակությունները: Տեր-Հովսեփը զգուշացնում է նրան. «Պարոն Մարտիրոս, կարգիդ պատիվն ճանաչիր, մտածիր, թե ինչ տերութենումն աս բնակած, կերպիտ խոսիր»: Մարտիրոսն ընդհատում է նրան. «Ես հասարակաց տրտունջն ամ ասում, որ ասում ան, թե միշտ հարստին ան ընտրում»:

Հասարակության ներքնախավերին պաշտպանող Մարտիրոս Մկրտչյանն օգտագործում է Շեքսպիրի շատ աֆորիզմներ: «Մի՞թե,— կարդում ենք «Շտեմարանի» մեջ,— կարողություն ունեցող կամ իշխանավոր անձինք շատ ենթակա չեն սխալանաց: Աս ի հաստատություն իմ բանին ես մին գեղեցիկ բան օրինակ բերեմ այս մեծ դատավորիցն մարդկային բնության (խոսքը Շեքսպիրի մասին է—Ռ. Ն.), որ խոսելով իշխանավոր անձանց վերա ասե. մարդիկ սեպհականողք մին փոքրիկ կարողության, այնպես ցնորական գործս գործին առաջին բարձր երկնից, մինչ հրեշտակաց լացուցանեն» (նույն տեղը, էջ 234):

Քննադատական մտքի պատմության համար հետաքրքրական էջեր կան հատկապես 1840-ական թթ. Կալկաթայում հրապարակված «Ազգասեր» և «Ազգասեր Արարատյան» լրագրերի մասին: Մ. Թաղիադյանի տպագրած գրական քննադատական ակնարկներում Կարինյանը նկատում է եվրոպական լուսավորական և ռոմանտիկական գրականությունից արված թարգմանությունների հասարակական խոշոր դերը ազգային գրականության ձևավորման և առաջադիմության գործում: Կարինյանն ուշադրություն է առնում «Ազգասերում» տպագրված հայրենասիրական-քաղաքացիական այն բանաստեղծությունները, որոնք իրենց բովանդակությամբ կապվում են եվրոպական ազատագրական շարժումների հետ: Կարինյանի հայտնություններից է Թաղիադյանի պարբերականի էջերում տպագրված Պէստալ բանաստեղծությունը, որը նվիրված է ռուս դեկաբրիստ Պեստելին: Առ այսօր ռուս դեկաբրիստական գրականության անծանոթ այս բանաստեղծությունը կազմում է «Ազգասերի» գրական զարդերից մեկը:

Ակնարկներ հայ գրականության պատմության երկրորդ հատորում հետաքրքրական դիտարկումներ կան հասարակական-քաղաքական առանձին գործիչների գրական հայացքների վերաբերյալ:

Ուշագրավ են Կարինյանի ներկայացրած գրական փաստերը XIX դարի առաջին տասնամյակներին Մխիթարյան պարբերականների վերաբերյալ: Ղ. Ինճիճյանի մոտ կրոնի և եկեղեցու պատգամների պրոպագանդայի կողքին հրապարակախոս-քննադատը նկատում է Մխիթարյան վարդապետի համակրանքը իտալական ազատագրական շարժման և դրա հայրենասեր գրական գործիչների՝ Մանձոնիի, Սիլվիո Պելլիկոյի հայրենասիրական երգերի նկատմամբ: Ս. Կարինյանն անդրադառնում է Ինճիճյանի Դարապատումի հատորներում տեղ գտած հատկապես XVIII դարի ֆրանսիական լուսավորիչների տված գնահատականներին, նրանց մեջ տեսնելով պատմական մոտեցման ռացիոնալ հատիկը:



Իր հրապարակախոսական ակնարկներում բավական տեղ տալով «Բազմավեպի» էջերի քննությանը՝ հրապարակախոս-քննադատը ուշադրություն է առնում, ինչպես իտալական ազգային ազատագրական շարժման յուրօրինակ արձագանքները գրականության մեջ, նույնպես և հայ ազգային գրականության ժողովրդական ակունքների՝ հատկապես Ալիշանի հավաքած ժողովրդական երգերի պատմաճանաչողական արժույթները:

Նույն հատորում տեղ են գտել «Արևելքը», «Արևմուտքը», «Փարիզը», «Երկրագունդը»: Ներկայացնելով «Արևելք» և «Արևմուտք» լրագրերի գաղափարական ուղեգծերը՝ Կարինյանն ուշագրավ տողեր է նվիրում Ստ. Ոսկանյանի՝ հայ նոր գրականության հիմնադիր Խ. Աբովյանին տված առաջին բարձր գնահատականին: Հեղինակը նշում է «Արևմուտքի» խմբագրի՝ Ոսկանյանի գրական վերաբերմունքը լեհ մեծ բանաստեղծ Ադամ Միցկևիչի և միաժամանակ քննադատական վերաբերմունքը Լամարտինի և Շատոբրիանի գաղափարական ուղղությունների վերաբերյալ:

Ս. Կարինյանի եռահատոր աշխատության առաջին երկու հատորների հրատարակությունը 1950—1960-ական թթ. մեր հասարակական մտքի պատմության, ինչպես և գրական-պատմական երևույթների լուսաբանման կարևոր և նշանակալից վավերագրերից է:

Կարինյանն ակտիվ մասնակցել է մեր գրական կյանքի ողջ ընթացքին, իր բազում հոդվածներով, գրախոսականներով, ելույթներով արձագանքելով գրականության, արվեստի և այլ բնագավառների նորույթներին: Նա ողջունել է գրական նոր սերնդի շատ ներկայացուցիչների մուտքը գրականության ոլորտը, գնահատել շատ արժույթներ, մեծ ուշադրություն է նվիրել ժամանակակից գրականության տարբեր հարցերի լուսաբանմանը:

Եվ այսպես, Արտաշես Կարինյանի՝ 1905—1981 թթ. նախահեղափոխական շրջանում և սովետական տարիներին գրած գրական-քննադատական գործունեությունը կազմում է հայ քննադատական մտքի պատմության բաղկացուցիչ մասը: Արձագանքելով պրոլետարական գրականության առաջին ստեղծագործություններին՝ նա եռանդուն պայքար է մղել դեկադենտական գրականության դեմ, ի պաշտպանություն ռուս և հայ գրականության ռեալիստական ավանդների:

Նշանակալից է եղել Կարինյանի դերը նաև սովետական կարգերի հաստատումից հետո պրոլետկուլտական ուղղությունների դեմ մղած պայքարում, սոցիալիստական գրականության ձևավորման ու զարգացման մեջ դասական գրականության արժույթների պաշտպանության և գնահատության գործում:

Այսօր Արտաշես Բալասիի Կարինյանը 95 տարեկան է: Հիմա էլ, գրիչը ձեռքին, նա պեղում, թղթին է հանձնում իր ուրույն, հետաքրքրական խոհերը անցյալի ու ներկայի լուսավոր դեմքերի մասին: Նրա անսպառ հետաքրքրասիրությունները, կյանքից և գրքերից ստացած տպավորությունները խոր ազդակներ են տալիս նրա մտքին՝ սիրով և ջերմությամբ միշտ նորին ու լուսավորին մեծ հավատով հետևելու և ծառայելու համար. այդ է նրա ստեղծագործական երկարակեցության խթաններից մեկը:

---

# ԼԵՆԻՆՅԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՀԱՎԱՏԱՐԻՄ ԶԻՆՎՈՐԸ

**Հ. Գ. ԱԶԱՏՅԱՆ**

ՔՍԱՆ ՏԱՐԻ ԱՌԱՋ Հայաստանի աշխարհագրական քարտեզի վրա երևաց անվանափոխված մի գյուղ ևս: Կուսակցական ու պետական ականավոր գործիչ Դանուշ Շահվերդյանի ծննդավայրն էր այդ՝ Թումանյանի շրջանի Իգահատ գյուղը, որ նրա անունով իսկ կոչվեց Դանուշավան: 1962 թվականին հանդիսավորությամբ նշվում էր աշխատավոր մարդու ազատագրության գործի անխոնջ նվիրյալներից մեկի՝ Դանուշ Շահվերդյանի ծննդյան 80-ամյակը:



Ծնվել է Դանուշը 1882 թ. հունվարի 23-ին, ազնվականի ընտանիքում: Միջնակարգ կրթությունն ստացել է Թիֆլիսի երկրորդ արական գիմնազիայում, որն ավարտել է 1902 թվականին: Գիմնազիայում ուսանելու տարիներին նա մեծապես հետաքրքրվում էր քաղաքական-հասարակական իրադարձություններով, ակտիվ մասնակցում հեղափոխական լեգալ և անլեգալ խմբակների հավաքներին: Այս շրջանում նա մտերիմ կապեր է հաստատում Ստ. Շահումյանի, Ա. Երզնկյանի, Ռ. Դաշտոյանի հետ, որոնք նույնպես սովորում էին Թիֆլիսում: Ցարիզմի ցարական ինքնակալության բռնությունների և տիրող սոցիալական անարդարությունների հանդեպ Դանուշին մղում է հեղափոխական գործունեության: Նա սկսում է ուսումնասիրել սոցիալական հարցերին նվիրված գրականություն, կարդում մարքսիստական արգելված գրքեր, տոգորվում մարքսիստական գաղափարներով: Սոցիալ-դեմոկրատական կազմակերպության ղեկավարությամբ 1901 թ. ապրիլի 22-ին Թիֆլիսում տեղի ունեցած քաղաքական ցույցը մեծ ազդեցություն է գործում երիտասարդ Շահվերդյանի վրա: Մարքսիստական ուսմունքի ճշմարտացիության խոր հավատով նա նվիրվում է բանվորների ու գյուղացիների ազատագրման վեհ գործին:

1902 թվականից Դ. Շահվերդյանը դառնում է ՌՍԴԲԿ ակտիվ անդամներից մեկը. Թիֆլիսում տեղի ունեցած մայիսյան ցույցի կազմակերպիչներից էր նա: Ահա թե ինչ է պատմում այդ մասին Ա. Երզնկյանը.

Ցույցից մի քանի օր առաջ Արշակ Զուրաբյանի բնակարանում էինք հավաքվել Ստեփան



Շահումյանը, Արշակ Զուրաբյանը, Աշոտ Խումարյանը, Դանուշ Շահվերդյանը, Ռուբեն Դաշտոյանը, ես և մի քանի այլ ընկերներ: Խոսակցության նյութը հրատարակվելիք թռուցիկն էր: Մեկ էլ Շահումյանը հանեց գրպանից Պուշկինի մի ոտանավորը, առաջարկեց թարգմանել, տպագրել փոքրիկ թերթիկների վրա և տարածել ցույցի ժամանակ... Ստեփանի առաջարկությամբ ուղարկեցինք այն Հովհաննես Թումանյանին՝ խնդրելով թարգմանել:

Կարճ ժամանակ անց ստացանք թարգմանությունը.

*Ատում եմ քեզ և քո գահը,*
*Միահեծան զոռող ցար,*
*Եվ քո որդոց ու քո մահը*
*Պիտի տեսնեմ անպատճառ:*

Տպեցինք ու հազարներով տարածեցինք այն ցույցի օրը:

Դանուշ Շահվերդյանի կյանքում ու հեղափոխական գործունեության մեջ հատուկ տեղ է գրավում «Հայ սոցիալ-դեմոկրատների միությունը», որը հիմնադրվեց 1902 թ. ամռանը՝ Ստ. Շահումյանի, Բ. Կնունյանցի և Ա. Զուրաբյանի նախաձեռնությամբ: «Միության» գլխավոր խնդիրն էր հայ բանվորների շրջանում տարածել սոցիալ-դեմոկրատական գաղափարները: «Միության» ջանքերով 1902 թ. հոկտեմբերին լույս ընծայվեց «Պրոլետարիատ» թերթը, ճակատին՝ «Ռուսական սոցիալ-դեմոկրատական բանվորական կուսակցություն»: Թերթը հանդես եկավ որպես լենինյան «Իսկրայի» հետևորդ:

Դ. Շահվերդյանը գործարար մասնակցություն ունեցավ «Հայ սոցիալ-դեմոկրատների միության» կազմակերպմանն ու գործունեությանը, հայերեն առաջին անլեգալ սոցիալ-դեմոկրատական օրգանի՝ «Պրոլետարիատի» հրատարակմանը: Թերթի խմբագրական աշխատանքը պետք է կատարեին Ստ. Շահումյանը և Ա. Զուրաբյանը, ֆինանսական հարցերով պատասխանատուն Ա. Երզնկյանն էր, իսկ տեխնիկական ու տպագրական գործը հանձնարարված էր Ա. Խումարյանին, Ռ. Դաշտոյանին, Դ. Շահվերդյանին և Ս. Խանոյանին:

Ինչպես պատմել է Ռ. Դաշտոյանը, մեծ ջանքեր էին պահանջվում թերթը հրատարակելու համար. դժվարությունները կապված չէին միայն կոնսպիրատիվ խոնավ նկուղի կամ տպարանի տեղափոխման հետ, այլև նրա, որ տեխնիկան շատ պրիմիտիվ էր: Դա հասարակ պատճենահան մամլակ էր: Տաժանակիր աշխատանք էր դրանով տպագրելը: Մի երեսը տպելու համար մամլակի պտուտակը բարձրացնում և իջեցնում էին ավելի քան 200 անգամ, դրան ավելացրած հաճախակի ներկ քսելը և անհաջող մասերը նորից տպագրելը: Թերթը տպագրում էին հատակի վրա, որի համար օգտագործում էին Դ. Շահվերդյանի գորգը՝ նրա միակ հարստությունը: Մեքենայի չխկոցն ուրիշներին լսելի չդարձնելու համար սենյակում անընդհատ նարդի էին խաղում, դիտմամբ ուժեղ խփելով նարդու քարերը և բարձրաձայն խոսելով:

Վ. Ի. Լենինը ջերմորեն ողջունեց «Հայ սոցիալ-դեմոկրատների միության» հիմնադրումը և «Պրոլետարիատի» լույսընծայումը:

Ստանալով թերթի մի օրինակը, «Իսկրայի» № 33-ում Իլյիչը գրեց. «Կովկասում երևան է եկել մի նոր սոցիալ-դեմոկրատական կազմակերպություն՝ **«Հայ սոցիալ-դեմոկրատների միությունը»**: Այդ միությունը, ինչպես մեզ հայտնի է, ավելի քան կես տարի է, ինչ սկսել է իր պրակտիկ գործունեությունը և արդեն ունի իր օրգանը հայերեն լեզվով: Մենք ստացել ենք համար առաջինը այդ օրգանի, որը կոչվում է «Պրոլետարիատ» և որի վերնագրում նշված է. «Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական կուսակցություն»:

...Մենք ամբողջ հոգով ողջունում ենք «Հայ սոցիալ-դեմոկրատների միության» մանիֆեստը...» (**ԵԼԺ**, հ. 7, էջ 129, 131—132):

Պետերբուրգի համալսարանի իրավաբանական ֆակուլտետում ուսանելու տարիներին Դանուշ Շահվերդյանի առջև բացվեցին նոր հորիզոններ. նա ընկավ հեղափոխական բուռն կյանքով լեցուն մի միջավայր, որը հնարավորություն էր տալիս նրան կոփվելու թե՛ տեսականորեն և թե իբրև հեղափոխական գործիչ: Նա կապվում է համալսարանում գոյություն ունեցող սոցիալ-դեմոկրատական անլեգալ կազմակերպության հետ, գործում նրա շարքերում և կարճ ժամանակամիջոցում լայնորեն ճանաչվում մայրաքաղաքի հեղափոխական ուսանողության շրջանում: Այդ գործունեությունը չի վրիպում նաև ցարական ոստիկանության, համալսարանի վարչության աչքից: Նրան վերցնում են գաղտնի ոստիկանության հսկողության տակ: Ուսանողական շարժմանն ակտիվ մասնակցելու համար Շահվերդյանը 1903 թ. դեկտեմբերի 7-ին մեկ տարով վտարվում է համալսարանից և, վերադառնալով Թիֆլիս, ծավալում հեղափոխական գործունեություն Կովկասի բոլշևիկների շրջանում: Համալսարանից վտարվելուց մեկ տարի անց նա կրկին վերադառնում է Պետերբուրգ և շարունակում ուսումը:

Մայրաքաղաքի սոցիալ-դեմոկրատական

կազմակերպությունն արդեն լավ էր ճանաչում բոլշևիկ Դանուշ Շահվերդյանին որպես մասսաների հեղինակավոր կազմակերպիչ, կուսակցական հմուտ կոնսպիրատոր: Նա ղեկավար մասնակցություն է ունենում ո՛չ միայն Պետերբուրգի, այլև Մոսկվայի ուսանողական հեղափոխական ցույցերի կազմակերպմանը: Իսկ երբ նա մեկնում է Կիև, Պետերբուրգի պահնորդական բաժինն այսպիսի զեկույց է ներկայացնում քաղաքի ոստիկանապետին. «Ս. Պետերբուրգ քաղաքից գնացքով Կիև է ժամանել Ս. Պետերբուրգի համալսարանի ուսանող Դանիել Ալեքսանդրի Շահվերդյանը (Կրասնոսելսկի մականունով), որը ինչպես երևում էր Ս. Պետերբուրգի պահնորդական բաժնի պետի հոկտեմբերի 28-ի հեռագրից, եկել է Կիև ուսանողական ընդհանուր ցույցի գործով, որպես պատգամավոր տեղի հեղափոխական կազմակերպություններից: Սույն նոյեմբերի 17-ին Շահվերդով կոչեցյալը ներկայացավ կայարան, 11 անց 30 րոպե ճեպընթաց գնացքով Կիևից դուրս եկավ Մոսկվա»[1]:

Պետերբուրգ, 1905 թ. հունվարի 9: Բազմահազար բանվորների խաղաղ երթ դեպի Ձմեռային պալատ... Արյունոտ կիրակի... Ականավոր շատ բոլշևիկների հետ մեկտեղ Շահվերդյանը ևս բացատրում էր բանվորներին, որ ազատությունը ձեռք չի բերվում ցարին ուղղված խնդրանքներով, այն նվաճվում է զենքով և կոչ էր անում դաս առնել դավաճան գապոնների կազմակերպած նման ողբերգական իրադարձություններից, չխաբվել նրանց ոչ մի խայծից:

Հունվարի 9-ի իրադարձություններից հետո, Պետերբուրգի բարձրագույն ուսումնական հաստատությունների փակման հետևանքով, Շահվերդյանը 1905 թ. փետրվարի սկզբին վերադառնում է Թիֆլիս: Այստեղ նա անմիջապես ձեռնամուխ է լինում հեղափոխական աշխատանքի, մասնակցում փետրվարի կեսերին բոլշևիկների ղեկավարությամբ կազմակերպված Անդրկովկասի աշխատավորների ինտերնացիոնալ համերաշխության ցույցերին: Ցարական պահնորդական բաժինն արդեն երկար տարիներ հսկողություն էր սահմանել ակտիվ հեղափոխականի նկատմամբ և կարողանում է ձերբակալել նրան: Խուզարկության ժամանակ նրա մոտ հայտնաբերվում է մարքսիստական անլեգալ գրականություն: Շահվերդյանը մեղադրվում է սոցիալ-դեմոկրատական կուսակցությանը պատկանելու և ցարական ռեժիմի տապալման կոչ անելու համար: Մեկ ամսվա բանտային կալանքից հետո, հան-

1 ЦГАОР СССР, Ф. ДПОО. оп. 1898, ед. хр. 3 ч. 15 от, 15 л. 37 об. л. 28:



ցանշանների բացակայության պատճառով, Դ. Շահվերդյանն ազատվում է:

1907 թ. հունիսերեքյան պետական հեղաշրջումով ավարտվեց ռուսական առաջին հեղափոխությունը: Երկրի մանրբուրժուական կուսակցությունները, հուսահատված հեղափոխության պարտությունից, փորձում էին հաշտվել, հարմարվել ստոլիպինյան ռեակցիայի պայմաններին և կանգնեցին լիկվիդատորության դիրքերում: Սոցիալ-դեմոկրատական կուսակցության շարքերում ևս մանրբուրժուական մտավորականները, սարսափած ռեակցիայից, հեռացան կուսակցությունից: Կուսակցական կազմակերպություններն զգալիորեն նոսրացան: Այդ նկատելի էր ինչպես Կենտրոնում, նույնպես և Կովկասում: Դանուշ Շահվերդյանը հավատարմորեն մնաց լենինյան դիրքերում ինչպես ռեակցիայի, նույնպես և հեղափոխության վերելքի տարիներին, անսասան ու հետևողականորեն կենսագործելով լենինյան դրույթները: Պետերբուրգում և Անդրկովկասում հեղափոխական մասսաներին նա բացատրում էր, որ ռուսական առաջին հեղափոխությունը չի կատարել իր առջև դրված խնդիրները, որ ռեակցիան Ռուսաստանում երկար չի տևի, բանվոր դասակարգը և առաջավոր գյուղացիությունը կրկին ոտքի կելնեն հանուն ազատության, հանուն հողի, հանուն ինքնակալության տապալման:

1907 թ. աշնանը տեղի է ունենում մի իրադարձություն, որն անջնջելի տպավորություն է գործում Դ. Շահվերդյանի ողջ կյանքի վրա: Անդրկովկասի ուրիշ բոլշևիկների և Պետերբուրգի համալսարանի հեղափոխականորեն տրամադրված ուսանողության հետ միասին նա դիմում է ՌՍԴԲԿ Պետերբուրգի կոմիտեին՝ Վ. Ի. Լենինի հետ հանդիպում կազմակերպելու խնդրանքով: Այդ ժամանակ Վ. Ի. Լենինը ֆիննական Տերիոկի փոքրիկ քաղաքում էր: ՌՍԴԲԿ Պետերբուրգի կոմիտեն կապվում է Վ. Ի. Լենինի հետ և, ստանալով նրա համաձայնությունը, կազմակերպում ուսանողների ուղևորությունը Տերիոկի: Կովկասի ուսանողների հանդիպումը Իլյիչի հետ տևում է մոտ 3 ժամ: Վ. Ի. Լենինը խոսում է ագրարային հարցի, պետական դումայի նկատմամբ բոլշևիկների վերաբերմունքի մասին, լուսաբանում մի շարք այլ հարցեր (տե՛ս Ա. Կարինյան, Լսելով Լենինի խոսքը... Հին բոլշևիկների հիշողություններ, գիրք 2-րդ, «Հայպետհրատ», 1961 թ., էջ 33—34):

Թիֆլիսում աշխատելու ողջ ժամանակաշրջանում Շահվերդյանի գործունեությանն ուշիուշով հետևում էր ցարական պահնորդական բաժինը, բայց նրան ձերբակալել չէր կարողանում, փաստական հիմնավոր մեղադրանքներ չունենալու պատճառով: 1914 թ. ապրիլի 27-ին, վերջապես գործակալական տեղեկությունների և արգելված գրականության հայտնաբերման հիման վրա ժանդարմերիան խուզարկում է Կասյանի, Շահվերդյանի, Կարուաշվիլու, Ծուլուկիձեի և այլ բոլշևիկների բնակարաններն ու աշխատավայրերը և ձերբակալում նրանց:

Թիֆլիսի նահանգական ժանդարմական վարչության պետը բոլշևիկյան խմբի մասին կազմած իր որոշման մեջ հետևյալ բնութագիրն է տվել Շահվերդյանին:

«Երդվյալ հավատարմատարի օգնական Դանիել Ալեքսանդրի Շահվերդյանը հանդիսանում է բոլշևիկյան խմբի գաղափարական ղեկավարը: Խմբի գործունեության վերաբերյալ բոլոր հարցերը Կասյանը նախապես քննարկում էր, որի համար բազմիցս լինում էր նրա բնակարանում»[1]:

Ռեակցիայի և հեղափոխության նոր վերելքի տարիներին Դ. Շահվերդյանը մյուս ականավոր բոլշևիկների հետ միասին գլխավորում էր Թիֆլիսի կուսակցության ղեկավար կենտրոնը, ամրապնդում երկրամասի բոլշևիկյան կազմակերպությունները: Իմպերիալիստական պատերազմի տարիներին Շահվերդյանն ակտիվ պայքար ծավալեց բուրժուական նացիոնալիզմի դեմ: Ղեկավարվելով լենինյան ցուցումներով և Կովկասի բոլշևիկների 1915 թ. կոնֆերանսի որոշումներով՝ նա եռանդուն գործունեություն ծավալեց պատերազմի, հեղափոխության, խաղաղության հարցերում լենինյան գաղափարների պրոպագանդման համար:

1917 թ. փետրվարյան հեղափոխությունն իր ոլորտն առավ նաև Անդրկովկասը: Վերացավ Կովկասի փոխարքայությունը: Երկրամասի քաղաքներում ու գյուղերում, կովկասյան բանակի զորամասերում ստեղծվեցին բանվորների, զինվորների և գյուղացիների դեպուտատների սովետներ:

Փետրվարյան հեղափոխությունից հետո, ամբողջ կուսակցության հետ միասին, ընդհատակից դուրս եկան և սկսեցին կուսակցական-քաղաքական լեգալ աշխատանք ծավալել նաև Անդրկովկասի բոլշևիկները: Երկրամասի բոլշևիկյան կազմակերպությունների վերականգնման ու ամրապնդման գործում խոշոր դեր խաղացին աքսորից ու տարագրությունից վերադարձած կուսակցության ականավոր գործիչներ, Անդրկովկասի բոլշևիկների ճանաչված ղեկավարներ Ստ. Շահումյանը, Պ. Ջափարիձեն, Ֆ. Մախարաձեն, Գ. Կորգանովը, Ի. Ֆիոլետովը, Մ. Ազիզբեկովը, Ս. Կասյանը, Ա. Մռավյանը և ուրիշներ: Անդրկովկասի բոլշևիկների այդ ղեկավար խմբի մեջ էր և Դ. Շահվերդյանը, որին լավ գիտեին Թիֆլիսի բանվորները և 1917 թ. մարտի սկզբին ընտրեցին նրան քաղաքի բանվորական դեպուտատների սովետի կազմում, ինչպես և՝ դեպուտատների սովետի առաջին գործադիր կոմիտեի անդամ:

1917 թ. հունիսին երկրամասի բոլշևիկյան կազմակերպությունների առջև դրվեց կարևոր խնդիր— վերջնականապես կազմակերպորեն անջատվել մենշևիկներից: Հայ բոլշևիկները հանդես եկան մամուլում մենշևիկյան «Պայքար» թերթից հեռանալու հայտարարությամբ: Ստ. Շահումյանի, Ա. Ամիրյանի, Հ. Հակոբյանի և մյուս բոլշևիկների հետ մեկտեղ հայտարարությունն ստորագրել էր նաև Դ. Շահվերդյանը:

1917 թ. հուլիսյան իրադարձություններից հետո երկրում դրությունը վճռականապես փոխվեց: Ամբողջ իշխանությունը փաստորեն կենտրոնացվեց բուրժուական ռեակցիոն կառավարության ձեռքին: Սկսեցին հետապնդել բոլշևիկ ղեկավար գործիչներին: Վ. Ի. Լենինը և բոլշևիկյան ղեկավարներն անցան ընդհատակ: 1917 թ. հուլիսի վերջին, օգոստոսի առաջին օրերին, Պետերբուրգում տեղի ունեցավ կուսակցության պատմական VI համագումարը, որը կուրս վերցրեց զինված ապստամբության միջոցով տապալել բուրժուական տիրապետությունը և երկրում հաստատել պրոլետարիատի դիկտատուրա՝ սովետական իշխանություն: Համագումարը հանձնարարեց Ստ. Շահումյանին և Պ. Ջափարիձեին գլխավորել երկրամասում սովետական կարգերի հաստատման գործը:

1917 թ. օգոստոսի երկրորդ կեսին սկսվեցին Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական (բոլշևիկյան) կուսակցության կովկասյան կազմակերպությունների երկրային առաջին համագումարի հրավիրման նախապատրաստական աշխատանքները: Դ. Շահվերդյանը ամենաակտիվ մասնակցություն ունեցավ ՌՍԴԲ(բ)Կ կովկասյան առաջին համագումարի հրավիրման գործում, համագումար, որը մեծ նշանակություն ունեցավ երկրամասի կազմակերպությունների գաղափարական ամրապնդման և համակովկասյան մասշտաբով նրանց հեղափոխական գործունեությունը կոորդինացնելու համար: ՌՍԴԲ(բ)Կ կովկասյան առաջին համագումարը տեղի ունեցավ հոկտեմբերի 2—7-ը, Թիֆլիսում, կուսակցության VI համագումարից հետո: Համագումարին մասնակցում էին 30 պատգամավորներ (19 կազմակերպություններից), որոնցից 27-ը վճռական, 3-ը՝ խորհրդակցական ձայնի

1 ЦГИА Груз. ССР, ф. 94, оп. 1, д. 709, л. 12—13:

հունվարի 18—19-ին Երևանում գումարվեց Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունների առաջին անլեգալ կոնֆերանսը. մասնակցում էին Երևանի, Ալեքսանդրապոլի, Ղազախի (Իջևան), Դիլիջանի, Նոր Բայազետի, Լոռու չեզոք գոտու, Ղարաքիլիսայի, Ջալալօղլու կուսակցական կազմակերպություններից ընտրված պատգամավորները: Ներկա էին 22 պատգամավորներ, որոնք ներկայացնում էին 1.200 կոմունիստների (տե՛ս «Правда», № 90, 1920 г.):

Կոնֆերանսի նիստերում նախագահում էր Դ. Շահվերդյանը:

Քննարկվեցին հետևյալ հարցերը. Ռուսաստանի կոմունիստական (բոլշևիկների) կուսակցության Հայաստանի կոմիտեի հաշվետվությունը, կուսակցության տակտիկան Հայաստանում, լեգալ կազմակերպությունների մեջ աշխատելու հարցը և այլն: Իր որոշումներում տալով ընթացիկ մոմենտի գնահատականը՝ կոնֆերանսը գտնում էր, որ Հայաստանում դաշնակցականների տիրապետության տապալումը հնարավոր է միայն զինված ապստամբության միջոցով: Կոնֆերանսն ընտրեց Ռուսաստանի կոմունիստական (բոլշևիկների) կուսակցության Հայաստանի կոմիտե, որի կազմում էին Ս. Կասյանը, Ա. Մռավյանը, Դ. Շահվերդյանը, Ս. Ալավերդյանը, Հ. Պողոսյանը, Ռ. Ոսկանյանը, Ա. Նուրիջանյանը, Ղ. Ղուկասյանը և ուրիշներ:

Դաշնակցական կառավարությունը 1920 թ. փետրվարին հատուկ որոշում ընդունեց, որի համաձայն բոլոր բոլշևիկները պետք է հեռացվեին Հայաստանի սահմաններից: Այդ որոշումից հետո երկրում ծայր են առնում հալածանքները կոմունիստների և նրանց կողմնակիցների նկատմամբ, ձերբակալությունները: Կուսակցության բազմաթիվ գործիչներ արտաքսվում են Հայաստանից:

Հայաստանի կոմունիստական կուսակցության և աշխատավորների տևական պայքարը սովետական իշխանության հաստատման համար 1920 թ. նոյեմբերի 29-ին ավարտվեց հաղթանակով: Ռազմահեղափոխական կոմիտեն Հայաստանը հայտարարեց Սովետական Սոցիալիստական Հանրապետություն: Հեղկոմի դեկլարացիայում ասված էր. «Հայաստանի ապստամբ աշխատավոր ժողովրդի կամքով ու ցանկությամբ՝ Հայաստանի կոմունիստական (բոլշևիկների) կուսակցությունն այսօրվանից Հայաստանը հայտարարում է Սոցիալիստական Խորհրդային Հանրապետություն: Այսօրվանից Խորհրդային Հայաստանի կարմիր դրոշը պաշտպանելու է նրա աշխատավոր ժողովրդին ճնշողների դարավոր լծից» (**Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիան և սովետական իշխանության հաղթանակը Հայաստանում**, «Հայպետհրատ», 1960 թ., էջ 403):

Դանուշ Շահվերդյանը նորաստեղծ Սովետական Հայաստանի անխոնջ ջատագովն էր, կոմունիստական կուսակցության քաղաքականության ակտիվ իրականացնողը: Աշխարհի տարբեր ծայրամասերում սփռված արևմտահայության զանգվածները հիմնականում իրազեկ չէին Սովետական Հայաստանում կատարված փոփոխություններին, այն միջոցառումներին, որ ձեռնարկվում էին մայր հայրենիքում ի նպաստ հայ ժողովրդի: Միաժամանակ թշնամական պրոպագանդան ապակողմնորոշում էր սփյուռքահայ զանգվածներին, նրանց անիրազեկությունն օգտագործում՝ վարկաբեկելու սովետական իշխանության հիրավի հայապահպան գործունեությունը: Պահանջվում էին հրապարակախոսական կրքոտ խոսք, ճշմարիտ բնութագրում, համոզիչ փաստարկներ՝ ներկայացնելու Սովետական Հայաստանի ներքին կյանքի հստակ պատկերը, բացահայտելու կոմունիստների ծրագրի վեհությունը, հումանիզմը, կառուցողական պաթոսը: Ահա այս ասպարեզում ևս փայլեց հին ու կոփված բոլշևիկի, ազգային մշակույթի քաջագիտակ Դանուշ Շահվերդյանի՝ քաղաքական գործչի, հրապարակախոսի, մեծ հայրենասերի տաղանդը:

Դ. Շահվերդյանը 1924 թ. Կ. Պոլսում Անդրկովկասի ֆեդերացիայի առևտրական ներկայացուցիչ աշխատելու ժամանակ գրում է **Ինչպես կգործեն Հայաստանի մեջ** աշխատությունը՝ երեք պրակով, ուր նկարագրվում, համակողմանի վերլուծվում է Հայաստանում սովետական կարգերի հաստատման առաջին չորս տարիներին կատարված ստեղծագործ աշխատանքը: Մեծ չէ Շահվերդյանի գրական ժառանգությունը: Բայց այն, ինչ հասել է մեզ, վկայությունն է նրա տեսական լուրջ պատրաստականության, նրա բազմակողմանի գիտելիքների:

Դ. Շահվերդյանն անցել է անդուլ պայքարի դժվարություններով լի ուղի: Երիտասարդ հասակից դառնալով համոզված մարքսիստ-լենինյան, նա իր ողջ եռանդը, միտքն ու կյանքը ի սպաս է դրել բանվոր դասակարգի ազատագրման, սոցիալիզմի կառուցման գործին: Ընթանալով հեղափոխական պայքարի ուղիով՝ նա ակտիվ մասնակցել է Ռուսաստանի երեք հեղափոխություններին, նշանակալից դեր խաղացել Անդրկովկասում կուսակցական կազմակերպությունների ստեղծման գործում, սովետական իշխանության հաստատման ու ամրապնդման համար մղված պայքարում:



Սովետական իշխանության հաղթանակից հետո Շահվերդյանը, որպես կուսակցական ու սովետական ականավոր գործիչ (արդարադատության ժողկոմ, ժողկոմխորհի նախագահի տեղակալ), Հայաստանում մեծ աշխատանք կատարեց սովետական պետականության հիմքերի ամրապնդման համար: Հատկապես մեծ էր նրա ծառայությունը սովետական արդարադատության, օրինականության սկզբունքների մշակման ու հետևողական կիրառման ասպարեզում:

Լայն մտահորիզոնի տեր քաղաքական-դիվանագիտական գործիչը սփյուռքում Սովետական Հայաստանի, կոմունիստական կուսակցության առաջին պատվիրակներից էր, հանրապետության կառավարության առաջին լիազոր-ներկայացուցիչը: Նրա գործունեությունն արտասահմանում անջնջելի հետք թողեց հայ աշխատավորների սրտերում, ամրապնդեց նրանց կապը մայր հայրենիքի հետ, օգնեց ճիշտ ընկալելու նրա սոցիալիստական զարգացման ուղին, կոմունիստական կուսակցության հայրենաշեն քաղաքականությունը:

Շահվերդյանը բազմակողմանի զարգացած, կրթված, մեծ կուլտուրայի տեր գործիչ էր: Գիտեր և գնահատում էր գրականությունն ու արվեստը, մեծ հեղինակություն ուներ գիտության ու մշակույթի գործիչների շրջանում: Նրան սիրով ու ակնածանքով էին վերաբերվում կուսակցական, աշխատանքային ընկերները, բոլոր նրանք, ովքեր բախտ ունեին հաղորդակցվելու և գործելու նրա հետ: Նա հմայում էր մարդկանց իր գաղափարայնությամբ, գործիմացությամբ, մարդասիրությամբ, համեստությամբ, անհատնում եռանդով:

Կուսակցության մեջ մտնելու պահից՝ 1902 թվականից սկսած մինչև իր կյանքի վերջը (1941 թ.) Դ. Շահվերդյանը հաստատապես կանգնած մնաց լենինյան դիրքերում, իր անուրանալի ավանդը ներդրեց նոր կյանքի հաստատման համար ծավալված պայքարի շատ մարզերում: Լենինյան կուսակցության այն վետերաններից է նա, որոնց բարոյական վսեմ ու անզուգական կերպարը երիտասարդության կոմունիստական դաստիարակության ներգործուն օրինակ է:

# ՀԱԿԱԳԻՏԱԿԱՆ «ԳՈՐԾՈՂՈՒԹՅԱՆ ՏԵՍՈՒԹՅԱՆ» ՄԱՐՔՍԻՍՏԱԿԱՆ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆԸ

**ՀԱԿԱԴԻՐ ՀԱՄԱՐԱԿԱԿԱՆ** սիստեմների պայքարի, գիտատեխնիկական հեղափոխության ու սոցիալական հեղաշրջումների արդի դարաշրջանում իրենց բարդությամբ աննախադեպ խնդիրներ են ծառանում մարքս-լենինյան տեսության առջև: Որպես սոցիալական իրականության ճանաչողության ու հեղափոխական վերափոխման ուսմունք, այն անխզելիորեն կապված է սոցիալիստական շինարարության պրակտիկայի, համաշխարհային-հեղափոխական պրոցեսի զարգացման, ազգային-ազատագրական շարժման հետ:

Այժմ հակակոմունիզմի դեմ մղվող գաղափարախոսական պայքարում առանձնապես կարևորվում է ժամանակակից բուրժուական սոցիոլոգիական տեսությունների մարքս-լենինյան քննադատությունը: Այս առումով ուշագրավ է Գ. Ե. Մխիթարյանի Թ. Պարսոնսի «գործողության տեսության» հակագիտական էությունը մենագրությունը, որը լույս է ընծայել Երևանի պետական համալսարանի հրատարակչությունը:

Հեղինակի կողմից քննական վերլուծության օբյեկտի նման ընտրությունը բնավ պատահական չէ: Թերևս կապիտալիստական և ոչ մի երկրում սոցիոլոգիան, սոցիոլոգիական հետազոտություններն այնքան սերտորեն կապակցված չեն պաշտոնական քաղաքականության հետ, ինչպես միջազգային իմպերիալիզմի տնտեսական ու քաղաքական կենտրոնն ու գաղափարախոսական պայքարի միջնաբերդը հանդիսացող Ամերիկայի Միացյալ Նահանգներում: Գրքում նշված է, որ Թ. Պարսոնսի «գործողության տեսությունը» «կորցրել է իր առաջատար դերը, քննադատվել և պատմության արխիվին է հանձնվել հենց բուրժուական սոցիոլոգիայի կողմից, սակայն դրա աշխարհայացքային սկզբունքների մարքսիստական քննադատությունը դեռևս կարևոր նշանակություն ունի: Նախ, այն պատճառով, որ դրան փոխարինող ուղղություններում մնում են նրա մի շարք սկզբունքները և մյուս կողմից՝ արդի սոցիոլոգիայի պատմության այդ փուլի մարքս-լենինյան գնահատումը ամեն անգամ պահանջում է անջատել նրա աշխարհայացքային սկզբունքները էմպիրիկ մեթոդիկայից, որը կարող է պահպանել իր արժեքը կիրառական ոլորտում» (էջ 4):

Նախքան ամերիկյան սոցիոլոգի տեսությունը քննադատելը, հեղինակն անդրադարձել է արդի բուրժուական սոցիոլոգիայի բնորոշ գծերի բնութագրմանը: Մենագրության առաջին գլխում՝ «Սոցիոլոգիայի գաղափարական կողմնորոշվածությունը (Ներածության փոխարեն)», հանգամանորեն մերկացված են արդի բուրժուական սոցիոլոգիայի դասակարգային սահմանափակվածությունից բխող հետադիմական, հակագիտական դրսևորումները՝ հասարակական-պատմական զարգացման օբյեկտիվ օրինաչափությունների ու առաջընթացի մերժումը, ինդետերմինիզմը, իռացիոնալիստական-ֆիդեիստական միտումները, օգտապաշտական-պրագմատիստական էմպիրիզմը: Ընդսմին հիմնավորվում է այն դրույթը, որ անխզելի կապ կա սոցիոլոգիայի դասակարգային կողմնորոշման և աշխարհայացքային ու մեթոդաբանական սկզբունքների միջև: Սոցիոլոգը, ինչպես և հասարակության ցանկացած անդամ, որոշակի գաղափարախոսության կրող է: Հետազոտության խնդիրների ու նպատակի սահմանումը, հայեցակետի մշակումը, նույնիսկ ուսումնասիրության առարկայի ընտրությունն ու փաստական տվյալների մշակումը ուղղակի կամ անուղղակի կերպով պայմանավորված են արժույթների այն համակարգով, որ նա ընդունել է և որը կազմում է նրա գաղափարաքաղաքական կողմնորոշումը:

Այնուհետև հեղինակը նշում է, որ արդի բուրժուական սոցիոլոգիան հրաժարվել է կապիտալիստական քաղաքակրթության արշալույսին ձևավորված առաջադիմական սոցիալ-փիլիսոփայական մտքի գաղափարական



ժառանգությունից: Մոնոպոլիստական կապիտալի գաղափարախոսները ո՛չ միայն պաշտոնապես հրաժարվել են այն ռադիկալիզմից ու կոնստրուկտիվ մտածելակերպից, որը հատուկ էր նախամարքսյան շրջանի «խոսքի ու գործի մեծ տիտաններին» (Ֆ. Էնգելս), այլև քարոզում են դրանց տրամագծորեն հակադիր գաղափարներ:

Ֆեոդալիզմի դեմ մղած պայքարում բուրժուական ազատամիտ մտածողները, հանդես գալով ժողովրդի, աշխատավոր մեծամասնության անունից, հիմնավորում էին վերջինիս բացարձակ սուվերենիտետի գաղափարը՝ ներքևից հեղափոխության իրավունքը, մինչդեռ արդի բուրժուազիայի գաղափարախոսները ժողովրդական զանգվածներին համարում են «պատմության պասիվ մեծամասնություն», «սոցիալական չարիքների աղբյուր» և այլն: Նրանց տեսակետից, ինչպես իրավացիորեն նշում է հեղինակը, «գործադուլները, ցույցերը, սոցիալական հուժկու շարժումներն ու հեղափոխությունները պարզապես «աննորմալ» երևույթներ («անոմալիաներ») են համարվում» (էջ 12):

Գ. Մխիթարյանը հիմնավորված քննադատում է ստրուկտուրային ֆունկցիոնալիզմի այն տեսաբաններին, որոնք, անկարող լինելով հաշվի չնստել մարքսիզմի հեղինակության աճի հետ, փորձում են «սինթեզել» իրենց տեսությունները մարքսիստական սոցիոլոգիայի հետ՝ միաժամանակ աղավաղելով վերջինիս հիմնարար սկզբունքները (էջ 18—20): Նա համոզիչ կերպով ցույց է տալիս, որ բուրժուական գաղափարախոսների հակակոմունիստական կողմնորոշումը ոչ թե հասարակական-պատմական զարգացման օրինաչափությունների ուսումնասիրությունից բխող գիտական եզրակացություն է, այլ մի նախապաշարմունք, որ հաճախ ողջախոհությանը խանգարում է հաղթահարելու նրանց դասակարգային մտածելակերպի նեղ շրջանակները:

Մենագրության երկրորդ գլուխը նվիրված է «գործողության տեսության» ընդհանուր բնույթին ու կառուցվածքին: Արտասահմանյան աղբյուրների լայն օգտագործման հիման վրա այստեղ հանգամանորեն վերլուծվում են այդ տեսության ելակետային հասկացություններն ու սկզբունքները: Դա հեղինակին հնարավորություն է ընձեռում եզրակացնելու, որ բուրժուական սոցիոլոգիան այսօր կանգնած է իրականում իր ուժերից վեր մի պրոբլեմի՝ նպատակալաց, կառավարվող սոցիալական համակարգի նախագիծ մշակելու առջև (տե՛ս էջ 28):

Ընդհանրապես արդի բուրժուական սոցիոլոգիային վերաբերող այս եզրակացությունը լիովին հիմնավորված է: Նույն նպատակն են հետապնդում ստրուկտուրային ֆունկցիոնալիզմի հետ 50-ական թվականներին զուգահեռ ձևավորված ամերիկյան մեկ այլ ազդեցիկ սոցիոլոգիական ուղղության՝ ֆուտուրոլոգիայի ներկայացուցիչները:

Հետպատերազմյան առաջին տասնամյակում կապիտալիստական էկոնոմիկայի աննգնաժամ զարգացումը, ԳՏՀ նվաճումների լայն կիրառումը պայմանավորեցին բուրժուական սոցիալական սիստեմի ընդհանուր կայունության պատրանքը: Եվ պատահական չէ, որ ձևավորվող ստրուկտուրային ֆունկցիոնալիզմի դիրքորոշումը նպաստում էր այդ պատրանքի ամրապնդմանը: Այդ ուղղության, մասնավորապես Թ. Պարսոնսի տեսության ելակետային նպատակը, ինչպես նշված է գրքում, արդի հասարակական հարաբերությունների ամբողջական ու ավարտուն մի սոցիոլոգիական հայեցակետի մշակումն է՝ պահպանողական-գաղափարախոսական դիրքերից (էջ 43): Ահա թե ինչու է Թ. Պարսոնսն իր առանցքային հասկացությունը համարում սոցիալական համակարգի տարրերի (անհատ, սոցիալական խմբեր, քաղաքական հաստատություններ և այլն) ֆունկցիոնալ միասնությունը՝ «հավասարակշռության» ձգտելու տեսանկյունից: Հասարակական իրականությունը ենթադրվում է որպես հավասարակշիռ գործառնող բաղադրիչների սոցիալական կառուցվածք: Ընդսմին, տվյալ սկզբունքը մեկնաբանվում է օրգանիցիզմի դիրքերից, կենսաբանականացվում է:

Հիրավի, սոցիալական իրականության այդ «նոր» ըմբռնումն ամենևին էլ նոր չէ և սոցիալական դարվինիզմի, պրագմատիզմի ու էմպիրիոկրիտիցիզմի տարրերի էկլեկտիկ մի խառնուրդ է: Իրոք, օրգանիզմի կյանքի և գործառնության համար կարևոր հավասարակշռության սկզբունքը բացարձակացվում է և վերածվում դոգմատիկ մի հասկացության, որի օգնությամբ Թ. Պարսոնսն ու նրա հետևորդները փորձում են բացատրել հասարակական կյանքը: Ավելին, կապիտալիզմի գաղափարախոսական ջատագովության նպատակով բնավ չի քննարկվում տվյալ սոցիալական իրականության պատմական ձևավորման հարցը: Տեղին է այն հետևությունը, որ ստրուկտուրային ֆունկցիոնալիզմի տեսական սնանկության պատճառներից մեկը կոնկրետ պատմական վերլուծություն կատարելու անկարողությունն է: «Գործողության տեսության» ընդհանուր կառուցվածքից ու բնույթից, սոցիալական իրականության դոգմատիկ ըմբռնումից օրինաչափորեն բխում են ստրուկտուրային ֆունկցիոնալիզմի սոցիոլոգիական իդեալիզմն ու մետաֆիզիկական մեթոդը:

Մենագրության երրորդ ու չորրորդ գլուխներում բնութագրված են ստրուկտուրային ֆունկցիոնալիզմի սոցիոլոգիական իդեալիզմն ու մետաֆիզիկական մեթոդը, վերջիններիս այնպիսի դրսևորումները, ինչպիսիք են հասարակական արտադրահարաբերությունների, նյութական պահանջմունքների ու տնտեսական շահերի սուբյեկտիվիստական-վոլյունտարիստական անտեսումը, սոցիալական կապերի ֆրոյդիստական հոգեբանականացումը: Հեղինակը բացահայտում է այդ իդեալիզմի սոցիալական ու իմացաբանական արմատները: Իդեալիզմն ու մետաֆիզիկան, նատուրալիստական ու սուբյեկտիվիստական ծայրահեղությունները վկայում են տեսական-մեթոդաբանական այն փակուղու մասին, որի առաջ կանգնել է արդի բուրժուական սոցիոլոգիան (էջ 65, 77):

«Գործողության տեսության» մեթոդի մետաֆիզիկական, հակադիալեկտիկական էությունն իր խտացված արտահայտությունն է գտնում էվոլյուցիան և հեղափոխությունը հակադրելու փորձերի մեջ: Եվ դա միանգամայն բնական է ու բնորոշ ո՛չ միայն այդ տեսության, այլև բուրժուական բոլոր սոցիոլոգիական տեսությունների համար:

Գ. Միխիթարյանն այս առումով իրավացիորեն նշում է. «Բավական է, որպեսզի նրանք ընդունեն և այն, ինչ որ էվոլյուցիայի հանրագումարն է և նրա հակադարձ կողմը, այսինքն՝ հեղափոխությունը, որպեսզի դրանով կարդան իրենց դասակարգի տիրապետության կամ, ինչպես Վ. Ի. Լենինը կասեր՝ «իրենց դրախտի» դատավճիռը» (էջ 99):

Մենագրության հինգերորդ գլուխը նվիրված է Թ. Պարսոնսի սոցիալ-քաղաքական հայացքների քննադատությանը: Իդեալիզմն ու մետաֆիզիկան, օբյեկտիվ հասարակական հարաբերությունների անտեսումն ու մարդկանց գործունեության սուբյեկտիվ կողմերի ֆետիշացումը «գործողության տեսության» մեջ որոշակի քաղաքական-գաղափարախոսական նպատակ են հետապնդում, այն է՝ հասարակության սոցիալ-քաղաքական համակարգի կառուցվածքն ու դինամիկան հակադրել դասակարգերի ու դասակարգային պայքարի վերաբերյալ լենինյան ուսմունքին: Ժամանակին, քննադատելով բուրժուական սոցիոլոգիան, Վ. Ի. Լենինը նշել է, որ դրա հակագիտական էության դրսևորումներից մեկը սոցիալականի ու անհատականի միջև հարաբերակցության պրոբլեմը լուծելու անկարողությունն է (տե՛ս Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 1, էջ 520):

Բուրժուական սոցիոլոգիայի լենինյան գնահատականը լիովին վերաբերում է նաև Թ. Պարսոնսի «գործողության տեսությանը»:

Մենագրության վերջին գլուխը նվիրված է պատմական դետերմինիզմի և ազատության պարսոնսյան ըմբռնման քննադատությանը: Մարքսիզմ-լենինիզմի բուրժուական քննադատները փորձում են մեխանիկորեն մասնատել Կ. Մարքսի ուսմունքի դիալեկտիկորեն փոխկապակցված երկու կողմերը՝ մատերիալիստական դետերմինիզմն ու գիտակցական հեղափոխական գործողության տեսությունը: Պատմական նախաձեռնության, բանվոր դասակարգի ու նրա կուսակցության հեղափոխական գիտակցության հարցերի վրա լենինյան շեշտադրումը, որը պայմանավորվում է կոնկրետ պատմական իրադրությամբ, հակադրվում է Կ. Մարքսի կանխատեսումներին: Գրքում համոզիչ ցույց է տրված նման փորձերի սնանկությունը:

Այսօր անհնար է արդեն Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխությունն ու դրա շնորհիվ մարդկության հասարակական կեցության ու գիտակցության մեջ կատարված գլոբալ տեղաշարժերը ներկայացնել որպես մի կուսակցության վոլյունտարիստական մտադրությունների ու գործողությունների արդյունք: Լենինիզմի դրոշի ներքո տեղի ունեցած համաշխարհային պատմական վերափոխումները անհնար է պատկերացնել որպես սուբյեկտիվ գործողությունների արդյունք, որոնք հակասում են օբյեկտիվ անհրաժեշտությանը: Մարդկության պատմության այդ շրջադարձը դեպի կոմունիստական քաղաքակրթություն բացատրվում է հասարակական առաջընթացի օբյեկտիվ օրինաչափություններով, որոնք տեսականորեն իմաստավորվել են մարքս-լենինյան ուսմունքում:

Հարկ ենք համարում նշել, որ մենագրությունը կշահեր, եթե հեղինակը քննադատեր սոցիալիստական դեմոկրատիայի աղավաղման պարսոնսյան պլյուրալիստական փորձերը, ցույց տրվեր Թ. Պարսոնսի տեսության և մեթոդաբանության կողմնորոշումը դեպի ռևիզիոնիստական ու ռեֆորմիստական գաղափարախոսությունները, կոնկրետ օրինակներով նշվեր վերջիններիս սերտաճման փաստը բուրժուական գաղափարախոսության հետ:

Արժեքավորելով պրոֆեսոր Գ. Ե. Միխիթարյանի նոր մենագրությունը, վստահորեն կարելի է ասել, որ այն լուրջ կռվան է բուրժուական գաղափարախոսության դեմ մղվող պայքարում: Այն օգտակար կլինի նաև գիտական այդ պրոբլեմներով զբաղվողների, գաղափարախոսական բնագավառի աշխատողների և պրոպագանդիստների համար:

**Բ. Գ. ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

---

*Անդրադառնալով տպագրվածին*

# «ՀԱՅՐԵՆԻ ՀՈՂԻՆ ՀԱՅՐԱԿԱՆ ԽՆԱՄՔ»

**ՀՍՍՀ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ** մինիստրության հողագիտության և ագրոքիմիայի գիտահետազոտական ինստիտուտի դիրեկտոր Հ. Պ. Պետրոսյանի «Հայրենի հողին հայրական խնամք» հոդվածը («Լենինյան ուղիով», № 12, 1980 թ.) լայն արձագանք գտավ և դրանում բարձրացված հարցերն արժանացան համապատասխան կուսակցական կազմակերպությունների, գյուղատնտեսական և ջրատնտեսական մարմինների ուշադրությանը: Ի՞նչ է արվել մելիորացիայի գործը բարելավելու, հողերի բերրիությունը բարձրացնելու նպատակով, ինչպիսի՞ պրոբլեմներ են ծառացել և ի՞նչ չլուծված հարցեր կան հանրապետության գյուղատնտեսության այդ կարևոր ոլորտում: Այս մասին է խոսվում ՀՍՍՀ մելիորացիայի և ջրային տնտեսության, ՀՍՍՀ գյուղատնտեսության մինիստրություններից, «Հայգյուղքիմիա» հանրապետական արտադրական միավորումից, ՍՍՀՄ մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստրության «Գլխհայջրշին» գլխավոր վարչությունից, ինչպես և կուսակցության մի քանի շրջկոմներից մեր խմբագրության ստացած պատասխաններում:

Հոդվածում առաջադրված հարցերը, գրում է ՀՍՍՀ մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստրության շահագործման գլխավոր վարչության պետ Ռ. Ա. Գրիգորյանը, հանրապետության գյուղատնտեսության զարգացման համար առանցքային են և դրանց ժամանակին ու ճիշտ լուծումը կնպաստի օգտագործելի հողատարածությունների մելիորատիվ վիճակի բարելավմանը, գյուղատնտեսական մթերքների բերքատվության կայունության ապահովմանը:

Ոռոգելի հողատարածություններից կայուն բարձր բերք ստանալու, ոռոգման ջրի ավելի ռացիոնալ և արդյունավետ օգտագործման հարցում կարևոր նշանակություն ունեցավ ՀԿԿ Կենտկոմի և հանրապետության Մինիստրների խորհրդի 1979 թ. մայիսի 29-ի որոշմամբ նախատեսված միջոցառումների իրականացումը, ոռոգելի ջրի նկատմամբ խիստ հսկողություն սահմանելու նպատակով այդ որոշմամբ ստեղծված հանձնաժողովի հետևողական աշխատանքը:

Ոռոգման և չորացված հողերի մելիորատիվ վիճակը վերահսկելու, հողերի և ջրի քիմիական բաղադրությունները որոշելու նպատակով մինիստրության սիստեմում ստեղծվել է մշտական գործող հիդրոերկրաբանական-մելիորատիվ արշավախումբ, որի գործունեությունը սկզբում սահմանափակվում էր միայն Արարատյան հարթավայրով: 1981 թ. արշավախումբը սկսեց հիդրոերկրաբանական-մելիորատիվ աշխատանքներ կատարել նաև Շիրակի հարթավայրում: Արտադրական բազայի ստեղծումից հետո, մոտ ապագայում, այդ աշխատանքները կիրականացվեն ամբողջ հանրապետությունում:

Արշավախմբի կատարած հիդրոերկրաբանական-մելիորատիվ հետախուզչական աշխատանքների կոմպլեքսը ներառում է միմյանց հետ փոխկապակցված այնպիսի միջոցառումներ, ինչպիսիք են գրունտային ջրերի հորիզոնների և կոլեկտորադրենաժային ու ոռոգման ցանցերի մշտական շաբաթական դիտումը, գրունտային և ոռոգման ջրերի որակական բնութագիրը և քիմիական կազմը, հողերի աղակալման, խոնավության աստիճանի որոշումը և այլն: Արարատյան դաշտի շրջաններում շարունակվում են աշխատանքները ստորգետնյա ջրերի հորիզոնների որոշման հատուկ դիտողական ցանցի ստեղծման համար:

Վերջերս կառավարության որոշմամբ կազմակերպվել է Արարատյան դաշտի կոլեկտորադրենաժային ցանցերի շահագործման վարչություն, որը զբաղվելու է նշված ցանցերի մաքրման, վերանորոգման և շահագործման աշխատանքներով. դրանք նախկինում կատարում էին Արարատյան հարթավայրի ոռոգման սիստեմների վարչությունները:

Այս ամենը վկայում է, որ մեծ ուշադրություն է նվիրված Արարատյան դաշտի 80 հազար հա մելիորացված հողերի և այդտեղ տեղաբաշխված մելիորատիվ սիստեմների ու կառուցվածքների պահպանմանն ու շահագործմանը: Նշված հողատարածությունից 50 հազար հեկտարի վրա գործում է շուրջ 1.300 կմ կոլեկտորադրենաժային ցանց, իսկ 3.800 հեկտարի վրա՝ 72 ուղղահայաց հորեր (դրենաժների մի-

ջին երկարությունը կազմում է շուրջ 27 մետր՝ մեկ հեկտարի վրա):

Դրենաժի 3 մետր և ավելի խորությամբ նորմաներին համապատասխան «Հայջրնախագիծ» ինստիտուտը մշակել է կոմպլեքս միջոցառումներ Արարատյան դաշտի հողերի մելիորատիվ վիճակի բարելավման համար, որի հիման վրա կազմվել է նախագիծ:

Մինիստրության ստորերկրյա ջրերի վարչությունը 1981 թ. ընթացքում հորերի վերանորոգման համար պայմանագրեր է կնքել Մասիսի և Էջմիածնի շրջանների 7 ջրօգտագործող տնտեսությունների հետ: Վեց տնտեսություններում վերանորոգվել է 30 հոր: Այդ աշխատանքները շարունակվում են: Վարչությունն ի վիճակի է հորերի վերանորոգումները կատարել շատ ավելի լայն ծավալով, եթե ջրօգտագործող տնտեսությունները նման բնույթի պայմանագրեր կնքելու ցանկություն դրսևորեն: Արարատյան հարթավայրում այժմ գործում են 877 խորքային հորեր, դրանց մեծ մասն ունի ներտնտեսային, իսկ 69-ը՝ միջտնտեսային նշանակություն: Մինիստրության Հոկտեմբերյանի, Էջմիածնի և Արաքսի ջրհան կայանների վարչությունները 1981 թ. պայմանագրային կարգով ստանձնել են 530 խորքային հորերի տեխնիկական սպասարկումը:

Տարեցտարի ավելանում է երեսապատված ջրանցքների ցանցը, հատկապես միջտնտեսային, որով պակասեցվում են ոռոգման ջրերի ֆիլտրացիոն կորուստները: Արարատյան հարթավայրի ոռոգման ջրանցքներն այսօր երեսապատված են 21 տոկոսով, որից միջտնտեսայինը՝ 52, իսկ ներտնտեսայինը՝ միայն 14 տոկոսով: Մայր ջրանցքներից Արտաշատի և ստորին Հրազդանի ջրանցքները լրիվ երեսապատված են:

Պլանային ջրօգտագործման իրականացման նպատակով տարեցտարի ավելանում է ջրաչափական հանգույցների թիվը. միայն վերջին 3 տարում կառուցվել են շուրջ 2.000 նման հանգույցներ: Ջրօգտագործող տնտեսությունների հաշվեկշռում գտնվող ներտնտեսային մելիորատիվ համակարգերի ու կառուցվածքների անխափան աշխատանքն ապահովելու նպատակով դրանք լիովին վերցվում են տեխնիկական սպասարկման ու շահագործման: Հանրապետությունում առկա ոռոգման նոր տեխնիկան արդյունավետ օգտագործելու նպատակով նախատեսվում է ստեղծել միջշրջանային (Հրազդանի, Աբովյանի և Նաիրիի շրջանների բազայի վրա) արտադրական տնտհաշվարկային տեղամաս:

ՀՍՍՀ գյուղատնտեսության մինիստրի առաջին տեղակալ Գ. Դ. Սադոյանը մեզ գրում է, որ գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման, ոռոգման ջրովի ելքերի հանձնման, ոռոգվող հողերի օգտագործման, ոռոգման ցանցի շահագործման բնագավառներում ծողովրդատնտեսական պլաններով նախատեսված առաջադրանքները հիմնականում կատարվում են: Որոշակիորեն բարելավվել են նշված աշխատանքների որակական ցուցանիշները: Սակայն, ինչպես և հոդվածում է նշված, կատարված աշխատանքների քանակական և որակական ցուցանիշները դեռևս չեն բավարարում արդի պահանջներին: Այժմ գյուղատնտեսության մինիստրությունը և «Գլխհայջրշին» վարչությունը խիստ հսկողություն են սահմանել մելիորատիվ և ագրոտեխնիկական կոմպլեքսային միջոցառումների իրականացման նկատմամբ:

Կոնկրետ միջոցներ են ձեռնարկվում ջրովի հողատարածությունների օգտագործման վիճակի բարելավման համար: Նախատեսված է ընթացիկ հնգամյակում 50 հազար հեկտարի վրա կատարել ոռոգման ցանցի վերակառուցման աշխատանքներ՝ ջրման աշխատատար պրոցեսների մեքենայացմամբ. ջրովի վարելահողերի հիմնական հարթագծում կիրականացվի 30 հազար հեկտարի և կուլտուր-տեխնիկական աշխատանքներ՝ 50 հազար հեկտարի վրա:

Եթե նախորդ տարիներին Արարատյան հարթավայրի աղուտ և գերխոնավ հողերի իրացման ու դրանց մելիորատիվ վիճակի բարելավման աշխատանքները կատարվում էին առանձին կտորներով, ոչ կոմպլեքս, իսկ ցամաքեցնող ցանցերը կառուցվում էին հիմնականում առանց նախագծերի, չպահպանելով պահանջվող պարամետրերն ու նորմալ լծորդումները, ապա ներկայումս այդ բնագավառում զգալի դրական տեղաշարժեր են կատարվում:

Համապատասխան գիտահետազոտական ինստիտուտները սահմանել են ցամաքեցնող ցանցի հիմնական պարամետրերը: Աղազերծման և գերխոնավ հողերի մելիորատիվ վիճակի բարելավման նպատակով կազմված են կոմպլեքս նախագծեր մեծ զանգվածների համար (առաջին փուլի համար 13 հազար հեկտար): Դրանք արդեն իրականացվում են: Հիմնականում կառուցվում են ցամաքեցնող փակ ցանցեր՝ ժամանակակից մեքենաների կիրառմամբ:

Նախկինում կառուցված ոռոգման համակարգերի վերաբերյալ հոդվածում բերված փաստերը համապատասխանում են իրականությանը: Արզնի—Շամիրամի, Թալինի 1-ին հերթի, Քասախի և այլ ոռոգման ցանցերի նախագծման ու կառուցման ժամանակ չեն իրականացվել մելիորատիվ համակարգերի կառուցման կոմպ-



լեքս միջոցառումներ՝ հողերի իրացում, բանավանների կառուցում, ոռոգման ջրի ապահովում և այլն: Այդ պատճառով մինչև օրս ձըգձըգվում է այդ համակարգերի գոտում հանձնըված հողատարածությունների մի մասի գյուղատնտեսական իրացումը:

Անցյալում թույլ տրված սխալների մի մասն ունեցել է օբյեկտիվ պատճառներ: Կապիտալ ներդրումների պակասը, նյութատեխնիկական անբավարար մատակարարումը, համապատասխան մեխանիզմների բացակայությունը հնարավորություն չեն ընձեռել մելիորատիվ համակարգերի նախագծման և իրականացման աշխատանքները կատարելու կոմպլեքս եղանակով: Այժմ դրությունը շտկվում է: Ինչպես Թալինի, այնպես էլ մյուս շրջանների մելիորատիվ օբյեկտների նախագծման և իրականացման աշխատանքները կատարվում են կոմպլեքսային եղանակով: Սակայն նոր բանավանների կառուցման աշխատանքները դեռևս ձգձգվում են:

Ջրման աշխատատար պրոցեսների մեքենայացման բնագավառում որոշակի աշխատանքներ կատարվում են, սակայն դրանք տակավին չեն ապահովում արդի պահանջները: Հակաէռոզիոն միջոցառումների, կուլտուր-տեխնիկական և հարթեցման աշխատանքներում նույնպես առկա են թերություններ: Միջոցներ են ձեռնարկվում դրությունը շտկելու համար:

Հանրապետության գյուղմինիստրության «Հայգյուղքիմիա» արտադրագիտական միավորման նախագահի տեղակալ Ա. Վ. Կարապետյանը խմբագրությանը հայտնում է, որ միավորումը մշակել և իրականացնում է մի շարք ագրոտեխնիկական միջոցառումներ հողերի բերրիության, ինչպես նաև հողի որակի բարձրացման նպատակով: Կոլտնտեսությունների և սովխոզների համար ըստ կուլտուրաների և դաշտերի կազմված են հողային ագրոքիմիական քարտեզներ, շրջանային արտադրամիավորումների հսկողությամբ և անմիջական մասնակցությամբ իրականացվում են քիմիացման միջոցառումները:

Ինչպես հայտնի է, Արարատյան դաշտավայրում ու մյուս շրջաններում մշակվում են մեծ քանակությամբ բոստանային և բանջարանոցային կուլտուրաներ՝ ամոնիակային սելիտրայի օգտագործմամբ: Դա որոշակի վտանգ է ներկայացնում շրջակա միջավայրի աղտոտման առումով: Այդ վտանգը սպառնալից է հատկապես Սևանա լճի համար: Ուստի կըտրականապես արգելված է ամոնիակային սելիտրայի և քլոր պարունակող օրգանական նյութերի օգտագործումը Սևանի ավազանում: Ամոնիակային սելիտրայի օգտագործումը կիսով չափ պակասեցվում է նաև Արարատյան հարթավայրի ցանքատարածություններում:

ՍՍՀՄ մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստրության՝ Հայկական ՍՍՀ-ում մելիորատիվ շինարարության գլխավոր վարչության («Գլխհայջրշին») պետ Մ. Գ. Գևորգյանը մեզ գրում է, որ հանրապետությունում մելիորատիվ շինարարության մեծ ծավալի աշխատանք է իրականացվում: Այդ աշխատանքը նոր թափով ծավալվեց 1977 թ. հետո, երբ ընդունվեց ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի՝ «Հայկական ՍՍՀ-ում ոռոգելի հողագործության հետագա զարգացման և արդյունավետության բարձրացման միջոցառումների մասին» որոշումը: Մեր հանրապետության գյուղատնտեսության ապագայի համար բախտորոշ այդ որոշումը դարձավ նաև Արարատյան հարթավայրի աղուտ և գերխոնավ հողերի իրացման գործնական ծրագիր:

Մշակված է հողերի մելիորացիայի առաջին հերթի կոմպլեքս ծրագիրը: Նախատեսվում է կառուցել տեխնիկապես կատարյալ ցամաքեցնող և ոռոգվող համակարգեր: Վարչությունն ապահովված է արդիական հզոր տեխնիկայով և անհրաժեշտ միջոցներով: Արդեն կառուցվել է 105 կմ երկարությամբ հորիզոնական փակ դրենաժ: Մագիստրալային ոռոգման ջրանցքների շինարարությունը կոմպլեքսայնորեն մեքենայացված է, այստեղ կիրառվում են խրամատային ռոտորային էքսկավատորներ, բետոն փոխադրող և տեղադրող մեքենաներ:

1981 թ. կառուցվել է բետոնապատ յոթ կիլոմետրանոց ջրանցք, հարթագծման աշխատանքներում կիրառվում են հզոր բուլդոզերներ, սկրեպերներ և լայնահիտ հատակագծիչներ:

Միաժամանակ հարկ է նշել, որ մեր աշխատանքներում հանդիպում են լուրջ խոչընդոտներ: Առանձնապես անբավարար են քիմիական մելիորանտների մատակարարումները, զգալիորեն ավելի պակաս ծծմբական թթու և երկաթարջասպ է ստացվում, քան նախատեսված է: Ջրաշինական կազմակերպությունները լիովին չեն ապահովվում նախագծային-նախահաշվային փաստաթղթերով: Այդ պատճառով ձգձգումներով են իրականացվում հարթագծման աշխատանքները, կոլեկտորների և փակ դրենաժային ցանցի կառուցումը:

Նկատի ունենալով Արարատյան հարթավայրի հողերի իրացման մեծ նշանակությունը, այդ հարցը 1981 թ. հատուկ քննարկման առարկա դարձավ ՍՍՀՄ մելիորացիայի և ջրային տընտեսության մինիստրության կոլեգիայում: Որոշվեց ստեղծել Արարատյան հարթավայրի աղուտ հողերի իրացման բոլոր աշխատանքների

կոորդինացման վարչություն և աղազերծված հողերի մելիորատիվ համակարգերի շահագործման ծառայություն, որի հիմնական ֆունկցիան նախատեսված բերքատվությամբ հողերի հանձնումն է կոլտնտեսություններին և սովխոզներին:

Արարատյան հարթավայրի հողերի մելիորացման աշխատանքների որակի բարելավման և առկա հզոր տեխնիկայի օգտագործման արդյունավետության բարձրացման նպատակով իրականացվում է շինարարական ստորաբաժանումների մասնագիտացման ծրագիրը:

Դեռևս 1978 թ. վարչության կազմում ստեղծված «Մելիորատոր» սովխոզի դաշտերում ներդրվում է բարձրարտադրողական լայն ընդգրկման անձրևացման տեխնիկա: Մասնավորապես «Կուբան» անձրևացման մեքենայի կիրառմամբ յուրացվող նոր հողերում ոռոգման աշխատանքների մեքենայացման նախադրյալներ են ստեղծվում: Մելիորատիվ համակարգերի ավտոմատացման մարզում աշխատանքներն ընդլայնելու նպատակով այս տարի Էջմիածնի շրջանում կսկսվի ավտոմատացման միջոցների արտադրության գործարանի շինարարությունը:

Մշտապես աճում է փակ դրենաժի կառուցման ծավալը: Այդ կապակցությամբ միջոցներ են ձեռնարկվում կավե խողովակների սեփական արտադրություն կազմակերպելու համար: Հումքի նմուշներն արդեն ուղարկվել են Լատվիական ՍՍՀ՝ լաբորատոր ուսումնասիրություններ կատարելու և փորձնական արտադրանք թողարկելու համար: Տեխնոլոգիական պրոցեսների ինդուստրացման մակարդակի բարձրացման նպատակով իրականացվում են նաև այլ միջոցառումներ:

«Գլխհայջրշին» նամակում միաժամանակ նշվում է, որ Արարատյան հարթավայրի աղուտ և գերխոնավ հողերի իրացմանը մասնակցող բոլոր կազմակերպությունների գործունեության բարելավման և կոորդինացման նպատակով ձեռնարկվող միջոցները դեռևս չեն տալիս ցանկալի արդյունքներ: Քիմիական մելիորանտների մատակարարման համար չեն հատկացվում անհրաժեշտ քանակի վագոններ և ցիստեռններ: Կատարելագործման կարիք ունի աղուտ հողերի իրացման վերաբերյալ հողագիտության և ագրոքիմիայի գիտահետազոտական ինստիտուտի հանձնարարականը, որտեղ, մասնավորապես, ըստ առանձին շրջանների չի կարգավորված գրունտային ջրերի մակարդակի իջեցման աստիճանը, անտեսված են շրջակա միջավայրի պահպանության հարցերը, չի սահմանված աղազերծված հողերի հանձնման և ընդունման կարգը:

«Հայջրտնտնախագիծ» ինստիտուտը ժամանակին շինարարներին չի ապահովում նախագծանախահաշվային փաստաթղթերով: Նախագծային լուծումները ոչ միշտ են հաշվի առնում հողագիտության և ագրոքիմիայի ԳՀԻ հանձնարարականները:

Հարկ է նշել նաև, որ քննարկվող հոդվածում շարադրված շատ հարցեր արտացոլում են աղուտ հողերի իրացման՝ մինչև 1976 թ. եղած պրակտիկան: Այսպես, հենց հողագիտության և ագրոքիմիայի ԳՀԻ հանձնարարականների համաձայն, գրունտային ջրերի իջեցումը նախորդ տարիներին կատարվել է 2 մետր սահմանակետով: Հետագայում «Գլխհայջրշին» կառուցած բոլոր փակ դրենաժներով նախատեսվում է գրունտային ջրերի իջեցում 3 մետրից ոչ պակաս մակարդակի: Ոռոգման ցանցը կազմավորվում է ջրորդաններով և բետոնապատ ջրանցքներով: Հարթաչափական աշխատանքների որակը վերահսկվում է լազերային հարմարանքներով, իսկ քիմիական մելիորացիայի որակը՝ մասնագիտացված լաբորատորիայով:

Ամսագրի հոդվածին արձագանքել են ՀԿԿ Թալինի և Հոկտեմբերյանի շրջկոմները: Կուսակցության Թալինի շրջկոմի առաջին քարտուղար Պ. Մ. Խաչատրյանը գրում է, որ ամսագրի բարձրացրած հարցերը հրատապ են և կարևոր նշանակություն ունեն նաև Թալինի շրջանի համար: Միանգամայն ճիշտ է նկատված, որ հողային ռեսուրսների պահպանումը և ռացիոնալ օգտագործումը, դրանց պլանաչափ վերարտադրությունը և բերրիության հետևողական բարձրացումը պետք է իրագործվեն ոչ թե անջատ միջոցառումներով, այլ կոմպլեքսայնորեն:

Վերջին տարիներին շրջանում մեծ ծավալի ջրաշինարարական աշխատանքներ են իրականացված: Այժմ Ախուրյանի ջրամբարի ջրերն ընդունելու համար կառուցվում են շուրջ 6 կմ երկարությամբ թունել, մեծ ու փոքր ջրանցքներ: Դրանք հիմնականում պատրաստ կլինեն գարնանը: Սակայն այսօր մեր առջև ծառացած են ոչ պակաս անհետաձգելի խնդիրներ, որոնք վերաբերում են ոռոգելի նոր հողերի նախապատրաստմանը, ներտնտեսային ոռոգիչ ցանցի և արտադրական օբյեկտների ստեղծմանը: Մեկ ուրիշ հանգամանք. նախատեսված է Ախուրյանի ջրամբարի ջրերը մղիչ պոմպերի միջոցով բարձրացնել շրջանի բարձրադիր գոտու գյուղերը (երեք հերթով) և ոռոգման ջրով ապահովել շուրջ 6.000 հեկտար բերրի հող: Չնայած մեր բազմաթիվ ահազանգումներին,



մինչև օրս այդ ուղղությամբ համարյա ոչինչ չի արվել, նույնիսկ նախագծերն ու նախահաշիվները չեն պատրաստվել: Ձգձգվում են նաև մեր շրջանի տերիտորիայում կառուցվելիք Մյասնիկյանի ջրամբարի նախագծման աշխատանքները:

Չնայած հողերի իրացման և բարելավման նպատակով վերջին տարիներին շրջանում կատարված մեծ ծավալի աշխատանքներին, այդ բնագավառում պլանային առաջադրանքները խիստ թերակատարվել են: Այսպես, 1966—1980 թվականներին նախատեսված 12.068 հեկտարի դիմաց իրացվել կամ բարելավվել է 8.072 հեկտար հող: 1.771 հեկտարի փոխարեն ջրովի հողերի հարթագծում է կատարվել 1.301 հեկտարի վրա: Ցածր է նաև կատարված աշխատանքների որակը: Այս հանգամանքն անհանգստացրել է ՀԿԿ շրջկոմին, միջոցներ են ձեռնարկվել դրությունը շտկելու համար: Շրջկոմի բյուրոն այդ հարցը քննարկել է մեքենամելիորատիվ կայանի, գյուղպետկոմտեխնիկայի, տնտեսությունների ղեկավարների ու մասնագետների մասնակցությամբ, միջոցառումներ են մշակվել առաջադրանքները կատարելու և աշխատանքի որակը բարձրացնելու համար:

Դրական տեղաշարժերը նկատելի են, սակայն կան հանգամանքներ, որոնք չի կարելի անտեսել: Թալինի շրջանում հողերը կտրտված են, ունեն շեշտակի թեքություն, խիստ քարքարոտ են, ուստի և դրանց իրացումը կապված է մեծ դժվարությունների հետ: Մեքենամելիորատիվ կայանը և պետկոմգյուղտեխնիկայի շրջանային միավորման մելիորատիվ ջոկատը անբավարար տեխնիկական զինվածության պատճառով ի վիճակի չեն կատարելու առաջադրված խնդիրները: Հաճախ ճիշտ չեն կազմվում հողերի իրացման նախահաշիվները, որը պատճառ է դառնում հող իրացնող կազմակերպությունների տնտեսական ոչ բարվոք վիճակի, մեխանիզատորական կադրերի հոսունության: Կարծում ենք, որ վերադաս մարմինները կմտահոգվեն նշված կազմակերպությունները արդիական հզոր տեխնիկայով զինելու մասին, մանավանդ որ առաջիկայում Թալինի շրջանում կատարվելու են խոշոր ծավալի մելիորատիվ աշխատանքներ:

Շրջանում միջոցներ են ձեռնարկվում հողի բերրիությունը բարձրացնելու, հողային ֆոնդի օգտագործումն ու պահպանումը բարելավելու համար: Մասնավորապես, այդ մասին լուրջ խոսակցություն ծավալվեց և համապատասխան միջոցառումներ մշակվեցին ՀԿԿ շրջկոմի 1981 թ. սեպտեմբեր ամսին կայացած պլենումում:

ՀԿԿ Հոկտեմբերյանի շրջկոմի առաջին քարտուղար Ռ. Դ. Գրիգորյանի՝ խմբագրությանը հասցեագրած պատասխանում ասվում է, որ անցած շուրջ մեկ տարվա ընթացքում հողերի իրացման և մելիորատիվ աշխատանքների արդյունավետության բարձրացման նպատակով կատարվել են որոշակի աշխատանքներ: Բարելավված է հողերի նախնական կապիտալ հարթեցման որակը: Հարթեցման աշխատանքներն իրականացնում են փորձված մասնագետներ: Ծծմբական թթվի մեկ տոկոսանոց լուծույթ ստանալու նպատակով քիմիական մելիորացման տեղամասերում կիրառվում են ավտոմատ դոզաչափեր, որոնք պատրաստվել են Կիրովականի «Ավտոմատիկա» գիտահետազոտական ինստիտուտում և անցել են բազմակողմանի դաշտային փորձարկումներ:

Հողագիտության և ագրոքիմիայի ԳՀ ինստիտուտի հանձնարարականով, լվացման ջրի մագնիսացման նպատակով կիրառվում են ջրթող հատուկ ապարատներ:

Կազմակերպված է ջրատարներում ջրի մակարդակի սիստեմատիկ չափում: Մինչ քիմիական մելիորացումը, հողի խոր փխրեցում է կատարվում տարբեր մակնիշի փխրեցուցիչներով: Ձեռք է բերված նաև գյուղատնտեսության մեքենայացման և էլեկտրիֆիկացման ինստիտուտում պատրաստված թումբ կապող գործիք:

Չնայած ջրատնտեսական մարմինների կատարած որոշակի աշխատանքներին, Արարատյան դաշտի գրունտային ջրերի մակարդակի համընդհանուր իջեցման խնդրում դեռևս կան չլուծված շատ հարցեր: Դրանք վերաբերում են ամենից առաջ փակ դրենաժ-կոլեկտորային համակարգերի ստեղծմանը, մեծ տարածությունների վրա դրանց պարամետրերի ճիշտ ընտրությանը, ըստ տեղական հիդրոերկրաբանական պայմանների գրունտային ջրերի մակարդակների սիստեմատիկ չափմանը, նախագծային-նախահաշվային գործի բարելավմանը, հատկապես կոլեկտորային համակարգերի կապակցման հարցում գիտահետազոտական աշխատանքների ծավալմանը:

Հոդվածում նշվում է, որ Արարատյան դաշտում 2.500 հա իրացված հողերի կեսից ավելին լրիվ մելիորացված չէ, իսկ զգալի տարածություններ առհասարակ չեն օգտագործվում կրկին աղակալվելու հետևանքով: Նման վիճակը տարիների ընթացքում իրացված հողերի վատ օգտագործման, դրենաժային համակարգերի անբավարար աշխատանքի հետևանք է: Դրությունը շտկելու համար անհրաժեշտ է առաջին հերթին կարգի բերել դրենաժային համակարգերը, մաքրել դրանք, խորացնել, դարձնել փակ, վերացնել դրանցում եղած բոլոր դիմհարները, իսկ այնուհետև հանձնարարել

նման հողակտորներ ունեցող տնտեսություններին՝ կատարելու հողի աշնանային-ձմեռային լվացումներ: Մինչդեռ այդ վերջին միջոցառումը բոլորովին չեն կիրառում Արարատյան հարթավայրի տնտեսությունները, չնայած նման պրակտիկա նախկինում եղել է:

Քիմիական մելիորացման և հողալվացման աշխատանքները շրջանում հաճախ ձգձգվում են, չի բավարարում նաև լվացման ջուրը, մանավանդ որ առաջիկա տարիներին աշխատանքների ընդլայնման շնորհիվ տարեկան անհրաժեշտ կլինի օգտագործել **50—100** մլն խմ ջուր: Ներկայումս շրջանում գործող **13 ՇՄՇ**-ն հնարավորություն ունի տարեկան օգտագործելու **10—15** մլն խմ, այն էլ հիմնականում գրունտային ջրեր:

Չի լուծվում ծծմբական թթվի և երկաթարջասպի անխափան մատակարարման հարցը՝ երկաթուղու հարուցած դժվարությունների պատճառով:

Ինչպես տեսնում ենք, ամսագրի հոդվածի առթիվ խմբագրության ստացած պատասխաններում ևս բարձրացվում են իրոք հրատապ հարցեր, որոնց ժամանակին լուծումը անհետաձգելի խնդիր է:

ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը, մեր հանրապետության կուսակցական ու սովետական ղեկավար մարմինները մշտական հոգատարություն են տածում սահմանափակ հողատարածությունների պայմաններում Հայաստանի գյուղատնտեսության ինտենսիվացման, գյուղատնտեսական մթերքների արտադրության անշեղ ավելացման նկատմամբ: Վերջերս ՀԿԿ Կենտկոմը հավանություն տվեց Նաիրիի շրջանի ջրատնտեսական մարմինների նախաձեռնությանը՝ ոռոգման և ջրարբիացման արդյունավետությունը բարձրացնելու նպատակով սոցիալիստական մրցություն ծավալելու վերաբերյալ: Այդ նախաձեռնության լայն տարածումը էապես կնպաստի հանրապետությունում գյուղատնտեսական մթերքների արտադրության հետագա աճի առաջադրանքների կատարմանը:

Պահպանենք մայր հողը՝ բնության այդ անգնահատելի հարստությունը: Հողը լիովին վարձահատույց կլինի իր խնամքի և պահպանության համար թափած ջանքերի ու ներդրված միջոցների դիմաց:

---



Адрес редакции: 375033, Ереван-33, ул. Барекамутян, 59 г.

Խմբագրության հասցեն՝ **375033, Երևան—33, Բարեկամության 59** գ: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*Հանձնված է շարվածքի՝ 14.1.82 թ.: Ստորագրված է տպագրության 10.2.82 թ.: ՎՖ 04617: Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրություն՝ բարձր: 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 15532: Պատվեր 52:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան—23, Օրջոնիկիձեի պող. № 2:*

Типография издательства ЦК КП Армении.
Ереван-23, пр. Орджоникидзе, 2.

# Ինչ կարդալ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Երկերի լիակատար ժողովածու: *Հ. 29: «Հայաստան» հրատ., 1981:*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Երկերի լիակատար ժողովածու: *Հ. 36: «Հայաստան» հրատ., 1981:*

Л. И. БРЕЖНЕВ — **О Ленине и ленинизме.** М., Политиздат, 1981.

*Ժողովածուն ամփոփում է ընկեր Լ. Ի. Բրեժնևի տարբեր տարիների զեկուցումներում, ելույթներում, ճառերում, հոդվածներում և ողջույններում օգտագործված ասույթները Վ. Ի. Լենինի և լենինիզմի մասին:*

Л. И. БРЕЖНЕВ — **Об интернационализме и дружбе народов.** М., Политиздат, 1981.

*Ժողովածուում լրիվ կամ քաղվածաբար զետեղված են ընկեր Լ. Ի. Բրեժնևի 1964— 1981 թթ. ժամանակաշրջանի զեկուցումները, ճառերը, ելույթները, հոդվածները, հուշերը և ողջույնները, որոնցում լուսաբանվում են Սովետական Միության ժողովուրդների եղբայրական բարեկամության ու զարգացման վերաբերյալ ՍՄԿԿ փորձը, նրա պայքարը պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի հաղթանակի համար:*

Л. И. БРЕЖНЕВ — **Советские профсоюзы в условиях развитого социализма.** Изд. 2, доп. М., Политиздат, 1981.

*Ժողովածուում լրիվ կամ հատվածաբար ամփոփված են ընկեր Լ. Ի. Բրեժնևի 1964 թ. նոյեմբերից մինչև 1981 թ. փետրվարն ընդգրկող ժամանակաշրջանի զեկուցումները, ճառերը, ելույթներն ու ողջույնները, որոնցում լուսաբանված են սովետական արհմիությունների տեսական հիմունքներն ու արդի փուլում նրա գործնական խնդիրները:*

Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ— Ճառ ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում *1981 թ. նոյեմբերի 16-ին:*

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշումը *ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1981—1985 թվականների պետական պլանի, ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1982 թվականի պետական պլանի և ՍՍՀՄ 1982 թվականի պետական բյուջեի նախագծերի մասին: «Հայաստան» հրատ., 1981:*

Հայաստանի կոմունիստական կուսակցության XXVII համագումարի նյութերը: *«Հայաստան» հրատ., 1981:*

Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության աշխատանքային օրենսգիրք: *«Հայաստան» հրատ., 1981:*

Ա. ԲՈԳՈՄՈԼՈՎ *և ուրիշներ—* Գերմանական Դեմոկրատական Հանրապետություն: *Տեղեկագիրք: «Հայաստան» հրատ., 1981:*

**Вопросы организационно-партийной работы КПСС.** Сборник документов. Изд. III, доп. М., Политиздат, 1981.

*Գիրքը բովանդակում է կուսակցության XXIII, XXIV, XXV, XXVI համագումարների որոշումների ամբողջական կամ հատվածական տեքստերը, այդ համագումարներում ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցումների համապատասխան բաժինները, կազմակերպական-կուսակցական հարցերի վերաբերյալ կուսակցության Կենտկոմի պլենումների, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի ու քարտուղարության որոշումները:*

Հ. ՂԱԶԱՐՅԱՆ— Գրողը և իրականությունը: *Հոդվածներ: Ուսումնասիրություններ: Ե., «Սովետական գրող» հրատ., 1981:*

*Ժողովածուի ընդգրկած հոդվածներում և ուսումնասիրություններում լուսաբանվում են մի շարք էական պրոբլեմներ՝ ազգային գրականության ինտերնացիոնալ բնույթը, գրողի և իրականության փոխհարաբերությունները, ժողովրդական ստեղծագործության և դասական ավանդների ժառանգորդման կենսականությունը, ինչպես նաև գիտատեխնիկական հեղափոխության փուլում գրականությանն առաջադրվող բարոյագիտական, հայրենասիրական, հումանիստական նոր խնդիրներ:*

Գինը՝ 25 կ.
Индекс 77783

ISSN 0130—8114

# Գիտության և տեխնիկայի նորություններ

## ՀՈՒՇԱՐԱՐ ՀԵՌՈՒՍՏԱՑՈՒՅՑԸ

*Մարդը կաղում է: Թվում է, թե բավական է բուժել նրա վնասվածքը կամ ոսկրային հիվանդությունը, և նա կքայլի ուղիղ ու թեթև: Դժբախտաբար, այդպես չէ: Քայլվածքի համար պատասխանատու են ո՛չ միայն ոտքերը, այլև ուղեղը: Հիվանդության ժամանակ (երբեմն ի ծնե) ուղեղում ստեղծվում է քայլվածքի որոշակի ստերեոտիպ, որը և «թելադրում է» ոտքերին: Դրա համար էլ ֆիզիկական արատից լրիվ բուժված մարդը դեռ երկար ժամանակ չի կարողանում տիրապետել ազատ շարժումներին: Նման դեպքերում բժիշկը նշանակում է ֆիզիկական վարժությունների, տարբեր պրոցեդուրաների հատուկ ցիկլ: Հիվանդի շարժողական ֆունկցիայի լրիվ վերականգնմանը կօգնի Ռիգայի՝ վնասվածքների և օրթոպեդիայի գիտահետազոտական ինստիտուտի գիտնականների ստեղծած սարքերի կոմպլեքսը:*

*Հիվանդը «կոնտակտային» կոշիկներ հագած քայլում է հոսանքահաղորդիչ լարերով հյուսված արահետով՝ նախապես տրված ռիթմով: Նրա առջև հեռուստաէկրանն է, որի վրա արտացոլվում է հիվանդի կաղությունը: Էկրանը հուշում է հիվանդին ավելի արագ ուղղելու իր սխալ շարժումները: Կոմպլեքսը հնարավորություն է ընձեռում բժշկին՝ բուժման տարբեր փուլերում հսկելու ոսկրահյուսվածքային հատկությունների փոփոխություններին, ոսկրի ծռվածքի մեծությանը և այլ պարամետրերի:*

## ՀԱՍԿԱԺԱՆԳՆ ՕԳՏԱԿԱՐ Է

*Պարզվել է, որ աշորայի հասկից կախված մուգ-մանուշակագույն հասկաժանգը պարունակում է շատ դեղերի համար անհրաժեշտ թանկարժեք հումք՝ ալկալոիդներ: Եվ այժմ արհեստական միջավայրում աճեցնում են վաղուց ի վեր վնասակար համարվող այդ մակաբույծ սունկը:*

*Համաշխարհային դեղագործական արդյունաբերության համար տարեկան պահանջվում են հասկաժանգի մոտ չորս տոննա ալկալոիդներ, որոնց արժեքը հասնում է մի քանի հարյուր միլիոն դոլարի:*

*Չեխոսլովակիայի դեղագործության ու բիոքիմիայի և ԳԱ միկրոբիոլոգիայի ինստիտուտների մի խումբ գիտնականների առաջարկած մեթոդով հասկաժանգով վարակված 2.000 հեկտարանոց աշորայի դաշտից 2—3 շաբաթում կարելի է ստանալ մեծ քանակությամբ ալկալոիդ (որքան ստացվում է Չեխոսլովակիայում մեկ տարվա ընթացքում): Եղանակային պայմանները ամենևին չեն ազդում հասկաժանգի՝ կլոր տարին շարունակվող արտադրության վրա:*

*Չեխոսլովակիան հասկաժանգ արտադրող երկրորդ երկիրն է աշխարհում (Շվեյցարիայից հետո):*

## ԵՎՐՈՊԱՅԻ ԱՌԱՋԻՆ ԱՐԵՎԱՅԻՆ ԷԼԵԿՏՐԱԿԱՅԱՆԸ

*Էթնայի ստորոտում, սիցիլիական Ադրանո քաղաքի մոտ, 1981 թվականի գարնանից գործում է առաջին արևային էլեկտրակայանը, որ համատեղ ջանքերով կառուցել են եվրոպական տնտեսական խմբակցության երկրները:*

*Կոմպյուտերի օգնությամբ 182 հայելի շրջվում են Արեգակի կողմը, ֆոկուսավորում նրա արտացոլումը 55 մետրանոց աշտարակի գագաթին տեղադրված շոգեկաթսայի մեջ: Կաթսայում տաքանում է ջուրը, իսկ գոլորշին մտնում է տուրբին: Կայանի հզորությունը մեկ մեգավատ է, օգտակար գործողության գործակիցն ընդամենը 13 տոկոս (ջերմակայաններինը՝ 30-ից ավելի է, ատոմային կայաններինը՝ 28—30): Սակայն դրա փոխարեն էներգիան ձրի է ստացվում և այն չի ուղեկցվում թափոնների կուտակմամբ:*

## ՄԵՔԵՆԱՆ ՄԵՐՍՈՒՄ Է ՍԻՐՏԸ

*Դանիացի Օ. Սորենսենը արհեստական շնչառության համար հորինել է պնեմատիկ մեքենա, որը կարող է կատարել և սրտի ոչ ուղղակի մերսում: Այն բանում է խտացրած օդով լցված բալոնի միջոցով: Մեքենան ռիթմիկորեն սեղմում է հիվանդի կրծքավանդակը, մինչև որ վերականգնվում են նրա շնչառությունն ու սրտազարկերը: Սեղմման հաճախականությունը կարգավորվում է:*